# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

10 ՀՈԿՏԵՄԲԵՐ · 1967

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 46-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## Բովանդակություն

# Содержание



# ՄԵԾ ՏՈՆԻՆ ԸՆԴԱՌԱՋ

Սովետական ազատասեր ու տաղանդավոր ժողովուրդն անցած հիսուն տարում արժանավայել դիմավորել և հանդիսավորությամբ տոնել է բազում նշանավոր տարեթվեր, խոշոր հոբելյաններ, տոնել է քաղաքական և աշխատանքային վերելքի պայմաններում, հարազատ կուսակցության շուրջը սերտորեն համախմբված, համաժողովրդական սոցիալիստական մրցության դրոշը վեր պարզած, հայրենիքի կոհասեղանին մատուցած աշխատանքային մեծ նվերներով:

Սակայն այն, ինչ տեղի է ունենում այս օրերին մեր լայնածավալ երկրում, ինչ կատարվում է Սովետական Միության քաղաքներում ու գյուղերում, իրավամբ գերազանցում է սովետական մարդու տեսածն ու վերապրածը, պատկերացումները, նրա մեջ առաջ բերում սովետական քաղաքացու օրինական հպարտություն ու հիացմունք:

Մեծ Հոկտեմբերի 50-ամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցությունը սովորական մրցություն չէ, որ ամեն տարի ծավալվում է նախատոնական ամիսներին: Հոբելյանական մրցությունը վաղուց ծագեց ժողովրդական լայն կանգվածների խորքում և լայնորեն ծավալվեց տարեսկզբից: Միլիոնավոր բանվորներ, կոլտնտեսականներ, գիտության ու կուլտուրայի աշխատողներ, մտնելով հոբելյանական մրցության մեջ, պարտավորվեցին սովետական պետության հիսնամյա տարելիցը դիմավորել աշխատանքային մեծ նվաճումներով, ժամկետից շուտ և բարձր որակով կատարել ութերորդ հնգամյակի երկրորդ տարվա առաջադրանքները ու դրանով իսկ է՛լ ավելի ամրապնդել հայրենիքի տնտեսական հզորությունը, նրա պաշտպանունակությունը:

Մրցության ներկա հուժկու թափը, տոնը արժանավայել դիմավորելու նպատակով իրականացվող քաղաքական-կազմակերպական միջոցառումներն ամենից առաջ պայմանավորված են այն մեծ նշանակությամբ, որ ունի Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը ՍՍՀՄ ժողովուրդների և ամբողջ առաջադեմ մարդկության պատմության մեջ:

Սովետական Միության Կոմունիստական Կուսակցության, նրա հանճարեղ հիմնադիր և առաջնորդ Վ. Ի. Լենինի անմիջական ղեկավարությամբ հաղթանակած Հոկտեմբերյան հեղափոխությունն առհավետ տապալեց շահագործման և ճնշման հասարակարգը մեր երկրում, Ռուսաստանը դուրս բերեց իմպերիալիստական արյունահեղ պատերազմի հորձանուտից, ցնցեց կապիտալիզմի աշխարհը, հիմնադրեց պրոլետարիատի

դիկտատուրայի պետություն, որի օգնությամբ մեր երկրի աշխատավորները հաղթանակ տարան շահագործող դասակարգերի նկատմամբ, իրականացրին սոցիալիստական մեծ վերափոխումներ, ապահովեցին սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը և հիմա կառուցում են կոմունիզմ:

Լուծելով երկրի սոցիալիստական ինդուստրացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման և կուլտուրական հեղափոխության բարդ խնդիրները, կուսակցությունը չվախեցավ պրոբլեմների նորությունից և վիթխարիությունից, չհետապոտված ճանապարհներից: Նա ելակետ ընդունեց այն, որ սոցիալիստական հեղափոխությունն իր թափով և խորությամբ ժողովրդական մասսաների վիթխարի սոցիալական ստեղծագործություն է:

Եվ իրոք, պատմության մեջ երբեք չեն մոռացվի առաջին հնգամյակների հերոս կառուցողները, որոնք ստեղծեցին սոցիալիստական ինդուստրիան, կոլտնտեսություններ ու սովխոզներ: Երբեք չի խամրի այն աշխատավորների փառքը, որոնք այժմ բազմապատկում են երկրի հզորությունը, ստեղծում կոմունիզմի նյութատեխնիկական բազան:

Բացառիկ նշանակություն տալով նոր հասարակարգի ստեղծման համար սովետական ժողովրդի մղած պայքարին, աշխարհում առաջին սոցիալիստական պետության ստեղծման 50-ամյա տարելիցի տոնակատարության դաստիարակչական նշանակությանը, ՍՄԿԿ Կենտկոմը դեռևս հոբելյանական տարվա սկզբին ընդունեց հատուկ որոշում *Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակին նախապատրաստվելու մասին:* Կենտկոմը խնդիր դրեց 50-ամյակի պատվին կարգացնել սոցիալիստական մրցությունը հանրային արտադրության արդյունավետության, աշխատանքի արտադրողականության, տեխնիկական մակարդակի ըստ ամենայնի բարձրացման, արտադրանքի որակի բարելավման, տնտեսման և խնայողության, արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների արմատավորման, արտադրության գիտական կազմակերպման համար:

ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը ջերմ արձագանք գտավ աշխատավորական կանգվածների շրջանում: Մեծ հոբելյանի պատվին նախատոնական սոցիալիստական լայն մրցություն ծավալվեց Սովետական Միության բոլոր մարզերում, երկրամասերում և հանրապետություններում: Ինչպես միշտ, նախատոնական մրցության առաջին նախաձեռնողների դերում հանդես եկան Մոսկվայի և Լենինգրադի առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվները:

Տարեսկզբից հոբելյանական պարտավորություններ ստանձնեցին նաև Կիևի, Սվերդլովսկի, Գորկու, Բաքվի և երկրի մյուս քաղաքների ու արդյունաբերական կենտրոնների ձեռնարկությունների կոլեկտիվները:

Շուտով հոբելյանական մրցության ալիքն ընդգրկեց նաև սովետական գյուղը: Միլիոնավոր կոլտնտեսականներ, սովխոզների բանվորներ, գյուղատնտեսության մասնագետներ մտնելով մրցության մեջ, իրենց առջև խնդիր դրին՝ հոբելյանական տարում աճեցնել հացահատիկի, բամբակի, խաղողի, ճակնդեղի և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բարձր բերք, ավելացնել անասնաբուծական մթերքների արտադրությունը, իջեցնել դրանց ինքնարժեքը:



Սովետական Միության ժողովուրդների եղբայրական ընտանիքում աշխատանքային մեծ նվերներով է ընթանում դեպի հոբելյանը վերածնված հայ ժողովուրդը: Մտնելով հոբելյանի պատվին ծավալված մրցության մեջ, հանրապետության արդյունաբերության աշխատողները պարտավորվել են ընթացիկ տարվա տասն ամսվա պլանը կատարել հոկտեմբերի 26-ին, իսկ տարեկանը՝ դեկտեմբերի 25-ին: Ինչպես հայտնի է, հանրապետությունում հոբելյանական մրցության դրոշը առաջինը բարձրացրին Քաջարանի պղնձամոլիբդենային ու Լենինականի տեքստիլ կոմբինատների, Երևանի սինթետիկ կաուչուկի ու էլեկտրամեքենաշինական գործարանների և «Հայգյուղտեխնիկայի» Հոկտեմբերյանի շրջանային բաժանմունքի կոլեկտիվները:

Ընդօրինակելով առաջավոր ձեռնարկություններին, հոբելյանական մրցությունում բարձր պարտավորություններ ստանձնեցին Ղափանի հանքագործները և Ալավերդու մետալուրգները, Երևանի մեքենաշինարարներն ու Արփա—Սևանի թունելագործները, Լենինականի կառուցողներն ու Կիրովականի քիմիագործները, Ստեփանավանի անասնապահներն ու Ախուրյանի ճակնդեղագործները, Շամշադինի ծխախոտագործներն ու Արարատյան դաշտավայրի խաղողագործները, որոնք այս օրերին ջանք չեն խնայում իրենց խոսքը գործ դարձնելու համար:

Հատկանշական է, որ հոբելյանական մրցությունը սկզբից ևեթ ընդունել է մասսայական, իսկական համաժողովրդական բնույթ, իր մեջ ընդգրկելով հարյուրավոր նորանոր արտադրական կոլեկտիվներ, բազմահազար աշխատավորներ:

Հոբելյանական մրցությունը յուրահատուկ ազդակ հանդիսացավ հանրապետության արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատողների շրջանում աշխատանքի կոմունիստական շարժման հետագա ուժեղացման համար: Այժմ հանրապետությունում կան կոմունիստական աշխատանքի 14 ձեռնարկություն և հիմնարկություն, 602 արտադրամաս և 2.753 բրիգադա, կոմունիստական աշխատանքի 37.343 հարվածային: Կոմունիստական աշխատանքի բարձր կոչմանն արժանանալու համար պայքարում են 303 ձեռնարկություն և հիմնարկություն, 2.810 արտադրամաս, 6.529 բրիգադա, 87.278 բանվոր և ծառայող:

Պայքարելով Հոկտեմբերի 50-ամյակի պատվին ստանձնած պարտավորությունների կատարման համար, մեր արդյունաբերության աշխատողներն արդեն հասել են զգալի հաջողությունների: Անցած յոթ ամսվա համախառն արտադրանքի թողարկման պլանը կատարվել է 104,4 տոկոսով: Գնալով աճում են աշխատավորական մասսաների ակտիվությունն ու ստեղծագործական նախաձեռնությունը: Յուրաքանչյուր արտադրական կոլեկտիվ, առանձին աշխատող ուժեղացնում է պայքարը բարձր ցուցանիշների, մրցության մեջ առաջնություն շահելու համար:

Ձեռնարկություններում ամենուրեք բարելավվում են տեխնիկայի օգտագործումը, աշխատանքի կազմակերպումը, գործողության մեջ են դրվում արտադրական նորանոր ռեզերվներ, որոնք հսկայական օգուտ են բերում սովետական պետությանը:

Հոբելյանական մրցության բնորոշ գծերից մեկն էլ համաժողովրդական արշավն է խնայողության համար: Սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինը գրել է. «Կոմունիզմն սկսվում է այնտեղ,

որտեղ երևան է գալիս *շարքային բանվորների* անձնվեր, ծանր աշխատանքը հաղթահարող հոգսը՝ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, պահպանելու *յուրաքանչյուր փութ հացը, ածուխը, երկաթը* և այլ մթերքներ, որոնք հասնում են ոչ թե անձնապես աշխատողներին և ոչ թե նրանց «մերձավորներին», այլ «հեռավորներին», այսինքն ամբողջ հասարակությանը...»:

Վլադիմիր Իլյիչի այդ հանճարեղ կանխատեսումներն իրենց կենդանի մարմնավորումն են գտել այսօրվա հոբելյանական մրցության միլիոնավոր մասնակիցների կենդանի գործերում: Արդյունաբերության և գյուղատնտեսության, շինարարության և տրանսպորտի աշխատողները համաժողովրդական լայն արշավ են ծավալել խնայողության համար: Մեր հանրապետությունում, օրինակ, քիչ գործ չի արված հումքի, նյութերի խնայողության հաշվին լրացուցիչ արտադրանք թողարկելու և անարտադրողական ծախսերը կրճատելու ուղղությամբ: Մեքենաշինության մեջ անընդհատ ընդլայնվում է պոլիմերային դետալների կիրառումը: Դրա շնորհիվ անցյալ և այս տարվա առաջին եռամսյակում հանրապետության ձեռնարկությունները խնայել են 650 տոննա սև և գունավոր մետաղ: Խնայողության ռեժիմի հետևողական կիրառումը օգնում է արտադրության ընդլայնմանը, սոցիալիստական սեփականության ամրապնդմանը՝ ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում:

Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ հեղափոխության 50-ամյակի պատվին ծավալված մրցության հետագա ընդլայնմանը նպաստեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության, ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀամԿԽ-ի որոշումը՝ այդ մրցության մեջ հաղթող ձեռնարկությունների կոլեկտիվների համար հավար հուշադրոշ սահմանելու մասին:

Հոբելյանական մրցության հաղթողների համար հուշադրոշի սահմանումն ունի դաստիարակչական մեծ նշանակություն: Նրանք, ովքեր մեծ հոբելյանը կդիմավորեն իրենց ստանձնած պարտավորությունները կատարած, աշխատանքային աչքի ընկնող նվերներով, արժանի են համաժողովրդական պատվի և իրավունք ունեն իրենց մոտ պահելու սովետական պետության կեսդարյա հոբելյանի պատվին սահմանված հուշադրոշը:

Այդ մեծ պատվին արժանանալու ձգտումով են աշխատում հանրապետության բազմաթիվ կոլեկտիվներ: Թերթերը, ռադիոն և հեռուստատեսությունն արդեն մասսայականացնում, ամբողջ հասարակայնության սեփականությունն են դարձնում հանրապետության արտադրական կոլեկտիվների, առանձին բանվորների և կոլտնտեսականների աշխատանքային սխրագործությունները, պատմում նրանց հայրենանվեր գործերի մասին: Հոբելյանական մրցության բովում ծնվում և կոփվում են ոչ միայն հնգամյակի առանձին հերոսներ, այլ արտադրական ամբողջ կոլեկտիվներ: Ահա մի օրինակ: Տաթևգէսի գլխային կառուցվածքների շինվարչության Շամբի տեղամասի թունելագործները խոստացել էին հոբելյանական տարում ավարտել Շամբ—Շինուհայր հատվածի հինգ կիլոմետրանոց թունելի փորելը: Նրանք այժմ ամեն ինչ անում են իրենց խոսքը գործ դարձնելու համար: Կանգնելով աշխատանքային հերթափոխի, թունելագործները դեռևս առաջին կիսամյակում 800 մետրով երկարացրել են



թունելը կամ հորատանցման առաջադրանքը գերակատարել են 34 տոկոսով: Տեղամասի № 1 թունելախորշի կոլեկտիվն առաջին եռամսյակում կատարել է 365 գծամետր առաջանցում, իսկ երկրորդ եռամսյակում այդ թիվը գերազանցել է 60 գծամետրով: Անվանի թունելագործները հերոսաբար հաղթահարելով ստորգետնյա աշխատանքի բոլոր դժվարությունները, ջանում են առաջիկա տոնը դիմավորել ավելի բարձր ցուցանիշներով:

Հոկտեմբերի 50-ամյակը աշխատանքային աչքի ընկնող նվերներով են դիմավորում մեր գյուղատնտեսության աշխատողները: Նրանք կգալիորեն բարձրացրել են հողագործության կուլտուրան, դաշտերի բերքատվությունն ու անասնաբուծության մթերատվությունը:

Մեծ հոբելյանի պատվին ծավալված մրցությունում արտադրական աչքի ընկնող հաջողություններ են ձեռք բերել, օրինակ, Գորիսի շրջանի մի շարք տնտեսություններ: Այդ շրջանի Բարձրավանի, Սվարանցի և Բայանդուրի կոլտնտեսությունների վարչություններն ու կուսկազմակերպությունները լուրջ ուշադրություն դարձնելով ներքին ռեզերվների օգտագործման և աշխատանքի կազմակերպման հարցերին, գյուղական աշխատավորության ստեղծագործական ուժերն ու եռանդը նպատակամղել են ստանձնած պարտավորությունների կատարմանն ու գերակատարմանը: Եվ դա դրական արդյունք է տվել. Բարձրավանի կոլտնտեսությունը ժամկետից վեց ամիս շուտ կատարել է պետությանը կաթի և բրդի վաճառքի առաջադրանքը, Սվարանցի կոլտնտեսությունը յոթ ամսում պետությանը վաճառել է այնքան կաթ, որքան նա պետք է վաճառեր 12 ամսում, իսկ Բայանդուրի կոլտնտեսության կթվոր-անասնապահները օգոստոսի 9-ին զեկուցել են 1660 ցենտներ կաթի արտադրության՝ հոբելյանական տարվա պարտավորության կատարման մասին:

Հոբելյանական տարվա պարտավորությունների կատարման գործում առավել մեծ հաջողությունների են հասել շրջկենտրոնի սովխոզի բանվորներն ու բանվորուհիները: Նրանք իրենց բարեխիղճ ու համառ աշխատանքով ապահովեցին անասունների գլխաքանակի աճի առաջադրանքի կատարումը: Նախատեսված 1310-ի դիմաց սովխոզն այժմ ունի 1380 խոշոր եղջերավոր և 4500-ի դիմաց 4900 մանր եղջերավոր անասուն: Հպարտանալու շատ բան ունեն նաև ոչխարաբույծները, որոնք յուրաքանչյուր 100 մայր ոչխարից ստացել ու պահպանել են 105 գառ և միայն գարնանային առաջին խուզից կատարել բրդի արտադրության տարեկան պլանը:

Կուսակցությունը սովորեցնում է, որ նշանավոր տարեթվերի տոնակատարության լավագույն ձևը աշխատավորների ուշադրությունը չլուծված խնդիրների վրա կենտրոնացնելն է: Այդ իմաստով ավելի մեծ անելիքներ ունեն մեր հանրապետության կուսակցական, տնտեսական և արհմիութենական կազմակերպությունները: Գաղտնիք չէ, որ բազմաթիվ առաջավոր ձեռնարկությունների կողքին մենք ունենք մեծ թվով գործարաններ, ֆաբրիկաներ, կոլտնտեսություններ ու սովխոզներ, որոնք վատ են աշխատում, չեն կատարում իրենց ստանձնած պարտավորությունները, իսկ երբեմն՝ նույնիսկ արտադրական պլանները: Օրինակ, հանրապետությունում 67 արդյունաբերական ձեռնարկություն չեն կատարել 7-ամսվա արտադրական պլանը: Ամենից շատ հայրենիքին պարտք են Հայէլեկտրագործարանի, կերամիկական իրերի կոմբինատի, № 2 կա-

րի ֆաբրիկայի, գեղարվեստական ժամացույցների գործարանի և այլ ձեռնարկությունների կոլեկտիվները: Իսկ հանրապետության թեթև, սննդի, փայտամշակման մի շարք ձեռնարկություններ շարունակում են թողարկել ցածրորակ արտադրանք, որը հարուցում է սպառողների արդարացի բողոքները:

Այս ձեռնարկությունների ետ մնալու գլխավոր պատճառներն են՝ արտադրության կազմակերպման գործում եղած թերությունները, նյութա-տեխնիկական մատակարարման ընդհատումները, սոցիալիստական մրցության ղեկավարմանը երբեմն ցուցաբերվող ձևական-բյուրոկրատական մոտեցումը, աղմկարարությունն ու գռեհկությունը:

Կուսակցության շրջկոմների և սկզբնական կուսկազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ բարելավել սոցիալիստական մրցության ղեկավարումը, կոնկրետ միջոցառումներով վերացնել կուսակցական աշխատանքի այդ կարևոր տեղամասում գոյություն ունեցող թերություններն ու բացերը, բանիմացությամբ և կրքոտությամբ միջամտել արտադրության կազմակերպման հարցերին, ամեն կերպ բարձրացնել արտադրության և նյութա-տեխնիկական մատակարարման սիստեմում աշխատող ղեկավար կադրերի պատասխանատվությունը, հասնել պետական և աշխատանքային կարգապահության առավել ամրապնդման:

Մեր կուսակցությունն ունի սոցիալիստական մրցության ղեկավարման, աշխատավորների ստեղծագործական ուժերի մոբիլիզացման բազմամյա փորձ: Անհրաժեշտ է լայնորեն օգտագործել այդ փորձը և ժամանակին ճիշտ ընթացք տալ մասսաների շրջանում ծնվող ստեղծագործական նախաձեռնություններին:

Կուսակցությունը սոցիալիստական մրցությունը հռչակել է որպես սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման մեթոդ, որը հիմնվում է աշխատավորների առավելագույն ակտիվության և ինքնագործունեության վրա, հանդիսանում է մասսաների կոմունիստական դաստիարակության կարևորագույն միջոց, սոցիալիստական հասարակության շարժիչ ուժերից մեկը: Այն ուղղված է ժողովրդա-տնտեսական պլանների կատարմանն ու գերակատարմանը, աշխատանքի արտադրողականության և սոցիալիստական արտադրության անշեղ աճի ապահովմանը:

Անշեղորեն ղեկավարվելով ՍՄԿԿ XXIII համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումներով, կուսակցության քաղկոմ-շրջկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները պետք է ավելի կոնկրետ և օպերատիվ ղեկավարեն սոցիալիստական մրցությունը: Լենինյան ցուցումների անշեղ կենսագործումը է՛լ ավելի կխտացնի մրցողների շարքերը, կբարձրացնի նրանց աշխատանքային ոգևորությունը և կապահովի ստանձնած պարտավորությունների կատարումը:



# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 50-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ


ՎԼԱԴԻՄԻՐ ԿՈՈՒՑԿԻ

Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի քարտուղար


## ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ՀԱՂԹԱՆԱԿՆ Է*

*ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ազգակցության գիտակցությունը և մարտական համերաշխության զգացմունքները երևան են եկել այն պահից, երբ պրոլետարիատն սկսել է կազմավորվել որպես դասակարգ և ստեղծվել են միջազգային կազմակերպություններ, որոնց մեջ միավորվել է առանձին երկրների բանվոր դասակարգը՝ ընդունելով գիտական աշխարհայեցողության վրա հիմնված ընդհանուր ծրագիր և իր դասակարգային պայքարը պաշտպանելու համար կազմակերպում է համատեղ ելույթներ: Այդ ժամանակ Կոմունիստական մանիֆեստի՝ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք», կոչն էլ սկսում է դառնալ նյութական ուժ, որը կազմակերպված պրոլետարիատի ձեռքին գործունակ զենք է դառնում համաշխարհային կապիտալի ճնշման դեմ մղվող պայքարում:*

*Ահա թե ինչու միջազգային պրոլետարիատի դասակարգային շահերի նկատմամբ մեծագույն դավաճանություն էր այն, որ առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին II Ինտերնացիոնալը հրաժարվեց ինտերնացիոնալիզմի սկզբունքներից և որ նրա առանձին սեկցիաների ղեկավարությունը սակավաթիվ բացառություններով հիմնականում անցավ իրենց երկրների բուրժուական կառավարությունների նացիոնալիստական և շովինիստական դիրքերը: Բոլշևիկների լենինյան կուսակցությանն է պատկանում այն ծառայությունը, որ նույնիսկ իր միջազգային գրեթե կատարյալ մեկուսացման ժամանակաշրջաններում նա պրոլետարական ինտերնացիոնալիզմի նկատմամբ պահպանեց իր հավատարմությունը և հետևողականորեն պաշտպանելով այն, առաջին համաշխարհային պատերազմի խիստ բարդ պայմաններում իր ստեղծագործական գործունեությամբ նոր, մարտական բովանդակությամբ օժտեց այն:*

*Հենց պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների անշեղ կենսագործումը, սոցիալիստական հեղափոխության նախապատրաստման պայմաններում և ընթացքում պրոլետարական ինտերնացիոնալիզմի ստեղծագործական կիրառումը Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի վճռական ազդակներից են:*

1 *Արտատպվում է աննշան հապավումներով. խմբ.։*

Մեծ Հոկտեմբերը և սովետական իշխանության պաշտպանության համար հակահեղափոխության ու օտարերկրյա ինտերվենտների դեմ մղված հետագա պայքարը հանդիսացան լենինյան այն դրույթի հետևողական կենսագործումը, որ եթե կապիտալի տիրապետությունը միջազգային է, ապա կապիտալի դեմ, հանուն իրենց ազատության բոլոր երկրների բանվորության պայքարը հաջող կարող է լինել միայն այն պայմանով, եթե այն մղվի ընդհանուր ուժերով: Միջազգային կապիտալի միացյալ ուժերի դեմ, հանձին 14 ինտերվենտերությունների բանակների, լենինյան կուսակցությունը կարմիր բանակի շարքերում մոբիլիզացրեց Սովետական Ռուսաստանի տասնյակ ժողովուրդների լավագույն զավակներին և Եվրոպայի ու ամբողջ աշխարհի շատ ժողովուրդների հեղափոխական զինվորների բազմաթիվ ջոկատներ: Մենք հպարտանում ենք, որ կարմիր բանակի շարքերում մարտնչել են հազարավոր չեխ և սլովակ կոմունիստներ, որոնց համար Ռուսաստանում հանուն սովետական իշխանության մղած պայքարը պայքար էր հանուն իրենց սեփական երկրի հեղափոխական հեռանկարների:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը դրա համար էլ պրոլետարական ինտերնացիոնալիզմի վճռական հաղթանակն էր, նրա սկզբունքների ճշմարտացիության և միջազգային հեղափոխական շարժման համար դրանց պարտադիր լինելու հաստատումը:

Սակայն աշխարհում պրոլետարիատի դիկտատուրայի առանձին պետության երևան գալով ինտերնացիոնալիզմը որակական նոր բովանդակություն և նոր կոնկրետ ուղղություն է ստանում: Սովետական Ռուսաստանը դառնում է աշխարհի բոլոր հեղափոխական ուժերի հուսալի հենարանը, բոլոր հեղափոխական բանվորների երկրորդ հայրենիքը, որի պաշտպանությունը նրանց համար դառնում է պրոլետարական խղճի և դասակարգային գիտակցության գործ, ինտերնացիոնալ համերաշխության բարձրագույն պատվիրան:

Հոկտեմբերի վիթխարի նշանակությունը, բացի մյուս բոլորից, այն բանի մեջ է, որ նա դարձավ այն հզոր խթանը, որը համաշխարհային հեղափոխական պրոլետարիատի ամենապրոգրեսիվ հատվածին ոգեշնչեց խզելու իր բոլոր կապերը օպորտունիզմի մեջ անհուսալիորեն խրված սոցիալ-դեմոկրատական հին կուսակցությունների հետ և Լենինի հաղթական կուսակցության օրինակով ստեղծել նոր, կոմունիստական կուսակցություններ: Եվ հենց կոմունիստական ինտերնացիոնալի մեջ միավորված լենինյան տիպի այդ կուսակցությունների պրակտիկ գործունեության մեջ է, որ պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները բարձրանում են վսեմ աստիճանի, դառնում նրանց համագործակցության ամուր հիմքը և հեղափոխական պայքարի ամենագործունակ զենքը:

Անվիճելիորեն այդ է վկայում նաև մեր կուսակցության՝ Չեխոսլովակիայի Կոմունիստական կուսակցության փորձը: Մեր երկրի աշխատավորության ինտերնացիոնալ գիտակցության ձևավորմանը, անտարակույս, նպաստել են նաև այնպիսի կարևոր օբյեկտիվ գործոններ, ինչպես այն փաստը, որ Ավստրո-հունգարական բազմազգ միապետության չեխական մարզերն արդյունաբերական տեսակետից այդ միապետության առավել զարգացած մասն էին՝ սոցիալական մարտերում կոփված բազմամարդ պրոլետարիատով, որի կազմի մեջ կային այլ ազգությունների աշխատավորության մեծ ջոկատներ, որոնց դասակարգային հիմնական շահերը միանման էին:



Սակայն այդ պրոցեսում վճռական դեր պիտի խաղար կոմունիստական կուսակցությունը, որը միավորիչ համագումարից հետո (1921 թ. աշուն) կառուցվում էր հետևողականորեն ինտերնացիոնալ սկզբունքներով, որոնք դարձան հզոր խթան աշխատավորական մասսաների մեջ նրա ազդեցության անընդհատ խորացման համար և նրա ամբողջ գործունեության առանցքը:

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի առավել նշանակալից և հիանալի դրսևորումներից է, անտարակույս, չեխոսլովակյան կոմունիստների պայքարն ի պաշտպանություն Սովետական Միության, մի պայքար, որը հետհոկտեմբերյան բոլոր տարիների ընթացքում մղվել է ամենաբազմազան և գործունակ ձևերով: Բանվորների վճռական դիմադրությանը,— որի ընթացքում հաջող գործողություններ էին կատարվում Ռուսաստանում գործող ինտերվենտների բանակների զենքի հայթայթումը վիժեցնելու ուղղությամբ,— հաջորդեցին լայնորեն կազմակերպված օգնությունը սովահար Ռուսաստանին, բողոքի շարժումը ՍՍՀՄ-ի վրա իմպերիալիստական ագրեսիայի հետագա նախապատրաստման դեմ և հզոր ելույթները Չեխոսլովակյան բուրժուական կառավարության կողմից Սովետական Միությունը ճանաչելու օգտին, ելույթներ, որոնք 1935 թվականին վերջացան փոխադարձ օգնության պայմանագրի ստորագրմամբ:

Սովետական Միության պաշտպանության համար մղվող պայքարը, որը միաժամանակ միջազգային համերաշխության մեծագույն դպրոց էր, երեսնական թվականներին անխզելիորեն կապված էր պետական ինքնուրույնության և խաղաղության համար ֆաշիզմի դեմ մղվող պայքարի հետ: Կուսակցության սիստեմատիկ աշխատանքը Մյունխենի ժամանակաշրջանում չեխոսլովակյան ժողովրդին հանգեցրեց այն խոր համոզման, որ Չեխոսլովակիայի ապագան պետք է ընդմիշտ կապված լինի Սովետական Միության և կոմունիստների մղած պայքարի հետ: Այդպիսով, աշխարհում առաջին սոցիալիստական պետության պաշտպանության համար կուսակցության մղած հետևողականորեն ինտերնացիոնալ պայքարն էլ միաժամանակ դարձավ մեր հասարակության մեջ կուսակցության հետագա ղեկավար դերի ամենահզոր ակունքներից մեկը:

Կուսակցությունն իր ինտերնացիոնալ պարտքը կատարում էր դասակարգային պայքարի նաև այլ տեղամասերում:

Արդեն 1923 թվականին կուսակցությունը վճռականորեն հանդես եկավ ի պաշտպանություն գերմանական հեղափոխության և վիժեցրեց չեխոսլովակյան բուրժուազիայի ոտնձգությունները գերմանական պրոլետարիատի դեմ, իսկ երկու տարի հետո լայն օգնություն կազմակերպեց անգլիական մարտնչող հանքագործներին, կամպանիա ծավալեց ի պաշտպանություն Սակկոյի և Վանցետիի և համերաշխության շարժում՝ չինական հեղափոխականների հետ:

Ֆաշիստների իշխանության գլուխ անցնելուց հետո կուսակցության ինտերնացիոնալ համերաշխությունը խիստ ուժեղացավ: Դա երևան եկավ 1934 թ. Դելֆուսի հետ ավստրիական բանվորների ընդհարման ժամանակ, ինչպես նաև արտացոլվեց խորին համակրանքի մեջ՝ Ֆրանսիայի ժողովրդական ճակատի նկատմամբ, որի փորձը գիտելիքների հարուստ աղբյուր էր մեր բանվորների համար:

Սակայն առավել մեծ նշանակություն ունեցավ ուղղակի օգնությունը իսպանական ժողովրդի հակաֆաշիստական պայքարին, որի ժամանակ ցույց տրվեց նյութական օգնություն, հազարավոր ընկերներ ուղարկվեցին ինտեր-

նացիոնալ բրիգադների շարքերը և քաղաքական նուլթներ կազմակերպվեցին դեմոկրատական Իսպանիայի օգտին։

Կուսակցությունը բազմաթիվ վտարանդի կոմունիստների, այդ թվում ընկերներ Վիլհելմ Պիկին, Մաքս Ռեյմանին, Պետր Բորիլին, հնարավորություն տվեց ապրելու մեր երկրում և քաղաքական գործունեությամբ զբաղվելու այստեղ։ Մեր երկրում են աշխատել լեհական, գերմանական, հունգարական և այլ կուսակցությունների անլեգալ կենտրոնական կոմիտեները։ Այդ ժամանակ չեխոսլովակյան կոմունիստները լայն լեգալ շարժում ծավալեցին էռնստ Թելմանի, Գեորգի Դիմիտրովի, Գեորգիու-Դեժի և կոմունիստական շարժման այլ ղեկավար գործիչների ազատագրման համար։

Մենք հպարտանում ենք, որ մեր կուսակցությունը Կոմունիստական Ինտերնացիոնալի VII կոնգրեսում իր արժանի ավանդը մուծեց Կոմունիստական Ինտերնացիոնալի նոր գլխավոր գծի մշակման գործում և մասնակցեց հիտլերյան ֆաշիզմի դեմ հետագա համատեղ ծանր պայքարին։

Սրանք են մեր կուսակցության պատմության այն մի քանի փաստերը, որոնց մեջ վառ կերպով անդրադարձավ կուսակցության ինտերնացիոնալիզմը։ Այս բոլոր մարտական տեղամասերը, բնականաբար, կապիտալիզմի և շահագործման դեմ դասակարգային ճակատամարտեր ծավալելու, մասսաների հեղափոխական դաստիարակության, ժողովրդական կառավարություն ստեղծելու և սոցիալիստական հասարակություն կառուցելու համար կուսակցության պայքարի, այսինքն՝ նրա գործունեության գլխավոր ուղղության անկապտելի բաղկացուցիչ մասն էին։

ՉԿ կուսակցությունն այդ հիմնական խնդիրը կարողացավ հաջողությամբ կատարել միայն այն բանի շնորհիվ, որ նա աճել ու ամրապնդվել է որպես միջազգային կոմունիստական շարժման ջոկատներից մեկը, միշտ էլ հանդիսանալով այդ շարժման օրգանական մասը։



ՀՈԿՏԵՄԲԵՐԻՑ հետո ժամանակակից աշխարհի զարգացման հիմնական տենդենցները որոշվում են այն բանով, որ մեկ երկրում հաղթանակ տարած սոցիալիզմը վերածվել է համաշխարհային սիստեմի, քայքայվել է գաղութային սիստեմը և ծագել է այսպես կոչված «երրորդ աշխարհ», ինչպես նաև ստեղծվել են մոնոպոլիստական շահագործման դեմ, դեմոկրատական և սոցիալական վերափոխությունների համար, ամբողջ աշխարհի խաղաղության համար միջազգային բանվոր դասակարգի պայքարի նորանոր հնարավորություններ։

Չնայած մոնոպոլիստական կապիտալի օպերատիվ տարածության սեղմվելուն, այժմ էլ ամենափոքր չափով իսկ չի կարելի թերագնահատել նրա ռազմական, տնտեսական և տեխնիկական պոտենցիալը, չխոսելով արդեն քաղաքականության և գաղափարախոսության բնագավառում իմպերիալիստական դիվերսիայի դրսևորումների ու հետևանքների լրջությունը նվազեցնելու մասին։ Վերջին ժամանակվա փորձը առանձնահատուկ պարզորոշությամբ հաստատեց այդ բանը։

Այդ գործոնները պատճառ են հանդիսանում մի ամբողջ շարք միջադեպերի ու պրովոկացիաների, որոնք իմպերիալիզմը կազմակերպում է, որպեսզի խանգարի աշխարհի օրինաչափ զարգացումը և հակահեղափոխություն արտահանի։ Այսպես է ամերիկյան իմպերիալիզմի ամբողջ քաղաքականության ուղ-



ղությունը, ինչպես այդ վկայում են Վիետնամը, Միջին Արևելքը, Հունաստանը, արհեստականորեն պահպանվող լարվածությունը Եվրոպայում և Կուբայի, լատինա-ամերիկյան ցամաքամասի մյուս ժողովուրդների դեմ ինտերվենցիայի պլանները։ Զգտելով այդ ագրեսիվ կոնցեպցիայի իրականացմանը, ամերիկյան մոնոպոլիաները չարաշահում են ժամանակակից համաշխարհային գիտության ու տեխնիկայի նշանավոր հայտնագործությունները և սպառնում են ատոմային պատերազմով, որով սոսկ կրկին անգամ ցուցադրում են իմպերիալիզմի և մարդկային ամբողջ քաղաքակրթության շահերի անհաշտելիությունը։

Միջազգային կոմունիստական շարժումը հենց այդ տեսանկյունով պետք է դիտի իր հեղափոխական միսիան համաշխարհային զարգացման պրոգրեսիվ հեռանկարի համար մղվող պայքարում, այդ հիման վրա անզիջում պահանջելով արդիականության բոլոր հակաիմպերիալիստական ուժերի և հեղափոխական հոսանքների ինտերնացիոնալ համախմբվածություն և համատեղ համերաշխ ելույթներ։ Դա այժմ նույնպես հրատապ է, ինչպես սրանից 50 տարի առաջ, երբ խոսքը վերաբերում էր հենց նոր հաղթանակած առաջին սոցիալիստական հեղափոխությունը համատեղ պաշտպանելուն։

Եթե մենք ուզում ենք գտնվել ժամանակակից խնդիրների ու նպատակների բարձրության վրա, ապա մեր ինտերնացիոնալ ջանքերի պարամետրը պետք է համապատասխանի այն հիմնական փաստին, որ մեր օրերում սոցիալիզմի գլխավոր հենարանը սոցիալիստական երկրների գոյությունն է և նրանց ակտիվ ներգործությունը աշխարհում եղած ուժերի հարաբերակցության վրա։ Միաժամանակ սոցիալիզմը գործում է համաշխարհային պրոցեսի ներսում, որն ընդգրկում է զարգացման ամենատարբեր էտապներ, պրոգրեսիվ ուժերի հեղափոխական ազատագրության տարբեր փուլեր և հակաիմպերիալիստական շարժումների լայն դիապազոն, որոնց ազատագրական ձգտումների գագաթնակետը սոցիալիզմի իդեալներն են։ Խոսքն, իհարկե, վերաբերում է ո՛չ թե ուղղագիծ զարգացմանը, որ զերծ է անսպասելի շրջադարձերից ու միջադեպերից, ժամանակավոր պարտություններից ու անհաջողություններից։ Սակայն վճռականը այդ պրոցեսի ընդհանուր տրամաբանությունն է և նրա վերջնական նպատակը։ Ըստ որում, դրա դրական արդյունքները կլինեն ավելի համոզիչ, որքան գիտակցական համատեղ ելույթների ընթացքում ավելի ուժգին և ավելի կոնկրետ կիրառվեն աշխատավորության միջազգային համերաշխության սկզբունքները։

Այդ տեսակետից կոմունիստական շարժման ամեն մի ջոկատի առաջ կանգնած առաջնահերթ խնդիրն է՝ հասկանալ ու զարգացնել ինտերնացիոնալ դիրքավորումն իր ամբողջ լայնությամբ, ճիշտ գնահատել նրա հեղափոխական առանձնահատկությունը և հետողականորեն խուսափել ամեն տեսակ ծայրահեղություններից ու ռեհկացումներից, նեղմիտ ազգային տեսակետները որևէ ձևով բացարձակ ճշմարտություն համարելուց։

Փորձը հաստատում է, որ ազգային առանձնահատկությունների ուշադիր հաշվառումը, որպես կանոն, ավելացնում է նմանապես ինտերնացիոնալ գործողությունների արդյունավետությունը և ուժը—անշուշտ, այն պայմանով, եթե ինտերնացիոնալիզմը հասկացվում է ոչ թե որպես ազգային տեսակետների հասարակ, մեխանիկական գումարում, այլ որպես միանգամայն նոր, բարձրորակ կատեգորիա, որով կենսագործվում են մարքսիստական-լենինյան աշխարհայեցողության ընդհանուր սկզբունքները։

Դրա համար էլ սոսկ կիսաճշմարտություն են մնում այն մի քանի հայացքները, որոնք ինտերնացիոնալիզմի գլխավոր չափանիշը հանգեցնում են այս կամ այն երկրի բացառապես ներքին հայացքների, և ինտերնացիոնալ ավանդի չափանիշ են համարում կոմունիստական կուսակցությունների միայն ներքին հաջողությունները։ Անտարակույս, առանձին կուսակցությունների ճիշտ քաղաքականությունն է, որ նպաստում է նրանց երկրների պրոգրեսին, շատ նշանակալից ավանդ է ամբողջ շարժման ընդհանուր շահերը պաշտպանելու գործում։ Բայց և այնպես, դա բավական չէ, որովհետև եթե այդ քաղաքականությունը միաժամանակ հիմնվում է ինտերնացիոնալ պահանջմունքների գիտակցական ըմբռնման վրա, ամբողջ շարժման ներսում միասնական հետևությունների և միասնական գործողությունների հասնելու ձգտման վրա, ապա այդպիսի գիծը ճանապարհ է հարթում չկոորդինացված, չհամաձայնեցված գործողությունների, իսկ հաճախ էլ սուբյեկտիվիզմի համար։ Ի վերջո, սոցիալիզմի նույնիսկ ամենամեծ ներքին հաջողությունը չի կարելի համարել վերջնական, եթե այն միաժամանակ չի հենվում իմպերիալիզմի դեմ ինտերնացիոնալ հիմունքով մղվող համատեղ պայքարի ընդհանուր հաջողության վրա։

Այդ տեսակետից էլ մեզ համար բացառիկ կարևոր նշանակություն ունի Հոկտեմբերի անմիջական ժառանգությունը։ Հեղափոխությունից հետո միայն մի քանի ամիս անց Վ. Ի. Լենինը հետևյալ կերպ է բնորոշել ինտերնացիոնալ քաղաքականության պարտադիր սկզբունքները։ «...Սովետական իշխանության կողմից,—որն աննկուն կերպով կատարել է բոլոր երկրների բանվորների միջազգային համերաշխության իր բոլոր պարտականությունները կապիտալի դեմ սոցիալիզմի համար նրանց մղած կռվում,—առաջիկայում ևս կկատարվի այն ամենը, ինչ որ ներում են մեր ուժերը, աջակցելու համար միջազգային սոցիալիստական շարժմանը, ապահովելու և արագացնելու համար այն ուղին, որը մարդկությանը տանում է դեպի փրկություն կապիտալի ու վարձու ստրկության լծից, դեպի սոցիալիստական հասարակության և ժողովուրդների միջև հաստատուն, արդարացի հաշտության ստեղծում» (Վ. Ի. Լենին, Երկ., հատ. 27, էջ 235)։

Ամեն մի կոմունիստական կուսակցության անկապտելի իրավունքն է՝ ստրատեգիայի ու տակտիկայի հարցերը ինքնուրույն կերպով, սուվերեն և անկախ լուծել իր երկրի պայմաններում. հեղափոխական պայքարում և սոցիալիզմի կառուցման մեջ իր գործունեության արդյունքների համար լիովին պատասխանատու լինել սեփական բանվոր դասակարգի առաջ։

Սակայն ամեն մի կոմունիստական կուսակցություն ո՛չ միայն իր ժողովրդի ավանդարդն է, այլև միջազգային բանվոր դասակարգի հեղափոխական պայքարի մասնակիցը, բաղկացուցիչ մասը համաշխարհային կոմունիստական շարժման, որը պատմությամբ կոչված է խաղալու համաշխարհային պրոգրեսի ավանգարդի դեր։ Դրանից բխում է ընդհանուր պատասխանատվությունը միջազգային պարտավորությունների կատարման համար, որ կոմունիստական կուսակցությունները կամավոր կերպով ստանձնում են աշխարհի հեղափոխական վերակառուցման համար մղվող պայքարում։

Հենց դրա համար էլ եղբայրական կուսակցությունների անկախության, ինքնուրույնության և ներքին գործերին չմիջամտելու սկզբունքը ներկայացնում է նրանց իրական ինտերնացիոնալ գործունեության ելակետերի սոսկ հարադրություն, որը, բացի դրանից, ունի իր սեփական չափանիշները, որոնք



համապատասխանում են իմպերիալիզմի դեմ հանուն մարդկության սոցիալիստական հեռանկարների մղվող միջազգային պայքարի խնդիրների մասշտաբներին։

Դա, անտարակույս, պահանջում է կենտրոնացնել նպատակասլաց ջանքերը միջազգային զարգացման հիմնական հարցերում համերաշխ գործողություններ կատարելու համար և այդ նպատակով ստեղծագործաբար օգտագործել ընդհանուր հետաքրքրություն ներկայացնող հարցերի կոլեկտիվ ճանաչման և քննության՝ իրենց արդարացրած բոլոր հնարավորությունները, որի շնորհիվ ձևավորվում է հայացքների ու գործողությունների միասնություն. մի բան, որ կենսականորեն անհրաժեշտ է համատեղ արդյունավետ պայքարի համար։

Միջազգային կոմունիստական շարժման շահերի սուվերենությունը ձևակերպված է այնպես, որ եղբայրական ամեն մի կուսակցություն իր ներքին ակտիվության համար բավականաչափ մեծ ազատություն ունենա, անհրաժեշտաբար պայմանավորում է նաև յուրաքանչյուր կոմկուսակցության սուվերենության, ինքնուրույնության և անկախության շրջանակները՝ իր երկրի պայմաններում։ Դրա համար էլ այդ արժեքների դիալեկտիկական հարաբերակցության ամեն մի խեղաթյուրում հանգեցնում է կամ նացիոնալիստորեն սահմանափակ հետևությունների, կամ թե ինտերնացիոնալ սկզբունքների մեխանիկական ըմբռնմանը։

Մարքսիզմ-լենինիզմը հարստանում ու զարգանում է բոլոր կոմունիստական կուսակցությունների և արդիականության մնացած հեղափոխական շարժումների տեսական ու գործնական ջանքերի հիման վրա։ Նրա հետևությունների ճշտության և ճշմարտացիության համար չափանիշ չի կարող լինել որևէ սուբյեկտիվիստական մոտեցում, որի մեջ ստուգվում են նրա գաղափարների պրակտիկ ներգործությունը և ինտերնացիոնալ պարտականությունը։

Ուստի, չի կարելի, իհարկե, համաձայնել այն կարծիքին, թե իբր ամեն մի առանձին կուսակցություն ինքը կարող է վերջնականորեն և սուվերեն որոշել, թե ի՛նչն է համապատասխանում մարքսիզմ-լենինիզմին, ինչը՝ ոչ. ի՛նչն է օգտակար շարժման համար, իսկ ինչը վնաս կհասցնի շարժմանը, ի՛նչն է ինտերնացիոնալ և այլն։ Նման հայացքների նկատմամբ հանդուրժողականությունը անխուսափելիորեն կհանգեցներ շարժման տարտամությանը, բոլոր սկզբունքների, չափանիշների և արժեքների հարաբերականությանը և խախտմանը։

Մարքսիզմ-լենինիզմի ինտերնացիոնալ սկզբունքների գործնական կիրառումն անհնարին է առանց ընկերական կոնսուլտացիաների և փոխադարձ փոխըմբռնման, որը հանգեցնում է կոնկրետ գործերի և ենթադրում է ընդունելի պարտավորությունների կամավոր ստանձնումն ու կատարումը։ Այսպիսով, ինտերնացիոնալիզմը դառնում է մարքսիստական-լենինյան միասնական քաղաքականության շարժիչ ուժը, իսկ միջազգային համերաշխությունը ծրագրային մոբիլիզացնող բովանդակություն է ձեռք բերում։ Առանց այդպիսի մոտեցման այդ քաղաքականությունը կկորցներ իր հեղափոխական լիցքը։ Անպարտադիր և չեզոք ինտերնացիոնալիզմ գոյություն չունի և չի կարող գոյություն ունենալ։ Ինտերնացիոնալիզմն անհամատեղելի է ֆրազների, դատարկ խոսքերի հետ։ Ընդհակառակը, այն հանդիսանում է գործողության,

գործունեության, հավատարմության, հեղափոխական համարձակության համանիշ։

Դրա համար էլ մենք հազիվ թե կարողանանք համաձայնել այն կարծիքին, թե իբր այն պայմանների բարդությունը և բազմազանությունը, որոնց մեջ գործում են առանձին կոմկուսակցություններ, և որոնք մենք լիովին հաշվի ենք առնում, բացառում են միջազգային կոմունիստական շարժման առանձին ջոկատների միջև փոխհարաբերությունների ընդհանուր պարտադիր նորմերի մշակումն ու կիրառումը։ Նման մոտեցումն անխուսափելիորեն առաջ կբերեր և կխորացներ շարժման մասնատումը, ազգայինը միակողմանիորեն բարձր կդասեր միջազգայինից և համաշխարհային հեղափոխական պրոցեսի օբյեկտիվ օրինաչափությունների անհրաժեշտ հաշվառումը կփոխարիներ սուբյեկտիվիզմով։

Մեր կուսակցությունը, ինչպես և շատ ուրիշ եղբայրական կուսակցություններ, գտնում է, որ չի կարելի պասսիվ նայել շարժման ներսում լուրջ տարաձայնությունների գոյության վրա՝ հաշտվելով դրանց հետ, այլ պետք է ձգտել հաղթահարել դրանք՝ շարժման միասնության նկատմամբ ակտիվ մոտեցման և համաշխարհային հասունացած պրոբլեմները մարքսիզմ-լենինիզմի դիրքերից ստեղծագործաբար լուծելու հիման վրա։

Եթե մենք ելնենք այն բանից, որ ինտերնացիոնալիզմի նյութական հիմքը ճնշված դասակարգերի և ժողովուրդների ընդհանուր շահերի մեջ է, ապա մենք պետք է նպատակասլաց որոնենք այն ամենը, ինչը հանգեցնում է համատեղ գործողությունների, աշխատենք ընդհանուր պայքարում ամրապնդել ընկերական կապերը։ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» լոզունգն առաջվա նման մեզ պարտավորեցնում է շարունակ կոնկրետ իմաստ տալ դրան, ամրապնդելով մարտական համերաշխության դաշինքը բոլոր ուժերի, սկսած Ամերիկայի Միացյալ Նահանգների և մնացած կապիտալիստական երկրների կոմունիստներից մինչև Վիետնամի մարտնչող հայրենասերները, հաջողությամբ սոցիալիզմ կառուցող բանվորները և գյուղացիները, Աֆրիկայի ու Ասիայի ազգային-ազատագրական շարժման պրոգրեսիվ ուժերը, Կուբայի հեղափոխականներից մինչև լատինա-ամերիկյան ամբողջ ցամաքամասի բոլոր հակաիմպերիալիստական մարտիկները։ Իմպերիալիստական մոնոպոլիաների ինտեգրացված ֆինանսական կապիտալին, աշխատանքի բոլոր մարդկանց այդ ոխերիմ թշնամուն, որ միջուկային ավերածությամբ է սպառնում մարդկային քաղաքակրթությանը, պետք է հակադրվի այդ մարդկանց և մարդկության խաղաղ ու պրոգրեսիվ զարգացման համար պատասխանատու ուժերի միացյալ ինտերնացիոնալ ուժը։

Այդ տեսակետից գնալով ավելի ակտուալ է դառնում լենինյան կոչը՝ «Բոլոր երկրների պրոլետարներ և ճնշված ժողովուրդներ, միացե՛ք»։

Հոկտեմբերից հետո առաջին տարիներին Վ. Ի. Լենինն ընդգծում էր. «Այսպիսով, սոցիալիստական հեղափոխությունը միայն և գլխավորապես հեղափոխական պրոլետարների պայքարը չի լինի ամեն մի երկրում իր բուրժուազիայի դեմ,—ո՛չ, նա իմպերիալիզմի կողմից ճնշված բոլոր գաղութների և երկրների, բոլոր կախյալ երկրների պայքարը կլինի միջազգային իմպերիալիզմի դեմ» (Երկեր, հատ. 30, էջ 185)։

Անհաշտելի հակասությունների մարտական ճակատն ընդգրկում է ամբողջ աշխարհը։ Սակայն այն անցնում է ո՛չ թե ցամաքամասերի միջով, այլ ամեն մի ցամաքամասի ներսում, ոչ թե հարավի ու հյուսիսի միջև, այլ աշխարհի բոլոր երկրների ուղղությամբ։ Նա, ով ժխտում է այս հիմնական ճշմարտությունը, հակաիմպերիալիստական ճակատի ներսում դասակարգային և ազգային տարրերը կտրում է միմյանցից կամ թե նրանց հակադրում է մեկը մյուսին, չի պաշտպանում կոմունիզմի շահերը, այլ դրանք նենգափոխում է շովինիզմով։ Ակներև է, որ հենց այդպիսի դիրք է բռնում Մաո Ցզե-Դունի խումբը, և այդ դիրքի հետևանքների դեմ պետք է հանդես գալ ընդհանուր ուժերով և ամենայն վճռականությամբ, որովհետև դրանք լուրջ վնաս են հասցնում շարժմանը և նրա ինտերնացիոնալ նպատակներին։

Անշուշտ, ուժի մեջ է մնում այն, որ մինչև վերջին ժամանակներս ճնշվող, իսկ այժմ բուռն թափով զարգացող ժողովուրդների ազգային իրավացի պահանջները ջանասիրաբար ուսումնասիրելու և հաշվի առնելու հետ միասին, ազգային հարցի մարքսիստական-լենինյան տեսության միանգամայն նոր ասպեկտների մշակման հետ միասին, մենք պետք է շատ ավելի մեծ եռանդով և համոզչությամբ մերկացնենք ազգային նպատակների և ձգտումների այդ խիստ վնասակար շովինիստական խեղաթյուրումները, որոնք այնքան բացաsաբար երևան են գալիս նաև վերջին ժամանակների բուռն իրադարձությունների ընթացքում։

Հետևողական ինտերնացիոնալ քաղաքականությունը պահանջում է սկզբունքայնորեն և ճկունությամբ անդրադառնալ աշխարհում տեղի ունեցող բոլոր փոփոխություններին։ Այդ քաղաքականությունը պետք է լինի միանգամայն բացահայտ, որ կարողանա կոնստրուկտիվ վերաբերմունք ունենալ հակաիմպերիալիստական պայքարի բոլոր տարրերի նկատմամբ, հատկապես այնտեղ, որտեղ դեռևս չեն կազմավորվել կոմունիստական կուսակցություններ որպես շահագործվող մասսաների կազմակերպված ուժ։ Այդ քաղաքականությունը պետք է կարողանա բարեկամական հասկանալի լեզվով խոսել աշխատավորական մասսաների այն հատվածի հետ, որը դեռևս գտնվում է սոցիալ-դեմոկրատական կամ թե քրիստոնեական գաղափարախոսության վճռական ազդեցության տակ, և ստեղծագործաբար, առանց քարացած շաբլոնի անդրադառնալ այն ամեն նորին, որ զարգացման ժամանակակից պրոցեսներն առաջացնում են այդ ֆորմացիաների ներսում։

Հարկավոր է, որ այդ ջանքերը վերածվեն կոմպլեքսային ստրատեգիայի ու տակտիկայի, որոնք կխթանեին պրոգրեսիվ և դեմոկրատական բոլոր ուժերի փոխներգործությունն ու դաշինքը և կապիտալիստական մի շարք երկրներում արդեն բացահայտ դարձած տենդենցներին կնպաստեին շրջադարձ կատարելու դեպի ձախ։ Խոսքն այստեղ վերաբերում է ոչ թե սոսկ ցանկություններով թելադրվող բառային կոչերին, այլ կարևոր, ծրագրային նշանակություն ունեցող սկզբունքներին։ Միաժամանակ խոսքը վերաբերում է այն հրամայական պահանջին, որ առաջ են բերել իմպերիալիզմի ագրեսիվ պլանները և ռեակցիոն ուժերի ձգտումը՝ Հունաստանի նման մյուս երկրներում էլ իշխանության ավտորիտար ձևեր և ռեակցիոն ռեժիմներ հաստատելու միջոցով խանգարել պրոգրեսիվ զարգացումը։

Պրոգրեսիվ զարգացման ուղին թևակոխած արաբական երկրների վրա իմպերիալիզմի ագրեսիվ ճնշման ռազմական կուլմինացիան, որ տեղի ունեցավ վերջերս, ընդգծում է, որ անհրաժեշտ է արագ մշակել իսկապես ինտերնացիոնալ լուծում, որը բազմակողմանիորեն ամրապնդում է զարգացող երկրների պրոգրեսիվ ուժերի հետ կոմունիստներին զոդող համերաշխության









կապերը։ Հենց այդ օրերը և շաբաթները ամենայն պարզորոշությամբ հաստատեցին այդ համերաշխության իսկական բնույթը։

Այս ամենը պարզ ցույց է տալիս, թե ինչպես իմպերիալիզմի դեմ ավելի ու ավելի արդյունավետ համատեղ գործողություններ ծավալելու անհրաժեշտության հետ միաժամանակ պայմաններ են հասունացել միջազգային լայն խորհրդակցությունում կոմունիստական կուսակցությունների հայացքները համադրելու համար։ Մեր կուսակցությունը տասնյակ այլ եղբայրական կուսակցությունների հետ միասին բաժանում է այն տեսակետը, որ հարկավոր է ձեռնամուխ լինել կոնկրետ կերպով նախապատրաստվելու կոմունիստական և բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների այդ համաշխարհային հանդիպմանը, սկզբնական փուլում իսկ օգտագործելով այն ամբողջ դրական փորձը, որ կուտակվել է տեղի ունեցած շրջանային (ռեգիոնալ) խորհրդակցություններում, ինչպես նաև Կարլովի Վարիում վերջերս տեղի ունեցած խորհրդակցության նախապատրաստման ու աշխատանքի ընթացքում։

Անտարակույս, այժմ օրակարգում դրված են մի շարք անհետաձգելի և չափազանց լուրջ միջազգային պրոբլեմներ, որոնք կարող է քննարկել միայն եղբայրական կուսակցությունների համաշխարհային խորհրդակցությունը։ Մեր կարծիքով խոսքն այստեղ վերաբերում է ո՛չ թե շարժման համայնապարփակ ծրագրի մշակմանը և ո՛չ թե զուտ տեսական պրոբլեմների ու վեճերի լուծմանը։ Սակայն հարկ կլինի, ըստ երևույթին, ծավալել այնպիսի բազմակողմանի տեսական գործունեություն, որը խորհրդակցությանը նյութեր և խթաններ կտա համաշխարհային հեղափոխական պրոցեսի անհետաձգելի հարցերի վերաբերյալ քաղաքական հատուկ դիրքորոշում մշակելու համար։

Մենք համոզված ենք, որ ոչ միայն մենք, այլև մնացած եղբայրական կուսակցությունները բոլոր ջանքերը գործի կդնեն, որ միջազգային խորհրդակցությունը լինի ըստ հնարավորին մեծ թվով կոմկուսակցությունների ընդհանուր գործը և որ նրա նախապատրաստման ընթացքում մշակվի այն բոլոր կուսակցությունների համար ընդունելի պլատֆորմը, որոնք ձգտում են համատեղ, իսկապես ինտերնացիոնալ գործողությունների։

Այսօր հենց այդպես է մեզ պատկերանում պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների կենսագործման հեռանկարը և դրա հետ կապված խաղաղության, ազգային ազատագրության, սոցիալիզմի և կոմունիզմի համար, իմպերիալիզմի դեմ կոմունիստական և հեղափոխական ուժերի ակտիվ պայքարի լայն կոնցեպցիան։

Մենք, հաստատ կանգնած Սովետական Միության և նրա կոմունիստական կուսակցության կողմում, հենց այդ դիրքերից ենք մոտենում Մեծ Հոկտեմբերի 50-րդ տարեդարձին և նրա ինտերնացիոնալ միսիային, որն այժմ առանձնահատուկ ուժ է ստանում այն մարտերի ու հաղթանակների լույսի տակ, որով ընթացել է միջազգային բանվոր դասակարգի ուղին անցած կես դարում։ Հոկտեմբերի պատգամներին հավատարիմ մնալը նշանակում է ստեղծագործաբար, լենինյան համարձակությամբ մոտենալ միջազգային կոմունիստական շարժման շարքերի մարտական համախմբման գործին՝ մարքսիզմ-լենինիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա։ Դա է ապագա հաղթանակների գլխավոր երաշխիքը։

(«Проблемы мира и социализма», 1967 թ., № 8)

Ռ. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

# ՍՆՆԴԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

ՆԱԽԱՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ շրջանում Հայաստանում սննդարդյունաբերությունը բաղկացած էր գինեգործական, պահածոների, պանրագործական, օճառի մի քանի կիսատնայնագործական, ցածր տեխնիկական մակարդակ ունեցող ձեռնարկություններից։ Թույլ էր զարգացած նաև սննդարդյունաբերության հումքային բազան՝ գյուղատնտեսությունը։

Սովետական իշխանության տարիներին ամրացան սննդարդյունաբերության այդ ճյուղերը և ստեղծվեցին բոլորովին նորերը, ինչպես, օրինակ, շաքարի, ձեթի ու յուղի, ծխախոտի-ֆերմենտացիոն, հրուշակեղենի, պարֆյումերային-կոսմետիկական, գարեջրի, ոչ ոգելից խմիչքների և այլն։ Դրանց շնորհիվ Հայկական ՍՍՀ սննդարդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1964 թվականին, 1913 թ. համեմատությամբ, ավելացավ 26,5 անգամ[1]։

Ներկայիս սննդարդյունաբերությունը նշանակալի նյութատեխնիկական բազա և աշխատանքային միջոցներ ունի։ Հանրապետության սննդարդյունաբերությունը բազմաճյուղ է։ Սննդամթերքներ են արտադրում 110 խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ։

Սննդարդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը տարեցտարի աճում է։ 1965 թ. հանրապետության սննդարդյունաբերության ճյուղերը թողարկել են 368,1 միլիոն ռուբլու արտադրանք, կամ 21,1 տոկոսով ավելի, քան 1960 թվականին։ Հայկական ՍՍՀ Կենտվիճվարչության տվյալներով սննդարդյունաբերությանը բաժին է ընկնում հանրապետության արդյունաբերական-արտադրական անձնակազմի 10 տոկոսից ավելին և արդյունաբերության հիմնական արտադրական ֆոնդերի արժեքի 11 տոկոսը։

Հանրապետության սննդարդյունաբերությունը միավորում է սննդի, մսի-կաթի արդյունաբերության մինիստրությունների, հացամթերքների գլխավոր վարչության արդյունաբերական ձեռնարկությունները, ինչպես նաև ձկնարդյունաբերությունը։ Սննդարդյունաբերության համախառն արտադրանքի 80 տոկոսից ավելին բաժին է ընկնում սննդարդյունաբերության մինիստրության ձեռնարկություններին։

Հանրապետության սննդարդյունաբերության արտադրանքի աճը խարսխվում է գյուղատնտեսական կուլտուրաների և անասնաբուծական մթերքների

1 «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսությունը 1964 թվականին», վիճակագրական տարեգիրք, Վիճակագրության հրատարակչություն, Երևան, 1965 թ.։

հումքային միջոցներն ավելացնելու, ինչպես նաև այդ արդյունաբերության արտադրական բազան ընդլայնելու վրա։ Այդ ընդլայնումը տեղի է ունենում ինչպես նոր շինարարության հաշվին, այնպես էլ սննդարդյունաբերության գործող ձեռնարկությունները տեխնիկապես վերակառուցելու և ընդլայնելու միջոցով։ Բավական է ասել, որ միայն ֆինանսավորման կենտրոնացված միջոցների հաշվին սննդարդյունաբերության մեջ կապիտալ ներդրումների ծավալը 10 տարվա ընթացքում (1952—1962 թթ.) կազմեց 48,3 մլն ռուբլի։

Հանրապետության սննդարդյունաբերության առաջ զարգացման լայն հեռանկարներ են բացվում ընթացիկ հնգամյակում։ Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թթ. հնգամյա պլանով նախատեսված է սննդարդյունաբերության համախառն արտադրանքի ծավալն ավելացնել 68 տոկոսով։ Առավել բարձր տեմպերով են զարգանալու սննդարդյունաբերության առաջատար ճյուղերը՝ գինեգործությունն ու պտուղ-բանջարեղենի պահածոների արտադրությունը, որոնց արտադրանքը աճելու է 2 անգամ, ինչպես նաև պարֆյումերային-կոսմետիկական արտադրանքները։

Այդ հեռանկարային ճյուղի արտադրության ծավալը 1970 թվականին՝ 1965 թվականի համեմատությամբ, եռապատկվելու է։

1970 թվականին սննդարդյունաբերության համախառն արտադրանքը կազմելու է հանրապետության արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի 18,3 տոկոսը։ Հնգամյակի տարիներին սննդարդյունաբերության արտադրության ծավալը ամբողջությամբ վերցրած աճելու է 1,7 անգամ, 1961—1965 թթ. 1,2 անգամի դիմաց։

Արդյունաբերական արտադրանքի ծավալի այդ աճն ապահովելու համար 1966—1970 թթ. սննդարդյունաբերության մեջ միայն ֆինանսավորման կենտրոնացված աղբյուրների հաշվին ներդրվելու է 108,1 մլն ռուբլի։ Նախորդ հնգամյակների համեմատությամբ կապիտալ ծախքերը կավելանան ավելի քան երեք անգամ։

Այդ կապիտալ ներդրումները հնարավորություն կտան ավելացնելու գործող սննդի ձեռնարկությունների արտադրական կարողությունները, կառուցելու մի շարք նոր գործարաններ, արմատավորելու նոր տեխնիկա և ավելի կատարյալ տեխնոլոգիա։

Հնգամյակի ընթացքում սննդարդյունաբերության արտադրական կարողությունների մեծացումը կկենսագործվի հիմնականում նոր արդյունաբերական ձեռնարկություններ կառուցելու միջոցով։ Միջոցների 65 տոկոսից ավելին հատկացվելու է նոր շինարարությանը և մոտ 25 տոկոսը՝ գործող ձեռնարկությունների ընդլայնմանն ու վերակառուցմանը։

Սննդի նոր ձեռնարկությունների շինարարությանը հատկացվող միջոցների աճման կապակցությամբ անհրաժեշտություն է առաջանում առավել արդյունավետությամբ օգտագործելու այդ միջոցները։

Սննդարդյունաբերության օբյեկտներում կատարված կապիտալ ներդրումների տնտեսական արդյունավետությունը շատ բանով կախված է կապիտալ շինարարության այնպիսի հեռանկարային պլանավորումից, որը թույլ կտա կենսագործել սննդի օբյեկտների կոմպլեքսային շինարարությունը։ Դա կապված է սննդի արտադրությունների մասնագիտացման, կոոպերացման և կոմբինացման հարցերի լուծման հետ։

Սննդարդյունաբերության հետագա զարգացման խնդիրները կարող են հաջող լուծվել սննդի արտադրությունները նպատակահարմար կերպով կոմ-



բինացնելու միջոցով։ Արդյունաբերական արտադրության կոմբինացումը հասարակական արտադրությունը կազմակերպելու ավելի բարձր աստիճան է, քան մասնագիտացումը և կոոպերացումը։ Կոմբինատը ներառնում է այնպիսի մասնագիտացված արտադրություններ, որոնք միմյանց հետ կապված են արտադրության տեխնոլոգիական պրոցեսի հաջորդականությամբ (ելակետային հումքի օգտագործմամբ հանդերձ)։

Մեր հաշվարկումների համաձայն, որոնք հիմնված են գյուղատնտեսական հումքի սկզբնական մշակման ուղղությամբ սննդի որոշ ձեռնարկությունների տեխնիկա-տնտեսական ցուցանիշների վրա, արտադրության զանազան ձեռնարկություններ կոմբինացնելու դեպքում, կապիտալ ներդրումների տեսակարար կշռի նվազումը՝ առանձնացված սննդի ձեռնարկությունների շինարարությունների արժեքի համեմատությամբ, կազմում է մոտ 20 տոկոս, իսկ արտադրության ծախքերի նվազումը հասնում է 10 տոկոսի։

Սննդի արտադրության միավորների կոմբինացումը, այսպիսով, ապահովում է կապիտալ ներդրումների առավել արդյունավետ օգտագործումը, մի բան, որի շնորհիվ բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը, երկարում սննդի արտադրության սեզոնը, ստեղծվում են մշտական որակյալ կադրեր, կրճատվում է վարչա-կառավարչական, օժանդակ անձնակազմը։

Սննդարդյունաբերության մեջ հումքի կոմպլեքսային օգտագործման տնտեսական արդյունավետությունը կարևոր նշանակություն է ստանում առանձնապես այն պատճառով, որ սննդարդյունաբերության արտադրանքի վրա կատարված ծախքերի կազմում հումքի տեսակարար կշիռը հասնում է ավելի քան 85 տոկոսի։

Հնգամյակի տարիներին և հետագայում սննդարդյունաբերության հումքային բազայի ընդլայնման հետ միասին, կառուցվելու են սննդարդյունաբերության շատ ձեռնարկություններ, որոնք վերամշակելու են պտուղներ, խաղող, բանջարեղեն, միս, կաթ։ Հանրապետությունում այնպիսի համասեռ արտադրություններ միավորող սննդի կոմբինատների կառուցումը, որտեղ հումքի վերամշակման առավելագույն ժամանակաշրջանները չեն համընկնում, կապահովի սննդարդյունաբերության մեջ կապիտալ ներդրումների տնտեսումը։ Տնտեսական միջոցները կարելի կլինի հատկացնել հանրապետության նոր ձեռնարկությունների շինարարությանը։

1966—1970 թթ. ընթացքում հանրապետության սննդարդյունաբերության մեջ կատարվելիք կապիտալ ներդրումների մոտ 40 տոկոսը բաժին է ընկնում գինեգործությանն ու պտուղ-բանջարեղենի պահածոների ճյուղին, իսկ 30 տոկոսը՝ մսի, կաթի արդյունաբերության ձեռնարկություններին։ Գինեգործական ճյուղերի զարգացմանը հնգամյակի տարիներին հատկացվելու է 30,4 մլն ռուբլի՝ 1961—1965 թթ. 10,9 մլն-ի դիմաց։

Այդ միջոցներով կառուցվելու են սկզբնական գինեգործության մի քանի խոշոր գործարաններ, որոնց սկզբնային կարողությունը կկազմի 61 հազար տոննա խաղողի վերամշակում։ Դրանց թվում կլինեն Արթենիկի, Եղվարդի, Արազդայանի գինու գործարանները, որոնցից յուրաքանչյուրը կունենա սկզբում 10 հազար տոննա խաղողի վերամշակման կարողություն, Մյասնիկյանի անվան սովխոզի գինեգործարանը՝ 6 հազար տոննա, ինչպես նաև մի շարք այլ գործարաններ՝ սկզբում 2—4 հազար տոննա խաղողի վերամշակման կարողությամբ։

Կենտրոնացված կապիտալ ներդրումների հաշվին կավելանա Հոկտեմբեր-

յանի կոնյակի գործարանի կարողությունը՝ խաղողի մշակման սեզոնում կաճի 2,0 հազար և Բուրաստանի սկզբնական գինեգործական գործարանինը՝ հազար տոննայով։ Երևանի շամպայն գինիների գործարանի կարողությունը կավելանա 0,2 մլն դալ։

Գինեգործական արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1970 թ. կկազմի 294,2 մլն ռուբլի և 1965 թ. մակարդակը կգերազանցի երկու անգամ։ 1970 թ. գինեգործական ճյուղին բաժին կընկնի սննդարդյունաբերության ամբողջ համախառն արտադրանքի մոտ կեսը (47,7 տոկոս)։ Միայն գինեգործական ճյուղը այնքան համախառն արտադրանք կտա, որքան 1965 թ. տվել են հանրապետության սննդարդյունաբերության բոլոր ճյուղերը միասին վերցրած։

1970 թ. համար պլանավորված 14 մլն դալ գինենյութերի արտադրության ծավալն ապահովելու համար արդյունաբերական վերամշակման պետք է ենթարկվի 185 հազ. տոննա խաղող։ Զգալիորեն կամրապնդվի գինեգործական արդյունաբերության հումքային բազան։ Կոլտնտեսություններում ու սովխոզներում խաղողի արտադրությունը կաճի նոր ջրարբի հողերում՝ խաղողի այգիների տարածությունը ավելացնելու հաշվին։ 1970 թ. մոտերքին խաղողի այգիների ընդհանուր տարածությունը կկազմի 43,2 հազ. հեկտար, որից 36 հազ. հեկտարը բերքատու կլինի։ Մեկ հեկտարի խաղողի միջին բերքատվությունը կաճի 27,6 տոկոսով։ Հանրապետությունում համախառն բերքը 1965 թվականի համեմատությամբ կավելանա 83,7 տոկոսով։

Գինեգործական արդյունաբերության հումքային բազայի ընդլայնումն ու ամրապնդումը հնարավորություն կտան ավելացնելու խաղողի պետական գնումների ու նրա արդյունաբերական վերամշակման ծավալը։ Հանրապետությունում մթերված խաղողի ընդհանուր ծավալի մոտ 90 տոկոսը արդյունաբերական վերամշակման է ենթարկվում, ընդ որում խաղողի հայթայթողը մինչ այժմ հիմնականում հանդիսանում են կոլտնտեսությունները, որոնց բաժինը կազմում է գինեգործական արդյունաբերության համար մթերված խաղողի ընդհանուր ծավալի 70 տոկոսը։ Դրա հետ միասին ավելանում է խաղողի մթերումը սովխոզներում։

1970 թվականին՝ 1960 թ. համեմատությամբ, խաղողի մթերումը կավելանա ավելի քան երեք անգամ, իսկ 1965 թ. համեմատությամբ՝ համարյա կկրկնապատկվի։

Հնգամյակի տարիներին զգալի հաջողությունների կհասնի հանրապետության պտուղ-բանջարեղենի պահածոների արդյունաբերությունը։ Այդ ճյուղում կապիտալ ներդրումները կկազմեն 12 մլն ռուբլի, որը 3,5 անգամ ավելի է 1961—1965 թթ. համեմատությամբ։ Այդ ճյուղի արտադրական կարողությունը կավելանա 109,5 մլն պայմանական տուփով (մպտ)՝ գլխավորապես նոր պահածոների գործարանների շինարարության հաշվին (96 մպտ)։ Պահածոների գործարանի աշխատանքի սեզոնը երկարացնելու, այդ գործարանների արտադրական կարողություններն ավելի լրիվն և ռիթմիկ բեռնավորելու նպատակով պահածոների արդյունաբերության առաջնահերթ խնդիրներից մեկը սառնարանների, սառեցնող խցիկների շինարարությունն է, որը հնարավորություն կտա կազմակերպելու պտուղ-բանջարեղենի հումքի և կիսաֆաբրիկատի տևական պահպանումը։

Հնգամյակի ընթացքում հանրապետության պահածոների արդյունաբերության համար կառուցվելու են այնպիսի սառնարաններ, որոնց կարողությունը



հնարավորություն կտա միաժամանակ պահպանելու 3,5 հազ. տոննա պտուղ-բանջարեղենի հումք։

Հանրապետությունում ներկայումս կառուցվող գործարաններից ամենամեծը Արտաշատի պահածոներինն է։ Ըստ նախագծի այդ գործարանի ընդհանուր կարողությունը կազմում է 74 մպտ։ Նրա սառնարանային տարածությունը թույլ է տալիս միաժամանակ պահպանել 1000 տոննա պտուղ-բանջարեղենի հումք և կիսաֆաբրիկատ։

Պահածոների գործարաններ են կառուցվելու էջմիածնում, 30 մպտ կարողությամբ, Մասիսում՝ 24 մպտ կարողությամբ, այնպիսի սառնարանով հանդերձ, որտեղ կարելի է միաժամանակ պահպանել 500 տոննա պտուղ-բանջարեղենի հումք։ Հոկտեմբերյանի պահածոների գործարանին կից կառուցվելու է պահածոների պահպանման մեքենայացված պահեստ, որի կարողությունը նախատեսված է 6 մպտ, պահեստային տարածությունը կազմում է 6 հազ. քառ. մետր։ Նախատեսված է 1970 թ. շահագործման հանձնել Հոկտեմբերյանի պահածոների գործարանի սառնարանային տարողությունները, որոնց արտադրական կարողությունը թույլ կտա միաժամանակ պահելու 2000 տոննա պտուղ ու բանջարեղեն։ Այրումի պահածոների գործարանի արտադրական կարողությունը կհասնի 13,5 մպտ, ի հաշիվ հյութերի արտադրության արտադրամասի շինարարության։

Պտուղ-բանջարպահածոների արդյունաբերության համախառն արտադրանքը հնգամյակի վերջում, 1965 թ. համեմատությամբ, կավելանա երկու անգամ և կկազմի 41,7 մլն ռուբլի։ Այդ ճյուղի արդյունաբերական արտադրանքի տարեկան միջին աճը 1966—1970 թթ. կկազմի 15,6 տոկոս։

Զգալիորեն աճել է պահածոների արտադրությունը։ Դրա հետ մեկտեղ կընդլայնվի պահածոների ասորտիմենտը և կբարելավվի դրանց որակը։ Պահածոների ասորտիմենտն ու մասսայական արտադրությունը կընդլայնվի պտուղ-հատապտղային բնական հյութերի, միջուկախառն հյութերի, խաղողի և տոմատի հյութերի, բանջարեղենի նախուտեստային պահածոների, կոմպոտների, մուրաբաների, մանկական սննդամթերքների, սառեցրած պտուղների արտադրությունն ավելացնելու շնորհիվ։

1965 թ. համեմատությամբ՝ 1970 թվականին պահածոների արտադրությունը կկրկնապատկվի և կկազմի 220 մպտ։ Ընդ որում բանջարեղենի պահածոների արտադրանքը կկազմի 38,5 մպտ, տոմատինը՝ 92 և մրգեղենինը՝ 89,2 մպտ։ Հատկապես կավելանա բանջարեղենի նախուտեստային, նատուրալ և մանկական սննդի, տոմատի մածուկի, մրգերի կոմպոտների, մուրաբաների, խաղողի հյութի և այլ պահածոների արտադրությունը։

Հաշվի առնելով այն հանգամանքը, որ պտուղների ու բանջարեղենի սառեցումը կարևոր նշանակություն ունի դրանց օգտագործման սեզոնայնությունը հաղթահարելու գործում, 1970 թվականին սառեցված արտադրանքի ծավալը կաճի 15 անգամ։

Շաքարի արդյունաբերության զարգացման վրա 1966—1967 թթ. ծախսվել է 21 մլն ռուբլի, կամ 5,5 անգամ ավելի, քան նախորդ հնգամյակի տարիներին։ 1968—1970 թթ. ընթացքում Սպիտակի գործարանը վերակառուցվելու է, որից հետո այն օրական կվերամշակի 15 տոննա ճակնդեղ։

Հրուշակեղենի արտադրանքների արտադրության աճն ամբողջությամբ վերցրած կկազմի 40 տոկոս, դրա հետ միասին շոկոլադը և դրանից պատրաստվող արտադրանքները կկրկնապատկվեն, վաֆլին կավելանա 3,5 ան-

գամ։ 1967 թ. կյուրացվի պտղակարկանդակի, պաստեղների արտադրությունը, որը 1970 թ. կհասնի 500 տոննայի։

Հնգամյակի ընթացքում բարձր տեմպերով կաճի պարֆյումերիայի ճյուղը, որի համախառն արտադրանքի ծավալը 1970 թ. կկազմի 2,4 մլն ռուբլի կամ 1965 թ. դիմաց կավելանա համարյա 3,5 անգամ։ Այդ ճյուղի արտադրանքի աճը կապահովվի խորդենու տնտեսության զարգացման հաշվին։ Խորդենու արտադրության ծավալը կաճի 3,2 անգամ։ Խորդենագործության զարգացման հետևանքով հանրապետությունը կդառնա երկրի պարֆյումերային արդյունաբերության զարգացման բազաներից մեկը։

Հնգամյակի տարիներին զգալիորեն կաճի մսի-կաթի արդյունաբերության համախառն արտադրանքը։ Այդ ճյուղի համախառն արտադրանքի ծավալը 1970 թվականին կկազմի 75,4 մլն ռուբլի 1965 թ. 51,9 մլն ռուբլու դիմաց։ Հնգամյակի տարիներին սննդի արդյունաբերության մեջ կատարված կապիտալ ներդրումների մոտ 30 տոկոսը բաժին է ընկնում մսի-կաթի արդյունաբերության ձեռնարկություններին։

Սննդարդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1970 թ. կհասնի 617,2 մլն ռուբլու։ Արդյունաբերական արտադրանքի միջին տարեկան աճը հնգամյակում կկազմի մոտավորապես 11 տոկոս։ Սննդարդյունաբերությունը հնգամյակի վերջում կթողարկի 249,1 մլն ռուբլով ավելի համախառն արտադրանք, քան թողարկվել էր 1965 թվականին։

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը անհրաժեշտ միջոցառումներ են կենսագործում՝ ապահովելու գյուղատնտեսական արտադրանքի վերելքը և նրա զարգացման այնպիսի մակարդակ, որ հնարավոր լինի բավարարել բնակչության պահանջարկը գյուղատնտեսական մթերքների և արդյունաբերության պահանջմունքները՝ հումքի նկատմամբ։

Գյուղատնտեսական մթերքների և հումքի պետական գնումների ծավալը 1970 թվականին կավելանա. պտուղներինը՝ 94,2, խաղողինը՝ 89,4, բանջարեղենինը՝ 56,3, կաթինը՝ 9,7 տոկոսով։

Ջնայած բնակչության բնական զգալի աճին, հանրապետության սննդարդյունաբերության արտադրանքի ավելացումը թույլ կտա նվազեցնելու այն խզումը, որ կա սննդամթերքների սպառման փաստական մակարդակի և ՍՍՀՄ ԳԱ սննդի ինստիտուտի հանձնարարած՝ գիտականորեն հիմնավորված սպառման նորմաների միջև, նորմաներ, որոնք տարբերակված են զանազան շրջանների համար՝ հաշվի առնելով բնակչության կազմը, կյանքի ու աշխատանքի պայմանները, կլիմայական, ազգային առանձնահատկությունները։

Գիտականորեն հիմնավորված նորմաները նախատեսում են կրճատել հացամթերքների ու կարտոֆիլի սպառումը, ավելացնելով բուսաբուծական և անասնաբուծական մթերքների սպառումը։

Ծանր արդյունաբերության առավել զարգացման բազայի վրա սննդարդյունաբերության անընդհատ աճն ու կատարելագործումը, սննդամթերքների որակի բարելավումն ու ասորտիմենտի ընդլայնումը, հանրապետության շրջաններում այդ ճյուղի ձեռնարկությունների ռացիոնալ տեղաբաշխումը կնպաստեն հասարակական աշխատանքի խնայողությանը, բնակչության նյութական բարեկեցության հետագա բարձրացմանը։






Ս. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Բանասիրական գիտությունների դոկտոր


# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՀԱՅՈՑ ԼԵԶՎԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

«ՆԵՐԿԱՅՈՒՄՍ ռուսահայության առաջ դրված է հայերենի լինել թե չլինելու հարցը, իր բոլոր սպառնալի հետևանքներով... Որքան էլ մենք կամենանք հուսադրել մեզ, որքան էլ ստիպենք մեզ լավատես լինելու, այնուամենայնիվ պետք է խոստովանենք, որ հայերեն լեզուն յուր գոյության ճգնաժամի մեջ է»։ այսպիսին էր արևելահայերենի վիճակը առաջին համաշխարհային պատերազմի տարիներին՝ անվանի հայագետ Ստ. Մալխասյանի գնահատմամբ։ Հայոց լեզվի ճգնաժամը հայ ժողովրդի գոյության, կյանքի ճգնաժամի արտահայտությունն էր պատմական հայտնի պայմաններում։ Եթե արևելահայության վիճակն այդպիսին էր, ապա արևմտահայ հատվածինն ավելի քան ողբերգական էր. քաղաքակրթության դարում մի քաղաքակիրթ ժողովուրդ վայրենի դաժանությամբ սպանվում էր օսմանյան Թուրքիայում։

Հոկտեմբերյան հեղափոխության շնորհիվ հայ ժողովուրդը ոչ միայն փրկվեց ֆիզիկական բնաջնջումից, այլև ձեռք բերեց պետականություն, ստացավ քաղաքական, տնտեսական, մշակութային կյանքի զարգացման մեծ հնարավորություններ ու պայմաններ։

Հայաստանում սովետական կարգերի հաստատումից անցել է հինգ տասնամյակից էլ պակաս ժամանակաշրջան։ Դա ժողովրդի և նրա հոգևոր մշակույթի դարավոր պատմության մեջ մի փոքրիկ պահ է, բայց շատ նշանակալից պատմական շրջան, որն ուրույն ու կարևոր տեղ է գրավում հայ ժողովրդի կյանքում։ Պատմական շատ կարճ ժամանակամիջոցում Սովետական Հայաստանը դարձել է առաջավոր արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի ու գիտության երկիր։ Կես դար առաջ ճգնաժամային օրեր ապրած հայոց լեզուն ոչ միայն շարունակեց հարատևել, այլև ծաղկեց, իր դարավոր գանձերին ավելացրեց նորերը, հարստացավ, հզորացավ ու հասավ զարգացման այնպիսի աստիճանի, որ վայել է հազարամյակների փառավոր անցյալ ունեցող և այսօրվա սոցիալիստական երկրի պետական լեզվին։

Համեմատաբար կարճ ժամանակում հայոց լեզվի արագ զարգացումն ու հարստացումը պետք է բացատրել երկու հիմնական պայմանով.

1. Նոր, սոցիալիստական տնտեսության, գիտության ու կուլտուրայի ստեղծմամբ ու զարգացմամբ, հասարակական կյանքի վերափոխմամբ ու աննախադեպ ակտիվացմամբ.

2. Լեզվի նորմավորման, հարստացման ու զարգացման նկատմամբ ոչ միայն ուսումնագիտական կոլեկտիվների ու հիմնարկների, այլև պետության կողմից ցուցաբերվող հոգատարությամբ։ Հայերենը բարձրացավ պետական լեզվի աստիճանի, դարձավ հանրապետության պետական լեզուն։

Ազգային լեզվի պատշաճ գնահատությունը, հասարակության կյանքում նրան այսպիսի մեծ տեղ տալը, հոգատարությունը նրա զարգացման նկատմամբ՝ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի ստեղծման ու զարգացման լենինյան ազգային քաղաքականության վառ արտահայտություն են։

Սոցիալիստական կուլտուրայի ազգային ձևի լենինյան լուծումը մեծապես նպաստեց թե՛ լեզվի կատարելագործմանն ու հարստացմանը և թե՛ կուլտուրայի սոցիալիստական բովանդակության աղատ, անկաշկանդ զարգացմանը, այն ժողովրդի բոլոր խավերին հասցնելուն, ժողովրդական զանգվածներին կուլտուրական հեղափոխության բոլոր բնագավառներում ներգրավելուն։ Ահա թե ինչու ազգային ձևի պատշաճ գնահատումն ու հարգումը եղել է և մնում է որպես սկզբունքային հարց՝ կապված սոցիալիստական կուլտուրայի անշեղ զարգացման հետ։

Սոցիալիստական կուլտուրայի զարգացման գործում ազգային լեզվի դերի բարձր գնահատությամբ պետք է բացատրել մայրենի լեզվով գրագիտության տարածումը ժողովրդի բոլոր խավերի մեջ, հանրակրթական, բարձրագույն և

ուսումնական այլ հաստատություններում ուսուցման ապահովումը և, դրա հետ կապված, բոլոր դասագրքերի (այդ թվում և բնական գիտությունների) ստեղծումը մայրենի լեզվով, մայրենի լեզվի ուղղագրության բարեփոխությունը, մի շարք բնագավառների ազգային տերմինների ստեղծումը՝ կապված հայերենի, որպես պետական լեզվի, հասարակական դերի ընդլայնման հետ և այլն, և այլն։

Նշված երկու գործոններն ապահովեցին հայոց լեզվի աննախադեպ հարստացումն ու զարգացումը։

Սովետական շրջանում հայոց լեզվի նվաճումները երկու կարգի են՝ 1. հասարակական դերի ընդլայնում, նոր գործառությունների ձեռքբերում, 2. կառուցվածքային զարգացում։

Հայերենը նախասովետական շրջանում զարգացման բարձր աստիճանի հասած լեզու էր, որով ստեղծվել է բավականին հարուստ գեղարվեստական գրականություն, հրապարակախոսություն, բայց հայ հասարակական կյանքի բնույթի պատճառով (պետականություն չունենալը, պաշտոնական շատ գործառություններ ռուսերենով կատարելը, գիտության ու տեխնիկայի շատ ճյուղերի բացակայությունը և այլն) նախասովետական շրջանի հայերենը չուներ անհրաժեշտ տերմինաբանություն հասարակական-քաղաքական կյանքի, գիտության ու տեխնիկայի մի շարք բնագավառների վերաբերյալ։

Սովետական շրջանում հայոց լեզուն ձեռք բերեց նոր գործառություններ՝ սպասարկելու մեր քաղաքական, տնտեսական, գիտական ու կուլտուրական կյանքի այնպիսի բնագավառների, ինչպիսիք են՝ պետական-քաղաքական գործունեություն, դիվանագիտություն, իրավաբանություն, արդյունաբերությունն իր բազմաթիվ ճյուղերով, տեխնիկական գիտությունների մի շարք ճյուղեր, արվեստի նոր բնագավառներ (կինո, հեռուստատեսություն) և այլն։ Այս հանգամանքով պետք է բացատրել այն իրողությունը, որ սովետական շրջանում տերմինաբանությունը դարձավ պետության հոգատարության առարկա և զարգացման մեծ թափ ստացավ։ Նշենք, որ առաջին անգամ սովետական շրջանում հրատարակվեցին այնպիսի տերմինաբանական բառարաններ, ինչպիսիք են՝ իրավաբանական, ռազմական, ավտո-տրակտորային տեխնիկայի, տնտեսագիտական, երկաթուղային, շինարարական կառուցվածքների, պոլիտեխնիկական, առևտրահաշվապահական, մաթեմատիկական և այլն։ Ընդհանուր առմամբ սովետական շրջանում հրատարակվել են մոտ երեսուն տերմինաբանական բառարաններ։

Տերմինաբանական բառարանների թեմաների թվարկումից իսկ երևում է, որ հայոց լեզվի հասարակական գործառության ընդլայնումը ինքնին կարևոր նվաճում լինելով, միաժամանակ խթանում է համապատասխան բնագավառների, իսկ վերջին հաշվով առհասարակ հայոց լեզվի բառապաշարի հարստացմանը։ Ուստի, հայոց լեզվի սովետական շրջանի վերոհիշյալ նվաճումները սերտորեն կապված են միմյանց հետ, և մասնավորապես հասարակական դերի ընդլայնումը մեծապես ազդում է նրա կառուցվածքի, հատկապես բառապաշարի հարստացման վրա։

Լեզվի կառուցվածքի տարբեր կողմերը հավասարապես չեն զարգանում։

Լեզվի ամենաարագ փոփոխվող կողմը, որն անմիջականորեն արտացոլում է հասարակության կյանքում տեղի ունեցող տեղաշարժերը, բառապաշարն է։ Սովետական շրջանում հայոց լեզուն հարստացել է մեր կյանքի տարբեր բնագավառներին վերաբերող բազմահազար բառերով։

Կյանքի սոցիալիստական վերափոխումը, սովետական կարգերը առաջ բերեցին նոր երևույթներ, որոնք բառ-հասկացողությունների ձևով իրենց արտահայտությունը գտան լեզվի մեջ։ Այդ բառերից են՝ կոլեկտիվացում, սովխոզ, պլան, հնգամյակ, կոմերիտմիություն, քաղխմբակ, հարվածային, կուլտմասսայական, քաղդաստիարակչական, տնտհաշվարկ և այլն։

Հասարակական-քաղաքական կյանքին վերաբերող շատ նոր հասկացություններ արտահայտվում են կայուն բառակապակցություններով, ինչպես՝ կոմունիստական շինարարություն, սոցիալիստական օրինականություն, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազա, քաղաքական զգոնություն, ժողովրդական տնտեսություն, արտապլանային արտադրանք, պետական անվտանգություն և այլն։

Հայոց լեզուն վերջին տասնամյակներում հարստացավ գյուղի սոցիալիստական վերակառուցմանը վերաբերող շատ բառերով ու բառակապակցություններով, որոնցով արտահայտվում են սոցիալական նոր հարաբերությունները գյուղում, տեխնիկայի ու գիտության նվաճումների ներդրումը գյուղատնտեսության մեջ (ագրոկանոն, աշխօր, բրիգադ, բրիգադավար, թունաքիմիկատ, ինկուբատոր, կաթնամոմային, սերզատ, սերմազտիչ (մեքենա), սերմատնտեսություն, սիլոս, սիլոսացում, տրակտոր, տրակտորիստ, փորձադաշտ և այլն)։

Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո Հայաստանը դարձավ առաջավոր տեխնիկայի ու գիտության երկիր. կարճ ժամանակում ստեղծվեցին ու զարգացան գիտության ու տեխնիկայի տարբեր ճյուղեր։ Դրա հետ կապված՝ հայոց լեզուն հարստացավ գիտատեխնիկական նոր տերմիններով, բառերով։ Կարելի է ասել, որ հայերենի գիտա-տեխնիկական բառապաշարը գերազանցապես սովետական շրջանի ծնունդ է. օրինակ՝ ամբարձիչ, անտենա, ավիացիա, ավտոդող, ավտոպահեստամաս, արագացուցիչ, արբանյականավ, ատոմանավ, գազաջեռուցում, թափք, ինքնաթափ, լինոտիպ, կիսահաղորդիչ, հեռուստակառավարում, հրթիռաշինություն, ձայնորսիչ, ռադիոգիր, սառնարան, սարքաշինություն, տիեզերանավ և այլն։

Սովետական շրջանում և հատկապես Հայրենական պատերազմի տարիներին ու նրանից հետո հայոց լեզուն հարստացավ ռազմական տեխնիկայի, ռազմական կյանքին վերաբերող հարյուրավոր բառերով (տանկ, տանկիստ, դեսանտ, կորպուս, ականանետ, ականակիր, զորասյուն հրետանի, հրետանավոր, ականաղերծում, թիկնանցել, ավտոմատ, կրակահերթ, զրահապատ, հրթիռ (միջմայրցամաքային, բալիստիկ), միջուկային զենք և այլն)։

Արվեստի ծաղկումը նպաստեց այդ բնագավառի բառապաշարի հարստացմանը և դրան վերաբերող՝ անցյալից եկող բառերի առավել լայն տարածմանը։ Դրանցից են՝ անսամբլ, դիրիժոր, երգացանկ, զուգերգ, էստրադա, համերգասրահ, ձայնասկավառակ, մեներգ, կինոարվեստ, ռադիոհամերգ, ֆիլհարմոնիա և այլն։ Միայն արվեստի նոր առաջացած ճյուղերից մեկին՝ կինոյին վերաբերող տասնյակ բառեր են կազմվել, ինչպես՝ կինոակնարկ, կինոաստղ, կինոդահլիճ, կինոդերասան, կինոդիտում, կինոէկրան, կինոթատրոն, կինոժապավեն և այլն։

Անկարելի է մի հոդվածում ըստ առանձին բնագավառների ներկայացնել բառական նույնիսկ այն հիմնական համալրումները, որոնք կատարվել են հայոց լեզվի զարգացման սովետական շրջանում։ Ստիպված ենք սահմանափակվել մեր կյանքի մյուս բնագավառներին (առևտուր, տրանսպորտ, սպորտ, կենցաղ և այլն) վերաբերող որոշ բառերի ընդհանուր թվարկումով. ինքնասպասարկում, հատավաճառ, ցուցափեղկ, տաքսի, երթուղի, ուղերթ, հեռախոսացանց, հեռախոսավարուհի, մեքենագրուհի, համայց, գերազանցիկ, շաբաթօրյակ, սպորտսմեն, հնգամարտիկ, հոկեյ, ֆուտբոլիստ, բռնցքամարտիկ, մատչ, տուրնիր, այլուրեքություն, մեղսակցություն և այլն։

Որպես հայոց լեզվի սովետական շրջանին բնորոշ երևույթ պետք է նշել, որ արագ ստեղծվում են միջազգային կյանքին վերաբերող բառեր ու բառակապակցություններ (ՄԱԿ, նոտա, կոմյունիկե, անվտանգության կոմիտե, խաղաղության միջազգային շարժում, միավորված ազգեր, չեզոք երկրներ, սառը պատերազմ, միջազգային մրցանակաբաշխություն, համաշխարհային ֆեստիվալ, ապառազմականացված գոտի և այլն)։

Ինչպես տեսնում ենք, այս կարգի հասկացությունններն ավելի շատ բառակապակցություններով են արտահայտվում, քան թե բառերով։ Ըստ որում սա ընդհանուր երևույթ է և վերաբերում է ոչ միայն հայերենին, այլև ուրիշ լեզուների։

Հայոց լեզվի զարգացման սովետական շրջանը բնորոշվում է ոչ միայն բառապաշարի հարստացմամբ, այլև վերջինիս միջոցների ու բառական նոր կազմությունների յուրահատկություններով։ Իհարկե, կարճ ժամանակընթացքում լեզվի բառային կազմի հարստացման միջոցների մեջ էական փոփոխություններ չեն կատարվում։ Այդպիսի փոփոխություններ, բնականաբար, չեն կատարվել նաև հայերենի զարգացման հետհեղափոխական շրջանում։ Ժամանակակից հայերենի բառապաշարի հարստացման հիմնական միջոցներն են՝ ա) բառակազմություն, բ) փոխառություն։ Բառապաշարի հարստացման գործում դեր ունեն նաև հայոց լեզվի հին շրջանից և այլ հատվածներից (հատկապես արևմտահայ գրական լեզվից, նվազ չափով նաև բարբառներից) վերցվող բառերը։ Այս միջոցներն ընդհանրապես գործում էին նաև նախասովետական շրջանում։ Այստեղ խոսքը վերաբերում է բառապաշարի հարստացման միջոցների ու բառական նոր կազմությունների մի շարք յուրահատկություններին։

Նշենք դրանցից առավել բնորոշները։

1. Սովետական շրջանում հայոց լեզվի բառակազմությունը հարստացավ մի նոր տեսակով՝ հապավումով։ Ճիշտ է, եզակի հապավումներ կարելի է ցույց տալ նախահեղափոխական շրջանի հայերենում, բայց դրանք հատուկենտ երևույթներ էին, ավելի շատ հարում էին սովորական բառակրճատումներին, և հապավումը իրավամբ չէր դիտվում որպես բառակազմության տեսակ։ Իսկ մեր օրերում հապավումը որպես բառակազմության նոր եղանակ արագ տարածվել է և հասել մեծ չափերի։ Բարդության սովորական տեսակներից դրանք տարբերվում են նրանով, որ կազմվում են ոչ թե ամբողջական բառերի, այլ սրանց հապավված մասերի միացմամբ (որոշ հապավումներում բաղադրիչներից մեկը գործածվում է ամբողջական, առանց հապավվելու), իսկ իրարից տարբերվում են բաղադրիչների հապավման աստիճանով ու բնույթով (վանկ, տառ և այլն). ինչպես՝ կենտկոմ, զինկոմ, ֆինբաժին, խնայդրամարկղ, արդգործմինիստրություն, ՍՍՀՄ, ՍՄԿԿ, բուհ և այլն։

2. Նորագույն շրջանի շատ փոխառյալ բառեր ավելի կարճ ժամանակում են հարազատանում, մերվում ազգային բառապաշարին և ավելի հաճախ են գործածվում բարդություններում՝ հանդես գալով հայերեն բաղադրիչների հետ, որի հետևանքով ստացվում են մեծ թվով բարդություններ՝ հայերեն և օտար բաղադրիչների միացմամբ. ինչպես՝ էլեկտրացանց, տանկաշինություն, վագոնավար, տրակտորահարմար

(տարածություն), ավտովերանորոգում, ավտովարորդ, սպորտհրապարակ, ֆուտբոլասեր և այլն։

3. Հայոց լեզուն սովետական շրջանում մեծ չափով հարստացավ կայուն բառակապակցություններով, որոնք ունեն անվանողական արժեք։ Այսպիսի բառակապակցությունները բառական ինքնուրույն միավորների չափ լեզվի հարստության արտահայտություն են, քանի որ դրանք ևս հասկացություն արտահայտող միավորներ են, անվանումներ։ Այդպիսիք են՝ տեխնիկական անվտանգություն, հեռանկարային պլան, երկարօրյա դասարան, պատանի բնասեր, արվեստի տասնօրյակ, հաշվողական կենտրոն, ջրածնային ռումբ և այլն։

Որ իրոք այս կարգի կայուն բառակապակցությունները լեզվի հարստության արտահայտություն են, իմաստային կողմով հարում են բարդություններին և արտահայտում համապատասխան հասկացություններ, երևում է թեկուզ և այն փաստից, որ դրանք հաճախ վերածվում են բարդ բառի և վերջիններս ունեն այն հաղորդակցական-անվանողական արժեքը, ինչ որ համապատասխան բառակապակցությունները։ Հմմտ. կոլեկտիվ տնտեսություն և կոլտնտեսություն, բեռնատար ավտոմեքենա և բեռնավտո, բարձրագույն ուսումնական հաստատություն և բուհ, վերջնական հաշիվ (հաշվարկ) ու վերջնահաշիվ և այլն։

4. Հայոց լեզվի զարգացման սովետական շրջանի բնորոշ կողմերից է բառապատճենումը, որը թեև հին երևույթ է, բայց շատ քիչ էր տարածված, ընդգրկում էր հատկապես նեղ մասնագիտական որոշ տերմիններ։ Վերջին տասնամյակներում այն մեծ չափերով տարածվեց, ընդգրկելով ոչ միայն գիտության ու տեխնիկայի բոլոր բնագավառները, այլև դուրս եկավ տերմինաբանության սահմաններից ու տարածվեց բառապաշարի այլ շերտերի վրա ևս։

Խոսքը վերաբերում է այն մեծ քանակությամբ բառերին, որոնք կազմվել են հիմնականում ռուսերենի համապատասխան բառերի իմաստի ու բառակազմական միջոցների պատճենումով. այսպես՝ ինքնակրթություն (самообразование), ինքնասպասարկում (самообслуживание), ինքնաթափ (самосвал), ռադիոսիրող (радиолюбитель), աշխօր (трудодень), հաստոցաշինություն (станкостроение), ինքնագիր (автограф) և այլն:

Ռուսերենի համապատասխան բառերի պատճենումով են կազմվել հետևյալ և նման բարդությունները, որոնք սովետական շրջանում շատ մեծ տարածում գտան. ագիտացիոն-մասսայական, գիտա-արեստական, դրամահրային, ժողովրդա-դեմոկրատական, ժողովրդատնտեսական և այլն:

Վերջապես գոյություն ունի պատճենման մի այլ տեսակ ևս, որի դեպքում բառակապակցության դիմաց կազմվում է համապատասխան բարդ բառ, ինչպես верительная грамота—հավատարմագիր, книжная палата—գրապալատ, подоходный налог—եկամտահարկ, судебная защита—դատապաշտպանություն և այլն:

Այլ լեզվի, տվյալ դեպքում ռուսերենի, բաղադրյալ բառերի պատճենումը հաճախ պատճառ է դառնում հայերենում բառակազմական որոշ համապատասխան միավորների առավել ակտիվացման կամ նույնիսկ առաջացման: Այսպես, ռուսերենի համապատասխան միավորների (после և до) ազդեցությամբ ու նմանությամբ հայերենի հետ և մինչ բառերը սկսել են գործածվել իբրև բարդության առաջին բաղադրիչ՝ ժամանակի իմաստով, դրվելով մի շարք ածականների վրա. ինչպես՝ հետհոկտեմբերյան (послеоктябрьский), հետպատերազմյան (послевоенный), մինչհոկտեմբերյան (дооктябрьский), մինչպատերազմյան (довоенный), մինչմարքսիստական, մինչկապիտալիստական և այլն:

5. Վերջին տասնամյակներում հայերենում առաջացած նոր բառերը համեմատելով այլ լեզուների և մասնավորապես ռուսերենի համապատասխան բառերի հետ նկատվում է մի նոր օրինաչափություն. դա տարբեր լեզուներում առաջացող բառերի իմաստային համապատասխանությունն է։

Որպեսզի հատկապես վերջին տասնամյակներում առաջացած այդ համապատասխանությունները ճիշտ հասկացվեն ու գնահատվեն, մի փոքր բացատրենք հայերեն և ռուսերեն բառերի անցյալից եկող իմաստային անհամապատասխանությունները։

Այսպես, ռուսերեն наклонение, բառին համարժեք մեկ բառ հայերենը չունի. դրա իմաստը կարելի է տալ հայերեն ա) թեքում և բ) եղանակ բառերով: Բայց այս դեպքում էլ պետք է վերցնել երկու բառերի ոչ բոլոր իմաստները, քանի որ հայերենում թեքում բառն ունի այնպիսի տարբեր իմաստներ, որոնք ռուսերենում արտահայտվում են՝ ա) перегиб, բ) флексия, գ) уклон բառերով: Այս դեռ բոլորը չէ. наклонение բառի մյուս հայերեն բացատրությունը՝ եղանակ բառը ևս իր ոչ բոլոր իմաստներով է համապատասխանում ռուսերեն այդ բառին, այլ միայն մեկով՝ քերականական իմաստով (բայի եղանակ), մինչդեռ դրանից բացի նա ունի նաև այլ իմաստներ՝ ա) погода, բ) способ, прием, գ) мотив: Այս երեք իմաստներից мотив-ը հայերենի եղանակ բառին համապատասխանում է մեկ հայտնի իմաստով (երաժշտական), որից բացի



այն արտահայտում է նաև պատճառաբանություն, շարժառիթ իմաստները և այլն, և այլն:

Սա չի նշանակում, թե մեր երկու լեզուների միջև անցյալում համապատասխանություններ չեն եղել։ Խոսքն այն մասին է, որ եթե անցյալից եկող քիչ համապատասխանությունները հիմնականում պատահական զուգադիպումներ են և փոքր չափով էլ ազդեցության հետևանք, ապա վերջին տասնամյակներում այդ համապատասխանությունները դարձել են ընդհանուր և բնորոշ երևույթ։

Բառ-հասկացությունների իմաստային ճշգրիտ համապատասխանությունները ոչ միշտ է, որ պատճենումով են պայմանավորվում։ Դրանք հաճախ ստեղծվում ու պահպանվում են նաև ոչ պատճենման, այլ ազատ թարգմանությունների, կազմությունների միջոցով։

Այդպիսի բառերից են՝ արտադրամաս (цех), հարցազրույց (интервью), հիվանդասենյակ (палата), օդանավակայան ((аэродром), օդաչու (летчик), հեծանիվ (велосипед) և այլն:

Հայերենի ու ռուսերենի (ինչպես և այլ լեզուների) բառերի իմաստային առավելագույն համապատասխանություններն ու ընդհանրությունները պայմանավորված են ընդհանուր սոցիալական հիմքով, ժողովուրդների և նրանց մշակույթի (հատկապես լեզվի) սերտ կապերով և, մանավանդ, ռուսաց լեզվի անմիջական ազդեցությամբ (թարգմանական գրականության, բանավոր խոսքի միջոցով) և այլն։

Սա, միաժամանակ, նշանակում է, որ լեզուների և մասնավորապես ռուսերենի ազդեցությունը միայն փոխառությամբ չի սահմանափակվում, այդ ազդեցության ձևերը վերջին տասնամյակում բազմազան են դարձել։

Սովետական շրջանում արևելահայ գրական լեզվի փոխառությունների հարցում յուրահատուկն այն է, որ դրանք կատարվում են ռուսերենից կամ ռուսերենի միջոցով։ Փոխատու լեզուն, իհարկե, այս կամ այն լեզվի բառապաշարի հարստացման արտաքին գործոն է, որը, սակայն, բառ-հասկացություններ անտարբեր մատակարարող չէ. իր հնչյունական, բառակազմական ու այլ յուրահատկություններով այն ազդում է փոխառու լեզվի վրա, և դա հիմնականում ու սկզբնապես արտահայտվում է փոխառյալ, իսկ հետո այս կամ այն չափով նաև ոչ փոխառյալ բառերում։

Վերոհիշյալից բխում է, որ լեզվի, տվյալ դեպքում հայոց լեզվի համար միևնույն չէ, թե որ լեզվից է կատարում փոխառություններ. այդ հանգամանքը, մանավանդ ժամանակի մեծ հատվածում, իր որոշ կնիքն է թողնում տվյալ լեզվի վրա։ Այնպես որ սովետական շրջանում արևելահայ գրական հայերենի՝ փոխառությունը ռուսերենից կատարելը և առհասարակ ռուսերենի ազդեցությունը ո՛չ միայն պետք է նշել որպես սոսկ պատմական իրողություն, այլև պետք է հաշվի առնել, որ այն կարևոր հետաքրքրություն է ներկայացնում նաև բուն լեզվական տեսակետից, ձև-կառուցվածքային առումով։

6. Սովետական շրջանում, մասնավորապես վերջին տասնամյակներում, բառապաշարի բուռն հարստացման պայմաններում, բնականաբար զգալի չափով օգտագործվում են նաև հին հայերենի ընձեռած հնարավորությունները, վերականգնվում են գրաբարյան շատ բառեր, վերաիմաստավորվում, հաճախ գործածվում են իբրև բաղադրյալ բառի կամ կապակցության բաղադրիչ։

Այսպես, հին հայերենում ունեինք հեռուստ բառը, որը նշանակում էր «հեռվից». սկսած հայերենի ամենավաղ շրջանից մինչև մոտ մեկ տասնամյակ առաջ այս բառով ոչ մի բաղադրյալ բառ չէր կազմվել: Բայց ահա վերջին տարիներին սովետական գիտության ու տեխնիկայի մի նոր ճյուղի առաջացման ու զարգացման շնորհիվ ստեղծվեցին նոր սարքեր, առաջացան դրանց հետ կապված նոր երևույթներ, որոնք անվանելու համար հայերենում կազմվեցին տասնյակ բաղադրյալ բառեր, նույն հին հեռուստ բառի և այլ բաղադրիչի միացմամբ: Այդ բառերի քանակը հասնում է տասնյակների. ինչպես՝ հեռուստաաշտարակ, հեռուստադիտող, հեռուստաընկալիչ, հեռուստախցիկ, հեռուստածրագիր, հեռուստակայան և այլն:

Հին հայերենին հատուկ մի շարք միավորներ, որոնք ինչ-որ չափով գործածվում էին աշխարհաբարի զարգացման նախասովետական շրջանում, հատկապես ակտիվացան վերջին տասնամյակներում՝ իմաստային նրբություններ, հարաբերություններ ճշգրտությամբ արտահայտելու անհրաժեշտությամբ։ Այսպես, հայտնի է, որ նախդիրների առատությունը գրաբարի հատկանշական կողմերից է (աշխարհաբարը ետադրություններով է հարուստ)։ Այնուամենայնիվ գրաբարյան որոշ նախդիրներ գրական ճանապարհով մտան աշխարհաբարի մեջ, ուր դրանց գործածությունը նվազագույնի էր հասնում։

Վերջին երեք տասնամյակներում հին նախդիրների գործածությունը նկատելիորեն ակտիվացել է. դրանք լայնորեն գործածվում են բազմաթիվ դարձվածքներում, կապակցություններում՝ իմաստային նրբություններ արտահայտելու համար։

Դա երևում է թեկուզև ի նախդիրի հետևյալ կիրառություններից՝ ի բարգավաճումն, ի բարօրություն, ի գիտություն, ի զարմանս, ի զեն, ի թիվս, ի լրումն, ի կատար ածել, ի հայտ բերել, ի մի բերել, ի մի ժողովել, ի նշանավորումն, ի չիք դարձնել, ի պաշտոնե, ի պա-

Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

# ՆՈՐ ԾԱՂԿՈՂ ՔԱՂԱՔ

ԵՐԵՎԱՆ—Թբիլիսի մայրուղով ճանապարհորդելիս Դիլիջանից հետո անցնում ես մի քանի գետակ, ապա Սպիտակ ջուրը, ևս մի կեռման, ու առջևդ բացվում է մի գեղատեսիլ գոգահովիտ: Նրա շուրջը թավուտով պատած բարձր սարեր են: Հյուսիս-արևմուտքից, արևմուտքից և հարավից ավելի քան երկու հազար մետր բարձրություն ունեցող լեռներից մինչև հովտի եզրերն են իջնում տերևախիտ անտառներ, որոնց փեշերը հարուստ են հոնի, վայրի խընձորի ու տանձի ծառերով ու բազմատեսակ հատապտուղների թփուտներով: Այստեղով են անցնում Աղստև ու Աղդան գետերը, որոնք սկիզբ են առնում հարյուրավոր սառնորակ աղբյուրներից և, զարնվելով իրենց ափերի ծառերի բներին, բազալտի ու մարմարի ժայռերին, հոսում են դեպի տափաստանը:

Այս չքնաղ վայրում է Իջևան քաղաքը, որի շինությունների մի մասը թափանցել է անտառ, տեղադրվել լեռների լանջերին և շրջապատված է հոնի ու կաղնու ծառերով: Որ կողմը նայում ես, բուսականություն է, քաղաքը առնված է կանաչ օղակի մեջ: Ոչ վաղ անցյալում Իջևանը կոչվել է Քարվանսարա: Նրա մի մասը՝ իր նեղ փողոցներով, իսկ տները՝ կղմինդրածածկ տանիքներով, փայտյա զարդաքանդակներով պատած պատշգամբներով, այսօր էլ ուշագրավ են:

Իջևանի հետ է կապված հայ ժողովրդի համար բախտորոշ էպոխայի սկիզբը՝ 1920 թվականի նոյեմբերի 29-ը: Այստեղ, Քարվանսարայում ստեղծված Հայաստանի հեղափոխական կոմիտեն դեկլարացիա է հրապարակել՝ Հայաստանը Սոցիալիստական Սովետական Հանրապետություն հռչակելու մասին: Սովետական իշխանության առաջին օրերին հեղկոմի զբաղեցրած տունն այժմ թանգարան է, ուր տեղ են գրավել համեստ, բայց արժեքավոր փաստաթղթեր, պրոֆեսիոնալ հեղափոխականների լուսանկարները, անձնական իրերը:

Ստենդներից մեկում փակցված են հեղկոմի նախագահ Ս. Կասյանի, հեղկոմի անդամներ՝ Ա. Նուրիջանյանի, Ա. Բեկզադյանի, Ի. Դովլաթյանի, Ա. Մռավյանի, Ս. Տեր-Գաբրիելյանի լուսանկարները:

Տասնութ-քսան թվականներին Իջևան—Շամշադինը Հայաստանի հեղափոխական շարժումների կենտրոններից մեկն էր: Թանգարանի հատուկ անկյունում մի շարք փաստաթղթերի ու վավերագրերի կողքին կան տեղի ակտիվ հեղափոխական գործիչներ՝ Ն. Մկրտումյանի, Հ. Յաղուբյանի, Ն. Շամախյանի, Կ. Այվազյանի, Շ. Ամիրխանյանի, Բ. Ներսիսյանի, Ա. Բերբերյանի, Հ. Հակոբյանի, կին կուսակցական աշխատողներ Մարգո Զոլախյանի, Վարդուշ Տարախչյանի և այլոց դիմանկարները:

Այցելուների վրա հուզիչ տպավորություն է թողնում հեռագրական այն ապարատը, որով հաղորդվել է Հայաստանի հեղկոմի առաջին հեռագիրը, հասցեագրված միջազգային պրոլետարիատի առաջնորդ Լենինին: Քաղաքային այգում (փոստի նախկին շենքի տեղը) կանգնեցված է մի կոթող, որը զբոսնողների ուշադրությունն է գրավում: Գրանիտե պատվանդանին դրված մարմարյա հսկայական զանգվածի վրա փորագրված են պատմական հեռագրի այս տողերը. «Թող հայտնի լինի համաշխարհային հեղափոխության առաջնորդին, որ Դիլիջանի ու Քարվանսարայի շրջանների գյուղացիները զայրացած դաշնակցական կառավարության հանցավոր քաղաքականությունից և երկրում խորացող անարխիայից, բարձրացրին ապստամբության դրոշը: Հայաստանի կոմունիստական կուսակցությունը իսկույն ևեթ ստանձնեց այդ տարերային շարժման ղեկավարությունը և ստեղծեց Հայաստանի հեղկոմ, Հայաստանը հայտարարելով Սոցիալիստական սովետական հանրապետություն...»: Հեղկոմը այդ նույն հեռագրով Հայաստանի բոլոր բանվորների ու գյուղացիների անունից խնդրում է սոցիալիստական մեծ Ռուսաստանի ժողկոմսովետին՝ օգնություն ցույց տալ երկրում կարգ ու կանոն հաստատելու համար:

Հին բոլշևիկ, պահեստի փոխգնդապետ Սուրեն Էդիլյանին է բախտ վիճակվել Վլադիմիր Իլյիչին հաղորդելու այս փաստաթուղթը:

Նույն մարմարի վրա փորագրված է Լենինի հեռագիրը (1920 թվականի դեկտեմբերի 2-ին), ուղղված Հայաստանի հեղկոմին, որով ողջունում է իմպերիալիզմի ճնշումից ազատագրված սովետական Հայաստանին:

Կարմիր բանակի օգնությամբ Հայաստանի աշխատավորներն իրենց ուսերից թոթափեցին շահագործողների լուծը, իշխանությունը վերցրին իրենց ձեռքը: Մեծ Հոկտեմբերի փրկարար արևը ծագեց նաև Հայաստանի լեռնաշխարհի վրա:

Սովետական կարգերի հաղթանակից հետո տարեցտարի ընդարձակվել է Իջևանն ու ձգվել դեպի լանջերը: Միայն հայրենական մեծ պատերազմից հետո ստեղծվել են վեց թաղամաս՝ իրենց բազմաթիվ փողոցներով: Աղստևի չորս և Աղդանի կամուրջները իրար են միացնում գետերի ձախ ու աջ ափերի թաղամասերը:

Ոչ վաղ անցյալում ոչ մի արդյունաբերական ձեռնարկություն չի եղել Իջևանում: Հին Քարվանսարան նշանավոր է եղել իր դարբիններով, պայտագործներով, հյուսներով ու կլայեկագործներով: Նրանք փոքրիկ արհեստանոցներում, ուր միայն ֆիզիկական աշխատանք է գործադրվել, պատրաստել ու վերանորոգել են բահ ու բրիչ, մանգաղ ու գերանդի, սայլ ու ջարջառ: Իսկ այսօր բոլորովին փոխվել է Իջևանի արդյունաբերական տեսքը: Այն դարձել է մեր հանրապետության բազմատեսակ արդյունաբերական ձեռնարկություններ ունեցող քաղաքներից մեկը, որի գործարաններն ու ֆաբրիկաները հագեցված են ժամանակակից տեխնիկայով ու սարքավորումներով:

Քաղաքում գործում են 13 արդյունաբերական ձեռնարկություն, որոնցում աշխատում են ավելի քան երկու հազար երկու հարյուր բանվոր, ինժեներ, տեխնիկ և ծառայող: Դրանց առաջնեկը՝ փայտամշակման կոմբինատը, կառուցվել է 1931 թվականին: Նրա առաջին արտադրամասը մի սղոցարան էր: Հետզհետե ընդարձակվել է այն, տեղադրվել են նոր սարքավորումներ, որոնք փայտյա մասեր են պատրաստել ավիացիոն արդյունաբերության և գյուղատնտեսական մեքենաների համար: Իսկ ներկայումս կոմբինատը հագեցված է ժամանակակից ավտոմատ մեքենաներով ու սարքերով: Այստեղ արտադրում են կաղնու և հաճարի պարկետներ, փայտի տաշեղներից՝ սալիկներ: Դանակահատ մեքենաները գերաններից տաշում են մեկ միլիմետր հաստությամբ ֆաներաներ, որոնք հղկում, փայլեցնում, ուղարկում են երկրի բոլոր կողմերը:

Փայտամշակման կոմբինատում աշխատում են ավելի քան 450 մարդ: Ձեռնարկությունն անցյալ տարի գերակատարել է պետական առաջադրանքները, հայրենիքին տվել մոտ երկու միլիոն չորս հարյուր հազար ռուբլու համախառն արտադրանք, ունեցել է 300 հազար ռուբլու շահույթ: Կոլեկտիվում գովեստով են խոսում աշխատանքի վետերան Ալիբեկ Դավթյանի մասին: Սևագործ բանվորից նա դարձել է դանակահատ ֆաներայի արտադրամասի հատոցի վարպետ, իր նվիրական ծառայությունների համար պարգևատրվել Լենինի շքանշանով: Կոմբինատի հիմնադիրներից մեկը եղել է Ժորա Աղասարյանը: Բարձրանալով կյանքի հատակից, նա քայլել է ընդհանուրի հետ, կատարելագործել իր գիտելիքները և շարքային բանվորից դարձել սղոցման ու վերամշակման արտադրամասի պետ, արտադրամաս, որի ռիթմիկ աշխատանքով են պայմանավորված կոմբինատի հաջողությունները:

Հնագույն բանվորների օրինակին են հետևում երիտասարդները: Գայանե Դավթյանի հատոցը օրական հատում է 1000—1100 քառակուսի մետր պարկետ: Գայանեն ոչ միայն աշխատան-

քում, այլև ընտանիքում, հասարակության մեջ, շրջապատում աչքի է ընկնում իր օրինակելի վարքով: Հերթափոխության վարպետ Արամայիս Օհանյանին հանդիպեցի ղանակահատ ֆաների մեքենայի մոտ: Հենակներին ամրացված չորսվակային կոճղերն ավտոմատ բարձրանում են միլիմետր առ միլիմետր, իսկ պողպատյա հսկայական դանակը ակնթարթում կտրում է կոճղափայտի վերին մասից մի բարակ շերտ ու նորից ետ դառնում: Եվ այսպես անընդհատ... Փայտի մեծ կտորը հետզհետե բարակում է, և հաստոցի առջև բարձրանում են ֆաների շերտերը: Օհանյանն իր հաստոցը հմտորեն վարելու շնորհիվ օրական 3400 քմ-ի փոխարեն արտադրում է 4500—5000 քմ ֆաներա:

Փայտամշակման կոմբինատից հետո մեկը մյուսի հետևից կառուցվել ու կառուցվում են նորանոր գործարաններ: Իջևանն արդեն ունի մեխանիկական, կարի և գարեջրի գործարաններ, ավտովերանորոգման արհեստանոց և շինարարական կազմակերպություններ:

ԻՋԵՎԱՆԻ գորգագործական կոմբինատը գործարկվել է 1963 թվականին: Այն հագեցված է առաջնակարգ տեխնիկայով ու նորագույն մեքենաներով: Արտադրության բոլոր պրոցեսները, սկսած բուրդ գզելուց մինչև գորգերի եզրերը հարդարելը, ավտոմատացված են: Կոմբինատի արտադրած գունագեղ, հայկական զարդանախշածածկ գորգերը պահանջարկ ունեն Սովետական Միության բոլոր հանրապետությունների շուկաներում:

Չորս տարի առաջ գորգագործական կոմբինատում աշխատում էին ընդամենը 300 մարդ, իսկ այսօր այդ կոլեկտիվում հաշվվում են ավելի քան 1300 բանվոր, ինժեներ, տեխնիկ և ծառայող: Այստեղ, հայերից բացի, կան նաև այլ ազգությունների ներկայացուցիչներ, որոնք, համերաշխ, իրենց ջանքերը գործադրում են հաղթող դուրս գալու մեծ Հոկտեմբերի պատվին ծավալված սոցիալիստական մրցությունում:

Երիտասարդ է կոմբինատը: Երիտասարդ է նրա սկզբնական կուսակցական կազմակերպությունը, որի քարտուղարն է Աշոտ Մկրտչյանը: Նա իջևանցի է, նախկին նակատային: Պատերազմի տարիներին իր ստորաբաժանումը բազմիցս գրոհի տանելով հակառակորդի դեմ, Մկրտչյանը հավատով էր լցված հաղթանակի նկատմամբ: Այսօր նա, բյուրոյի մյուս անդամների հետ, կազմակերպության ուշադրությունը կենտրոնացնում է պետական առաջադրանքները կատարելու վրա:

Իմ հարցին, թե քանի՞ կոմունիստ կա կազմակերպությունում, քարտուղարը պատասխանեց:

— Չորս տարի առաջ ընդամենը եղել է 15, իսկ այժմ՝ հարյուր:

— Ո՞ւմ հաշվին են համալրվում կուսշարքերը:

— Հիմնականում երիտասարդության: Թե՛ անցյալ տարի, թե՛ այս տարի կուսակցության մեջ ընդունվելու համար դիմում տվողների կեսից ավելին 20—22 տարեկան բանվորներ ու բանվորուհիներ են:

Կուսակցության շարքերն է գալիս երիտասարդությունը: Նոր սերունդը անհուն սիրով է լցված մեր կուսակցության նկատմամբ, հավատարիմ է նրա մարտական տրադիցիաներին ու հեղափոխական ոգուն: Բնական է, որ կոմբինատի կուսակցական կազմակերպության բյուրոն իր գործունեության հիմնական բնագավառներից մեկը համարել է նոր մարդու դաստիարակությունը, երիտասարդության մեջ սովետական հայրենասիրության, մարդկային վեհ հատկությունների պատվաստումը: Կուսբյուրոյի կազմակերպչական և քաղաքական աշխատանքն ուղղված է կոմունիստներին, ողջ կոլեկտիվին գաղափարապես կոփելու, նրանց արտադրական որակավորումը կատարելագործելու, ստեղծագործական նախաձեռնությունը գլխավորելու նպատակին: Դա տալիս է իր պտուղները: Կոլեկտիվի ամեն մի անդամ ձգտում է արագ յուրացնել արտադրությունում ներդրված տեխնիկան, այն օգտագործել լրիվ կարողությամբ, կատարելագործել տեխնոլոգիական պրոցեսները, խնայել հումքը և օժանդակ նյութերը:

Այստեղ գյուտարարներն ու ռացիոնալիզատորները մեծ դեր են խաղացել արտադրության մեջ եղած սարքավորումները կատարելագործելու ուղղությամբ: Կոմունիստ Վ. Գողեցիանի ռացիոնալիզատորական առաջարկությունը ներդնելու շնորհիվ մանվածքի թափթփուկից և այլ մնացուկներից նորից թել է մանվում, որը տարեկան տալիս է 80 հազար ռուբլու պայմանական տնտեսում: Լ. Թումանյանը և Պ. Գոլուբևը հնարել են գորգերի եզրերը կարող մեքենա, որը տարեկան մոտ վեց հազար ռուբլու պայմանական խնայողություն է տալիս:

Գորգագործական կոմբինատում կան շատ շատերը, որոնք արտադրություն են եկել որպես աշակերտներ, կամ սևագործ բանվորներ, իսկ այսօր գործում են իբրև որակյալ բանվորներ և հմտորեն վարում իրենց հաստոցները: Ջուլհակներ Վ. Դարբինյանի, Ս. Առաքելյանի, Ց. Վելիկանայի (չուվաշ) գործած գորգերն իրենց որակով, գեղեցկությամբ հիացնում են բոլորին:

— Ոսկե ձեռքեր ունի մանարանի արտադրամասի վերանորոգման բրիգադայի բրիգադավար կոմունիստ Խ. Մխիթարյանը,— ասում է ընկ. Մկրտչյանը:

Իրոք, վարպետն այդ գովասանքին արժանի է: Որտեղ մեքենան կամ հաստոցը խափանվում է, այնտեղ է Մխիթարյանը: Ձեռնումից հետո նա արագ սարքում է փչացած մասն ու գործի գցում մեքենան:

Ապարդյուն չեն անցնում գորգագործական կոմբինատի կուսակցական կազմակերպության և ողջ կոլեկտիվի գործադրած ջանքերն ու եռանդը: Անցյալ տարի ընդամենը մանվել է 510 տոննա թել և գործվել՝ 257 հազար քառակուսի մետր գորգ, իսկ այս տարվա միայն առաջին կիսամյակում մանվել է 344 տոննա թել և գործվել՝ 191 հազար ք. մետր գորգ, ստացվել 146 հազար ռուբլու շահույթ: Ձեռնարկության շահութաբերությունը մեծ չափով նպաստում է բանվորների ու բանվորուհիների աշխատավարձի ավելացմանը: Գործող արտադրամասում ջուլհակների միջին աշխատավարձը ամսական կազմում է 130, իսկ ներքավարպետներինը՝ 160 ռուբլի: Այստեղ շատ շատերը, որ աշխատանքում ցուցաբերում են ավելի բարեխղճություն և հմտորեն վարում հաստոցը, ամսական ստանում են 200—250 ռուբլի աշխատավարձ և նույնիսկ ավելին:

Նախահեղափոխական Քարվանսարա գյուղի փոխարեն այսօրվա Իջևան քաղաքի ամենաաչքի ընկնող նվաճումներից մեկը, որը մեծապես խթանում է նրա հետագա առավել զարգացմանը, բանվոր դասակարգի նոր, աշխատավոր բնակչության մեջ մեծ տեսակարար կշիռ կազմող ջոկատի առաջացումն է: Սրա շարքերում հիմնականում ընդգրկված են սովետական վառ արևի տակ բոյ քաշած, կոմունիստական կուսակցության վեհ իդեալներով դաստիարակված ու մեր մասսայական դպրոցներում և մասնագիտական ուսումնական հաստատություններում կրթված խանդավառ երիտասարդները: Նրանք աշխատանքային չտեսնված կորովով լեցուն ամենուրեք հայրենանվեր գործեր են կատարում:

Ամեն մի երիտասարդ բանվոր, ժողովրդական տնտեսության որ ճյուղում էլ աշխատելիս լինի, իր ամենօրյա գործունեության ընթացքում ցույց է տալիս հասարակական ու անձնական շահի զուգորդման վառ օրինակ: Ավելին, նրանց մեջ ցցուն կերպով նկատվում է համապետական շահի՝ ամեն ինչից վեր դասելու սովետական քաղաքացու հրաշալի հատկությունը, որը զարդարում ու վեր է բարձրացնում նրանցից ամեն մեկին: Զուր չէ, որ ոչ միայն շրջանում, այլև հանրապետությունում երբ խոսք է լինում առաջավոր բանվորների, մեր երկրի անքառամ զարդը կազմող նորարարների ու կոմունիստական աշխատանքի բարձր կոչման արժանացած մարդկանց մասին, նրանց շարքերում նշվում են նաև Իջևան քաղաքի արդյունաբերական ձեռնարկություններում աշխատող բանվորներից ու բանվորուհիներից, ինժեներներից ու տեխնիկներից շատերի անունը: Դա, ինչ խոսք, ոչ միայն պատիվ է բերում իրենց՝ բանվորներին ու ինժեներա-տեխնիկական աշխատողներին, այլև հարազատ քաղաքի բոլոր բնակիչներին, տեղական կուսակցական ու սովետական կազմակերպություններին: Չէ՛ որ նրանք իրենց ստեղծագործ աշխատանքով բարձրացնում են ծաղկող հայրենի քաղաքի փառքը, նրա պատիվը, որի համար, անկեղծորեն ասած, հավասար չափով ուրախանում ենք նաև մենք, հայ ժողովրդի զավակներս, որտեղ և որ բնագավառում էլ աշխատելիս լինենք:

Հաղթանակած Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության շնորհիվ ազատագրված Հայաստանի անբաժան մասը կազմող Իջևան քա-

ղաքի աշխատավորության նվաճած հաղթանակներից են նաև շահագործումից նրանց ազատագրումը, աշխատանքի, կրթության, բուժման, պետական իշխանության օրգաններում ընտրելու և ընտրվելու, ծերության կամ հաշմանդամության դեպքում կենսաթոշակ ստանալու, իրավահավասար կերպով երկրի կառավարմանը մասնակցելու իրավունքը:

Վայելելով ազատության պտուղները և վստահ լինելով իրենց վաղվա օրվա նկատմամբ, իջևանցիները ամենօրյա հերոսական աշխատանքով մասնակցում են կոմունիզմի կառուցմանը:

**Ի**ՋԵՎԱՆՈՒՄ արդյունաբերական օջախների ստեղծումը նպաստեց բնակչության արագ աճին և հնարավորություն տվեց լայնորեն ծավալելու քաղաքաշինությունը: Բնակարանային ծավալուն շինարարության հետ կառուցվել են կուլտուրական, առողջապահական հիմնարկությունների, ուսումնական հաստատությունների, բնակչությանն սպասարկող ձեռնարկությունների շենքեր: Միայն վերջին տասնամյակում պետության միջոցներով կառուցվել են 4—5 հարկանի 35 բնակելի տներ: Հանրային բնակարանային ֆոնդը հասել է հիսուն հազար քառակուսի մետրի: Քաղաքը մոտ 200 տարվա պատմություն ունի: Քաղաքային սովետի տվյալներով ներկայումս Իջևանում բնակվում են 13 հազար մարդ: Պետական տներում բնակվող բոլոր բնակիչները, իսկ անձնական բնակարան ունեցողների՝ 80 տոկոսն ունեն գազօջախներ, 50 տոկոսը՝ բաղնիքներ: Բնակչությանն սպասարկող ձեռնարկություններում աշխատում են մոտ 600 մարդ:

Սփյուռքից հայրենիք վերադարձած բազմաթիվ հայ ընտանիքներ հանգրվանեցին Իջևանում: Օտար վայրերում զուրկ լինելով ունեցվածքից ու աշխատանքից, նրանցից շատերը չեն կարողացել ընտանիք կազմել: Թ. Մաչարյանը կյանքի քառասուն տարիները անցկացրել է Եգիպտոսում, եղել է ֆուխարա ֆահլա, չի ունեցել ընտանիք: Միայն հայրենի հողում, կյանքի հինգերորդ տասնամյակը թևակոխելուց հետո, նա ամուսնացավ, ընտանիք կազմեց, երեխաներ ունեցավ: Ա. և Ձ. Մովսիսյանները եկել են Իրանից: Երկու եղբայրներն էլ աշխատում են մեխանիկական վերանորոգման արհեստանոցում որպես վարպետներ և մեծ հարգանք են վայելում ոչ միայն Իջևանի շրջանում, այլև մերձակա վայրերում:

Տարեցտարի փոխվում է քաղաքի տեսքը: Բացվում են նոր փողոցներ, կառուցվում 4—5 հարկանի տներ: Բոլորից ուշագրավը առափնյա փողոցներն են, որոնք ձգվում են Աղստև գետի աջ ու ձախ ափերին: Այդ փողոցների երկու կողմերը եզերում են նոճիները, սոճիները ու եղևնիները, որոնք գեղեցիկ տեսք են տալիս քաղաքին: Եվ երբ ուշ երեկոյան քայլում ես Աղստևի ափերով, թվում է թե ամառանոցային ավանում ես:

Սիրում են իջևանցիներն իրենց քաղաքը և ամեն ինչ անում են այն գեղեցկացնելու, ուշագրավ դարձնելու համար: Այստեղ հիշարժան մի շարք վայրեր կան: Հայրենական մեծ պատերազմում զոհված մարտիկների հիշատակին քաղաքային այգում կառուցված կոթողի վրա զօր ու գիշեր վառվում է հավերժական կրակը: Փողոցներից մեկում բարձրացված է բոցաշունչ հեղափոխական, հայ ժողովրդի ազատության համար ակտիվ մարտնչողներից մեկի՝ Ե. Մկրտումյանի հուշարձանը: Հմայիչ են ծառուղիները, քաղաքային այգու լճակը և գողտրիկ հրապարակները:

— Եվ այս բոլորն ստեղծվել են, կառուցվել հասարակական միջոցներով,— ասում է կուսշրջկոմի քարտուղար ընկ. Վ. Ղալումյանը:

Իջևանի առանձնահատկությունը բնորոշող երևույթներից մեկը դենդրոլոգիական (ծառատեսակների հավաքածուի) այգին է: Այստեղ մենք եղանք քաղաքային սովետի աշխատակից ընկ. Ա. Դանիելյանի հետ: Այգին նոր է կազմակերպված, ընդամենը մի քանի տարվա պատմություն ունի:

— Անցյալում Աղստևի հունն է եղել այս վայրը,— ասում է տնտեսության ղեկավար Լ. Սայադյանը,— իսկ այժմ աճեցնում ենք մի քանի հարյուր տեսակի ծառեր, թփուտներ ու ծաղիկներ: Դրանք մերձարևադարձային, անտառային ու դեկորատիվ տեսակներ են:

Նայում ես շուրջդ և հիանում: Գետնից արդեն բավականին բարձրացել են նոճիների ութ, սոճիների տասներկու տեսակներ, որոնցից մի տեսակը, արևի շողերի տակ պսպղում է ինչպես արծաթը: Այստեղ կան մշտադալար կաղնիների վեց, սումախի՝ չորս, խուրմայի՝ չորս, դափնեկեռասի երեք տեսակներ, ազնիվ դափնու, ձիթենու, մայրիների (կեդրա) տնկիներ: Այս բոլորն աճեցնում են Իջևանի շրջանում և նման կլիմայական պայմաններ ունեցող վայրերում տարածելու համար:

**Դ**ԵՆԴՐՈԼՈԳԻԱԿԱՆ այգուց մի քիչ բարձր, գրեթե անտառի մեջ է տուրիստական բազայի շենքը, ուր երկու-երեք օրով հանգստանում են հեռավոր վայրերից եկած տուրիստները: Հիանալով շրջապատի բնաշխարհով, նրանք գոհունակությամբ են խոսում այն ջերմ ընդունելության մասին, որ ցույց են տալիս տուրբազայի աշխատակիցները: Տուրիստները սիրով են շրջում քաղաքի հիշարժան վայրերում ու արդյունաբերական ձեռնարկություններում, լողանում Աղստև գետում, մագլցում լեռների լանջերն ու հանգստանում անտառի ստվերներում: Լենինգրադցի ինժեներ Ա. Տուբսկայան իր հույզերը Իջևանի մասին արտահայտել է բանաստեղծական տողերով.

**...Красив он, ночью Иджеван!**
**С веселой лентой фонарей...**

**Ս**ՈՎԵՏԱԿԱՆ իշխանության տարիներին մեծ գործ է կատարված Իջևանում կրթության, կուլտուրայի և առողջապահության մարզերում: Հրապարակի վրա է ժողկրթբաժնի վարիչ Ս. Ճաղարյանի՝ Դ պ ր ո ց ի ո ւ ղ ի ն գրքույկը: Առաջին դպրոցը Քարվանսարայում հիմնվել է 100 տարի առաջ: Այն մշտական շենք չի ունեցել, նշում է Ճաղարյանը, որի հետևանքով «..աշակերտները հաճախ տեղափոխվել են զանազան տեղեր, խոնավ, կիսախավար ներքնատներ կամ գոմեր»: Դպրոցի միակ ուսուցչի վարձատրության, սննդի ու բնակարանի հոգսերը ընկած էր գյուղի համայնքի վրա: Վաթսուն տարի անց՝ 1926/1927 ուսումնական տարում Իջևանում սովորել են ընդամենը 250 աշակերտ: Իսկ այժմ գործում են երկու հայկական, մեկ ռուսական միջնակարգ դպրոցներ, գիշերօթիկ դպրոց իր բոլոր հարմարություններով, բաներիտ, մանկական սպորտի, հեռակա միջնակարգ դպրոցներ: Ստեղծված է թեթև արդյունաբերության տեխնիկում, ուր կադրեր են պատրաստվում գորգագործական կոմբինատի համար: Մոտ 150 դասատուներ կան, որոնք իրենց ջանքերն ու գիտելիքները ներդնում են մատաղ սերնդի դաստիարակության գործում: 1967—1968 ուսումնական տարում միայն Իջևան քաղաքում սովորում են մոտ 4300 պատանիներ ու աղջիկներ, որը գրեթե երկու անգամ գերազանցում է քաղաքի 1922 թվականի բնակչության թիվը: Քաղաքում գործում են հինգ մանկամսուր և մանկապարտեզ:

Տնտեսական շինարարության բնագավառում կատարված մեծ քայլերը նպաստել են բնակչությանը սպասարկող կուլտուրական և կենցաղային հաստատությունների զարգացմանը: Քաղաքի կուլտուրայի տանը կից ստեղծվել են երգի ու պարի, էստրադային ինքնագործ խմբեր: Իջևանն ունի իր ժողովրդական թատրոնը, որը ղեկավարում է երիտասարդ, շնորհալի արտիստ Ա. Հովհաննիսյանը: Այս ստեղծագործական կոլեկտիվը ներկայացումներ է տվել ոչ միայն տեղում, այլև հանրապետության բազմաթիվ քաղաքներում ու գյուղերում: Այն հանդես է եկել նաև Մոսկվայի գեղարվեստական թատրոնի բեմահարթակում և արժանացել մայրաքաղաքի խստապահանջ թատերասերների ծափահարություններին: Իջևանում բանվորներն ու ծառայողները մասնակցելով ինքնագործ խմբերին՝ զարգացնում են իրենց ձիրքն ու գեղարվեստական ճաշակը:

Ավելի քան քսանհինգ հազար գրքեր կան քաղաքային գրադարանում, որն իր ֆիլիալն ունի գորգագործական կոմբինատում: Կա նաև մանկական գրադարան, որից օգտվում են հարյուրավոր երեխաներ: Քաղաքի երկու կինոթատրոնները միշտ լեփ-լեցուն են հանդիսատեսներով:

Այս է Իջևանն այսօր: Բայց ավելի գեղեցիկ ու վառ է նրա ապագան: Մոտակա տարիներին կկառուցվեն նոր արտադրամասեր ու արդյունաբերական ձեռնարկություններ: Այստեղ կհասնի Աղստաֆա—Իջևան երկաթգիծը, որը կխթանի քաղաքի բուռն վերելքին:

կկառուցվեն 4—5 հարկանի հանրային բազմաթիվ նոր բնակելի շենքեր: Գործագործական կոմբինատը կունենա իր կուլտուրայի պալատը՝ 800 տեղանոց դահլիճով: Լայն հեռանկարներ են բացվում տուրիստական մեծ խմբեր ընդունելու համար: Աղստևի ափին կկառուցվի 8—9 հարկանի հյուրանոց, ավելի քան երկու հարյուր առանձին համարներով: Հյուրանոցը կունենա իր ռեստորանը, սրճարանը և կապի հանգույցը: Քաղաքի արևմտյան մասում, Աղստևի վրա կկառուցվի երեսուն հեկտար մակերես ունեցող լիճ: Նախատեսվում է նրա ափերին, անտառների բացատներում, կառուցել հանգստյան տներ, պանսիոնատներ, ռեստորաններ, կաֆեներ: Այն հանգստի ու զվարճալիքի գեղատեսիլ վայր կդառնա ոչ միայն իջևանցիների, այլև դրսից եկող հարյուրավոր ու հազարավոր ուղևորների համար:

Սովետական Միությունը գնում է դեպի մեծ տոնը: Ի պատիվ Հոկտեմբերյան հեղափոխության 50-ամյակի, ամբողջ երկրում ծավալված սոցիալիստական մրցությանը ակտիվ մասնակցում են նաև իջևանցիները, որոնց վեհ նպատակն է՝ ավելի զարգացնել ու գեղեցկացնել իրենց քաղաքը: Աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը գլխավորում են սկզբնական կուսակցական կազմակերպությունները, որոնց թիվը հասնում է 39-ի: Կուսակցական կազմակերպությունների գործունեությունն ուղղված է կոմունիստներին և անկուսակցականներին բարձր գաղափարայնության և հայրենասիրության ոգով դաստիարակելու նպատակին: Նրանք իրենց բոլոր ջանքերը գործադրում են հաջողությամբ իրագործելու հնգամյա պլանի առաջադրանքները:



*— ՍՍՀ Միության ստեղծման ժամանակից (1922 թվական) սկսած ազգային պետականություն ունեցող միավորների թիվը զգալիորեն աճել է: 1923 թվականին կար միութենական 4 հանրապետություն, 13 ավտոնոմ հանրապետություն, 16 ավտոնոմ մարզ, իսկ 1967 թվականին՝ միութենական հանրապետությունների թիվը հասել է 15-ի, ավտոնոմ հանրապետություններինը՝ 20-ի, ավտոնոմ մարզերինը՝ 8-ի և ազգային օկրուգներինը՝ 10-ի:*

*— Եթե նախահեղափոխական Ռուսաստանը 1913 թվականին ձուլում էր պողպատի համաշխարհային արտադրանքի 6,5 տոկոսը, իսկ 1928 թվականին ՍՍՀՄ-ի բաժինը կազմում էր ընդամենը 3,9 տոկոս, ապա 1966 թվականին մենք արտադրում էինք պողպատի համաշխարհային ձուլվածքի ավելի քան 20 տոկոսը: Նախահեղափոխական Ռուսաստանը պողպատի ձուլման ասպարեզում նշանակալից չափով ետ էր մնում Անգլիայից, Ֆրանսիայից, ԳՖՀ-ից և Իտալիայից՝ առանձին-առանձին վերցրած: 1966 թվականին ՍՍՀՄ-ում պողպատի ձուլումը շատ չափով գերազանցում էր պողպատի արտադրությանը Անգլիայում, Ֆրանսիայում, ԳՖՀ-ում և Իտալիայում՝ միասին վերցրած: 1967 թվականին սովետական մետալուրգիան հասավ այնպիսի աստիճանի, որ տարեկան թողարկում է ավելի քան 100 միլիոն տոննա պողպատ:*

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԿԱՐԼ ՄԱՐՔՍԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԳԼՈՒԽ-ԳՈՐԾՈՑԸ

(Կապիտալի առաջին հատորի հրատարակման հարյուրամյակի առթիվ)

Ս. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

*Այս տարվա սեպտեմբերին լրացավ հարյուր տարին այն օրից, երբ 1867 թվականին Համբուրգում գերմաներեն լույս տեսավ գիտական կոմունիզմի հիմնադիր Կարլ Մարքսի հանճարեղ երկի՝* Կապիտալ*-ի առաջին հատորը: Նրա երևան գալը դարակազմիկ իրադարձություն էր մարդկային հասարակության կյանքում: Այն մեր դարաշրջանի գլխավոր ու հիմնական սոցիալ-տնտեսական, բառիս բուն իմաստով, հանրագիտական բնույթի աշխատություն է, որն իր թարմությունն ու մարտական կենսունակությունը պահպանում է ցայսօր:*




*Քննադատորեն յուրացնելով այն ամեն առաջավորը, ինչ ստեղծել էր մարդկային միտքը ի դեմս անգլիական դասական քաղաքատնտեսության, գերմանական փիլիսոփայության ու ֆրանսիական սոցիալիզմի, Մարքսը ստեղծեց իր նախորդներից տարբեր մի նոր ուսմունք՝ գիտական կոմունիզմի ուսմունքը: Մարքսիզմի երևան գալը Ռ. Լյուքսեմբուրգը նմանեցնում էր այն մանկան ծննդին, որը գլուխ է գալիս մոր մահվան գնով: Հայտնագործելով պատմության մատերիալիստական ըմբռնումը և մշակելով հավելյալ արժեքի ուսմունքը, Մարքսը պատասխան տվեց այն հարցերին, որոնք առաջադրել էր մարդկության առաջավոր միտքը:*

### 1

Կապիտալ*-ը մատերիալիստական դիալեկտիկայի առավել խոր, բազմակողմանի հաստատումն ու կիրառումն է, որի առաջին հատորը մարքսյան*

հանճարի շուրջ քսանհինգ տարվա քրտնաջան աշխատանքի արդյունքն է։ Նա ուսումնասիրել ու յուրացրել է հսկայական փաստական նյութ հասարակական-տնտեսական ֆորմացիաների ու, հատկապես, կապիտալիզմի մասին, վերլուծել նրա զարգացման տարբեր ձևերը, հետազոտել նրանց ներքին կապը, ինչպես և հսկայական գրականություն, և նոր միայն անցել իր հետազոտման արդյունքների շարադրմանը։

Մարքսի հետազոտության առարկան Կապիտալ-ում, ինչպես ինքն է ասում, «արտադրության կապիտալիստական եղանակն է և նրան համապատասխանող՝ արտադրության և փոխանակության հարաբերությունները» (Կապիտալ, հ. I, էջ 4)։ Ըստ Մարքսի ուսմունքի գլխավորն ու որոշիչը հասարակական այն հարաբերություններն են, որի մեջ մարդիկ մտնում են արտադրության պրոցեսում։ Աշխատանքի արդյունքը դեռևս նախնադարյան համայնական հասարակարգում, երբ անասնապահական ցեղերը բաժանվում են երկրագործական ցեղերից, ապրանքային ձև է ընդունում և հետագայում իշխող ու ընդհանրական բնույթ ստանում կապիտալիստական արտադրաեղանակի պայմաններում, երբ ամեն ինչ, այդ թվում և աշխատուժը, ապրանք է դառնում։ Մարքսը դիտում է ապրանքը որպես աշխատանքի արդյունքի սոցիալական ձև, որպես բուրժուական հասարակության հարստության տնտեսական բջիջը, որից և սկսում է կապիտալիզմի հետազոտությունը։ Նա ապրանքի մեջ բացահայտում է բուրժուական հասարակության բոլոր հակասությունների սաղմերը և, հետամտելով դրանց օբյեկտիվ զարգացումը, հանգում կապիտալիզմի անխուսափելի կործանման գիտական հիմնավորմանը։

Մարքսը գիտության մեջ առաջին անգամ պարզեց արժեստեղծ աշխատանքի էությունը, ապրանքների մեջ ներկայացված աշխատանքի երկակի բնույթը, այն, որ աշխատանքը օգտակար, որոշակի արտադրողական գործունեության կամ կոնկրետ աշխատանքի հատկությամբ սպառողական արժեք է ստեղծում, իսկ տարբերազուրկ, մարդկային միանման կամ աբստրակտ աշխատանքի հատկությամբ՝ արժեք։ Այս հայտնագործմամբ Մարքսը ստեղծեց արժեքի աշխատանքային ավարտուն, մինչև վերջ հետևողական գիտական տեսություն, որն անկարող եղավ կատարել բուրժուական մտածողությամբ սահմանափակված անգլիական դասական քաղաքատնտեսությունը, որը դրել է արժեքի աշխատանքային տեսության սկիզբը։

Ապրանքների մեջ ներկայացված աշխատանքի երկակի բնույթի հայտնագործումը այն մեկնակետն է, որից կախված էին քաղաքատնտեսության ըմբռնումը, պրոլետարիատի քաղաքատնտեսության ստեղծումը։ Այդ անհրաժեշտ էր հավելյալ արժեքի մարքսյան տեսությունն ստեղծելու համար, տեսություն, որը Մարքսի տնտեսագիտական ուսմունքի կենտրոնակետն է, կամ ինչպես Լենինն է բնորոշում, նրա ուսմունքի անկյունաքարը։ Իմանալու համար թե ինչ բան է հավելյալ արժեքը, հարկավոր էր նախ իմանալ, թե ինչ բան է արժեքը։ Էնգելսին ուղղված նամակում Մարքսը գրում էր. «...իմ գրքում լավագույնն է՝ 1) արդեն առաջին գլխում ընդգծված՝ աշխատանքի երկակի բնույթը... (դրա վրա է հիմնվում փաստերի ամբողջ ըմբռնումը). 2) հավելյալ արժեքի հետազոտությունը անկախ նրա առանձնահատուկ ձևերից՝ շահույթից, տոկոսից, հողային ռենտայից և այլն» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Նամակներ Կապիտալ-ի մասին, Ե., 1954, էջ 152)։

Մինչմարքսյան քաղաքատնտեսությունը չկարողացավ պարզել ոչ-արժեստեղծ աշխատանքի էությունը, թե ինչպիսի աշխատանքը, ինչու և ինչպես



է ստեղծում արժեք, և ոչ էլ հավելյալ արժեքի էությունը, չկարողացավ տարբերել աշխատուժն աշխատանքից և կանգ առավ անլուծելի հակասությունների ու դժվարությունների առաջ, չկարողանալով բացահայտել կապիտալիստական հարստացման աղբյուրը։

Մարքսն ապացուցել է, որ ամբողջ հասարակական հարստությունը, շահագործող բոլոր դասակարգերի եկամուտների աղբյուրը վարձու աշխատանքն է, բանվոր դասակարգի շահագործումը։ Պատմական փաստական նյութի հարուստ պատկերազարդմամբ նա վեր է հանել կապիտալիստական շահագործման մեխանիզմը, հավելյալ արժեքի արտադրությունը մեծացնելու եղանակները։ Գիտության մեջ առաջին անգամ տարբերելով աշխատուժն աշխատանքից, Մարքսը ցույց տվեց, որ կապիտալիզմի պայմաններում պրոլետարիատը ազատ լինելով անձնական կախումից և արտադրության միջոցներից, հարկադրված է որպես ապրանք վաճառքի հանելու իր աշխատուժը, աշխատունակությունը։ Սակայն աշխատուժի արժեքը և աշխատուժի սպառման պրոցեսում ստեղծված արժեքը տարբեր մեծություններ են։ Հենց այս մեծությունների՝ նոր ստեղծված արժեքի և աշխատուժի արժեքի միջև եղած տարբերությունն է կազմում հավելյալ արժեքը, որ ստեղծվում է աշխատօրվա երկրորդ մասում՝ հավելյալ աշխատաժամանակում։

Հավելյալ արժեքն աշխատուժի լրիվ արժեքից ավելի արժեք է, որն անվարձահատույց յուրացնում է կապիտալիստը՝ գնված ապրանքի սպառողական արժեքն օգտագործելու իրավունքով։ Հավելյալ արժեքի միակ աղբյուրը պրոլետարիատի հավելյալ աշխատանքն է։ Հավելյալ արժեքի արտադրությունն ու յուրացումը կապիտալիստական արտադրության նպատակն են ու շարժիչ մոտիվը, կապիտալիզմի հիմնական տնտեսական օրենքը։

Հավելյալ աշխատանքը կապիտալիզմի գյուտը չէ։ Դա աշխատուժի առանձնահատկությունն է արտադրողական ուժերի զարգացման որոշ աստիճանից սկսած։ Ստրկատիրական ու ֆեոդալական հասարակարգերում հավելյալ աշխատանքը սահմանափակվում էր սպառողական արժեքների համար որոշված պահանջմունքների բավարարման չափով։ Այլ է բանը կապիտալիզմի ժամանակ, ուր աշխատանքի արդյունքը նախանշված է վաճառքի համար, ստեղծվում է հավելյալ արժեքի անհագ ծարավ։ Աճում են կապիտալիստների յուրացրած հավելյալ արժեքի մասսան, բանվոր դասակարգի շահագործման աստիճանը, գնալով նվազում է անհրաժեշտ աշխատաժամանակի բաժինը աշխատօրվա տևողության մեջ, կազմելով երբեմն մեկ քառորդից էլ պակաս մասը։

Կապիտալիստական շահագործման առանձնահատկությունն այն է, որ ամբողջ աշխատօրը թվում է որպես վճարված ժամանակ, ստեղծվում է այնպիսի պատրանք, որ բանվորը վաճառում է կապիտալիստին իր աշխատանքը, ստանում աշխատանքի լրիվ վարձը։ Բուրժուական քաղաքատնտեսությունը չկարողացավ այս երևութականության տակ բացահայտել բուն էությունը։ Միայն Մարքսն ապացուցեց, որ աշխատավարձն աշխատուժ ապրանքի արժեքի կամ գնի փոխարկված ձևն է, բացահայտեց դրա դասակարգային էությունը, որն անմիջապես բխում է հավելյալ արժեքի ուսմունքից։

Քննարկելով կապիտալիստական արտադրությունն իր շարունակականության մեջ որպես վերարտադրության պրոցես, Մարքսը ցույց տվեց, որ բանվորները հենց իրենք են ստեղծում այն աշխատաֆոնդը, որից նրանք վարձատրվում են։ «Փոփոխուն կապիտալը կորցնում է կապիտալիստի սեփական

ֆոնդից ավանսավորված արժեքի նշանակությունը» (Կապիտալ, հատ. 1, էջ 596)։

Ոչ միայն հավելյալ արժեքն է առաջանում կապիտալից, այլև կապիտալն է ծագում հավելյալ արժեքից։ Ամեն տարի ստեղծված հավելյալ արժեքի մի մասը վեր է ածվում գործող կապիտալի։ Ուրեմն, անկախ այն բանից թե ինչ ծագում է ունեցել սկզբնապես կանխատրված դրամագլուխը, միևնույն է, ամեն մի կապիտալ ինչ-որ ժամանակից հետո վերածվում է կուտակված հավելյալ արժեքի։ Այս գիտական հիմնավորումն է այն բանի, որ կապիտալիստական հասարակության հարստությունն ստեղծված է բանվոր դասակարգի աշխատանքով, ուրեմն և նրան պետք է պատկանի։

Կապիտալիզմի զարգացման ընթացքում գնալով ավելի ու ավելի է մեծանում արտադրության հանրայնացումը, մինչդեռ աճող հարստությունն ավելի մեծ չափերով է կուտակվում փոքրաթիվ մարդկանց ձեռքում, խորանում է կապիտալիզմի հիմնական հակասությունը արտադրության հանրային բնույթի և արտադրարդյունքների մասնավոր կապիտալիստական յուրացման ձևի միջև, սրվում են անհաշտելի հակասություններն աշխատանքի և կապիտալի միջև, որոնք անխուսափելի են դարձնում կապիտալիզմի կործանումը և պրոլետարիատի սոցիալիստական հեղափոխության հաղթանակը։ «Արտադրության միջոցների կենտրոնացումն ու աշխատանքի հանրայնացումը հասնում են այնպիսի կետի, երբ նրանք անհամատեղելի են դառնում իրենց կապիտալիստական պատյանի հետ։ Վերջինը պայթում է։ Հնչում է կապիտալիստական մասնավոր սեփականության ժամը։ Սեփականազրկողներին սեփականազրկում են» (Կապիտալ, հ. I, էջ 796)։

Այսպիսին է Մարքսի գիտականորեն հիմնավորած դատավճիռը պատմականորեն դատապարտված բուրժուական հասարակության նկատմամբ։

Այս ամենի գիտական գրանիտյա պատվանդանը հավելյալ արժեքի ուսմունքն է, որը, ինչպես Էնգելսն է գրել, «պարզ երկնքից ճայթող կայծակի տպավորություն արեց և այն էլ բոլոր քաղաքակիրթ երկրներում», «կոչված էր ամբողջ տնտեսագիտությունը հեղաշրջելու և... բանալի էր տալիս կապիտալիստական բովանդակ արտադրությունը հասկանալու համար» (Կապիտալ, հ. II, էջ XXI և XXIII)։

Հասարակական կյանքի տարբեր բնագավառներից առանձնացնելով տնտեսականը, հասարակական բոլոր հարաբերություններից՝ արտադրական հարաբերությունները, որպես մնացած բոլոր հարաբերությունները որոշող հիմնականն ու նախասկզբնականը, Մարքսը հանգեց այն եզրակացության, որ հասարակության անատոմիան պետք է որոնել քաղաքատնտեսության մեջ, որը հենց գործ ունի նյութական բարիքների արտադրությունն ու բաշխումը կառավարող օրենքների հետ։ Սա կարևոր մի հայտնագործում էր, մի հիպոթեզ, որն առաջադրել էր Մարքսը դեռևս անցյալ դարի քառասնական թվականներին, բայց այնպիսի հիպոթեզ, որն առաջին անգամ հնարավորություն էր տալիս խիստ գիտական հիմքերի վրա դնելու պատմական ու հասարակական երևույթների ուսումնասիրությունը։ Նյութական հասարակական օբյեկտիվ հարաբերությունների ուսումնասիրությունը հնարավոր դարձրեց նկատել դրանց կրկնելիությունն ու ճշտությունը և տարբեր երկրների կարգերը ընդհանրացնել մեկ հիմնական՝ հասարակական-տնտեսական ֆորմացիայի հասկացության մեջ, որն ընդգրկում է արտադրության եղանակը և նրանով պայմանավորված քաղաքական ու իրավական վերնաշենքը, հասարակական



գիտակցության ձևերը։ Հասարակական հարաբերություններից առանձնացնելով հիմնականը՝ արտադրական հարաբերությունները, որոնք համապատասխանում են արտադրողական ուժերի մակարդակին, և բացահայտելով արտադրական հարաբերությունների ու արտադրողական ուժերի դիալեկտիկան, Մարքսը ցույց է տվել հասարակական-տնտեսական ֆորմացիաների զարգացումը որպես բնապատմական պրոցես։

Կապիտալ-ի լույս տեսնելու ժամանակվանից «պատմության մատերիալիստական ըմբռնումը արդեն հիպոթեզ չէ, այլ գիտականորեն ապացուցված դրույթ» — ասում է Լենինը (Երկեր, հ. I, էջ 161)։ Կապիտալ-ի լույս տեսնելուց հետո քաոսն ու կամայականությունը, որոնք մինչ այդ տիրում էին պատմության ու քաղաքականության մասին եղած հայացքներում, փոխարինվեցին զարմանալի ամբողջական ու ամրակուռ գիտական տեսությամբ, որը բացատրում է, թե ինչու և ինչպես է տեղի ունենում անցումը մեկ ֆորմացիայից մյուսին։ Պատմության մատերիալիստական ըմբռնումը և հավելյալ արժեքի ուսմունքը սոցիալիզմը դարձրին գիտություն։

Որքան ավելի էր խորանում աշխատանքի և կապիտալի հակադրությունը, այնքան ավելի ակներև էր դառնում, որ ուտոպիական սոցիալիզմը «հակառակ հարաբերական է պատմական զարգացմանը» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Կոմունիստական պարտիայի մանիֆեստը, Ե., 1960, էջ 76)։

Կապիտալ-ը Կ. Մարքսի կյանքի գործն է, որին նա զոհաբերել է ամեն ինչ։ Իր համախոհ Զիգֆրիդ Մայերին Մարքսը գրել է. «...Ինչո՞ւ ես Ձեզ չեմ պատասխանել։ Որովհետև ամբողջ ժամանակ գերեզմանիս եզրին էի գտնըվում։ Ուստի ես պետք է օգտագործեի յուրաքանչյուր մոմենտ, երբ ի վիճակի էի լինում աշխատելու, որպեսզի ավարտեի երկս, որին զոհ եմ բերել առողջությունս, կյանքիս երջանկությունը և ընտանիքս։ Հույս ունեմ, որ այս բացատրությունը բավական է։ Ես ծիծաղում եմ այսպես կոչված «պրակտիկ» մարդկանց և նրանց գերիմաստության վրա։ Եթե ուզում ես անասուն լինել, կարելի է, իհարկե կռնակ դարձնել մարդկության տանջանքներին և հոգալ միայն սեփական կաշու մասին։ Բայց ես ինձ իսկապես ոչ-պրակտիկ կհամարեի, եթե շունչս փչեի առանց գիրքս ավարտելու՝ թեկուզ և ձեռագիրը» (Նամակներ Կապիտալի մասին, էջ 139—140)։

Եվ, այնուամենայնիվ, այդ զոհաբերությունների պայմաններում էլ Կապիտալ-ի առաջին հատորը լույս չէր տեսնի, եթե չլիներ Էնգելսի անշահախնդիր օգնությունը, որը հենց դրա համար հարկադրված էր զբաղվել «շնային առևտրով» և շարունակել դա Կապիտալ-ը լույս տեսնելուց հետո մի քանի տարի ևս։

Կապիտալ-ի վերջին մամուլի սրբագրությունն ավարտելուց հետո, 1867 թ. օգոստոսի 16-ի գիշերվա ժամը 2-ին, երախտապարտ Մարքսը գրում է Էնգելսին. «Այսպես ուրեմն, այս հատորը պատրաստ է։ Միայն ՔԵԶ եմ պարտական, որ այդ հնարավոր եղավ։ Առանց քո անձնազոհության իմ նկատմամբ՝ ես ոչ մի կերպ չէի կարող կատարել երեք հատորի վրա դրված հսկայական աշխատանքը։ Գրկում եմ քեզ երախտապարտությամբ լի» (Նամակներ Կապիտալի մասին, էջ 150)։

## 2

Այն ժամանակից ի վեր, երբ երկրագնդի վրա գոյություն ունեն կապիտալիստներն ու բանվորները, դեռևս լույս չի տեսել ոչ մի գիրք, որն այն-

պիսի նշանակություն ունենար բանվոր դասակարգի համար, ինչպես Կապիտալ-ը։ «Դա, անվիճելիորեն, ամենասարսափելի արկն է, որ երբևիցե արձակվել է բուրժուաների (այդ թվում նաև հողային սեփականատերերի) գլխին» (Նամակներ Կապիտալի մասին, էջ 139)։ Մարքսի այս բնորոշումն իր երկի մասին շատ նշանակալից է։ Նա հանդես է եկել որպես բանվոր դասակարգի գաղափարաբանն ու առաջնորդը։

Բանվոր դասակարգի համար է նա գրել իր հրաշակերտ աշխատությունը, որի մեջ խստիվ ու բարձր գիտականությունը միահյուսված է հեղափոխականության հետ, որովհետև ինքը հանդիսանում էր գիտնականի ու հեղափոխականի մարմնացում։ Կապիտալ-ի վրա գործադրած իր աշխատանքը Մարքսը համարել է իր կարևորագույն կուսակցական պարտականությունը։ Կապիտալ-ը բանվոր դասակարգի քաղաքատնտեսությունն է և գրելով իր աշխատությունը հենց բանվոր դասակարգի համար, Մարքսն առանձին ուշադրություն է դարձրել նրա շարադրման ձևի վրա, ապահովելով նրա կրքոտ ու մարտական ուժը։

Մարքսիզմի թշնամիները փորձեցին լռությամբ մատնել, անտեսել Կապիտալ-ի երևան գալը։ Մարքսին անհանգստացնում և ջղայնացնում էր այդ, որովհետև նա մտահոգված էր որքան կարելի է այն շուտ դարձնել բանվոր դասակարգի սեփականությունը։ Լռությունը երկար չտևեց և դրանում մեծ էր Մարքսի զինակիցների և առաջին հերթին Էնգելսի դերը։ Նրանք իրենց հոդվածներով ու գրախոսություններով պարզաբանում էին Կապիտալ-ի բովանդակությունն ու նշանակությունը։

Առաջին Ինտերնացիոնալի կոնգրեսը (Բրյուսելում, 1868 թ. սեպտեմբերին) բոլոր սեկցիաներին հանձնարարեց ուսումնասիրել Կապիտալ-ը, անհրաժեշտ համարելով նրա թարգմանությունը մյուս լեզուներով։

Կապիտալ-ն անտեսելու մարքսիզմի թշնամիների ջանքերն ի դերև եղան, այն գտավ իր ճանապարհն ու տեղը բանվորական շարժման մեջ և այդ ուրախացնում էր Մարքսին։ Որքան ավելի էր տարածվում այն, այնքան ավելի կատաղի էր դառնում մարքսիզմի թշնամիների պայքարը Կապիտալ-ի աշխարհը վերափոխող գաղափարների դեմ։ Նրանք աղավաղում, խեղաթյուրում և «ժխտում» էին Կապիտալ-ի հետևությունները, թեև այն միշտ հաղթանակում էր ու հարատևում։

3

Կապիտալ-ի առաջին հատորի առաջին թարգմանությունը եղել է ռուսերենը։ Եվ այդ պատահական չէ։ Ռուս առաջավոր շրջանների մարդիկ հետևում էին երկրի կյանքին, ձգտելով պատասխան գտնել այն հարցերին, որոնք ծառանում էին հետռեֆորմյան շրջանում՝ դասակարգային պայքարի սրման կապակցությամբ։ Դրա համար նրանք դիմում էին նաև Արևմուտքի իրադարձություններին։ Նրանց ծանոթ էին Մարքսի և Էնգելսի մի շարք աշխատությունները։ Կապիտալ-ի լույս տեսնելուց մի քանի շաբաթ անց մի քանի օրինակ ստացվել էին Պետերբուրգում ու Մոսկվայում և իսկույն ուշադրության արժանացել։

Դրա թարգմանությունը սկզբում հանձնարարվել էր Մ. Բակունինին։ Մի քանի էջի թարգմանությունը հաջող չստացվեց, և նա հրաժարվեց։ Հետո այն ձեռնարկեց Ն. Չերնիշևսկու ջերմ հետևորդ Գ. Լոպատինը, որը 1870 թ. գալիս է Լոնդոն՝ Մարքսի հետ հանդիպելու։ Նույն տարվա նոյեմբերի վերջին,



երբ արդեն թարգմանված էր գրքի շուրջ մեկ երրորդը, Լոպատինը ձերբակալվում է։ Թարգմանությունը շարունակում է Ն. Դանիելսոնը, իսկ առաջին բաժնի թարգմանությունը կատարում է Ն. Լյուբավինը։

Կապիտալ-ի ռուսերեն թարգմանությունը, որ Մարքսի կարծիքով կատարված էր վարպետորեն, լույս տեսավ 1872 թ. մարտի 27-ին (ապրիլի 8-ին) 3000 օրինակ տպաքանակով և արագ սպառվեց։ Մինչդեռ գերմաներեն հրատարակությունը լույս էր տեսել 1000 օրինակ տպաքանակով և սպառվել էր ավելի երկար ժամանակի ընթացքում։

Մինչև իր կյանքի վերջը Մարքսն անընդհատ աշխատել է Կապիտալ-ի վրա, որը նրա պես վիթխարի հանճարի շուրջ քառասուն տարվա քրտնաջան աշխատանքի արդյունքն է։ Կապիտալ-ի մյուս հատորները լույս տեսան Մարքսի մահից հետո։ Էնգելսի ավելի քան տասնամյա անձնազոհ ու մեծ ջանքերի շնորհիվ Կապիտալ-ի երկրորդ հատորը լույս տեսավ 1885 թ., իսկ երրորդը՝ 1894 թ.։ Կապիտալ-ը հայերենի թարգմանելու առաջին փորձը 1906 թ. արեց հայտնի հրապարակախոս Ա. Արասխանյանը, որը բաժանորդներ հավաքելու նպատակով մինչև իսկ հայտարարություն հրապարակեց թերթերում, բայց նրա կոչը արձագանք չգտավ։

Մինչև 1917 թ. Կապիտալ-ը Ռուսաստանում հրատարակվեց ինն անգամ, չնայած ցարական գրաքննության որոգայթներին։

Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո (մինչև 1964 թ.) Կապիտալ-ը երեք հատորով ՍՍՀՄ-ում հրատարակվել է 167 անգամ՝ 18 լեզվով, ավելի քան վեց միլիոն օրինակ։ Այն հրատարակված է օտարերկրյա քառասուն լեզուներով՝ աշխարհի 83 քաղաքներում։

Սովետական իշխանության օրոք Կապիտալ-ի հայերեն թարգմանության երկրորդ փորձը կատարվել է 1922—1924 թ., որը հաջողությամբ չի պսակվել։ Կապիտալ-ի առաջին հատորը հայերեն առաջին անգամ լույս է տեսել 1933, երկրորդ հատորը՝ 1936, իսկ երրորդ հատորը երկու մասով՝ 1947 և 1949 թվականներին։ Կապիտալ-ի բոլոր հատորների թարգմանության շնորհակալ գործը կատարել է Թադևոս Ավդալբեկյանը։ Առաջին հատորը վերահրատարակվել է 1954 թ., իսկ մյուս հատորները վաղուց սպառվել և սպասում են վերահրատարակության։ Հայ ընթերցողը վաղուց սպասում է նաև չորրորդ հատորի թարգմանությանը։

4

Կապիտալ-ի լույս տեսնելուց հետո անցած հարյուրամյակի ընթացքում կարևոր փոփոխություններ են տեղի ունեցել կապիտալիստական արտադրաեղանակում, փոխվել է աշխարհի քաղաքական քարտեզը։ Այս հարյուրամյակը հատուկ տեղ ունի մարդկային հասարակության պատմության մեջ։ XX դարի սկզբին կապիտալիզմը թևակոխել է իր զարգացման իմպերիալիստական ստադիան։ Մարքսն ու Էնգելսը կանխատեսել էին կապիտալիզմի զարգացման այդ փուլը։ Լենինը հիմնվելով Կապիտալ-ի դրույթների վրա և հետևողականորեն կիրառելով Մարքսի մեթոդը, բացահայտել է իմպերիալիզմի էությունը, պարզել նրա պատմական տեղը որպես սոցիալիստական հեղափոխության նախօրյա։ Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա Լենինի աշխատությունը Կապիտալ-ի շարունակությունն է, մարքսիզմի հետագա զարգացումը։

Կապիտալ-ի հրատարակության հարյուրամյակը համընկնում է Լենինի՝

իմպերիալիզմի վերաբերյալ աշխատության հիսնամյակի հետ։ Այդ հարյուրամյակը բաժանվում է երկու հավասար կեսերի։ Երկրորդ կեսը նշանավորվել է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակով, որով սկսվել է անցումը կապիտալիզմից սոցիալիզմին, իրականություն են դարձել մարքսիզմ-լենինիզմի հանճարեղ կանխատեսումները։ Մեր ժամանակի ամենաբնորոշ առանձնահատկությունն այն է, որ աշխարհը տրոհված է երկու հակադիր համաշխարհային սիստեմների, ընդ որում արդի դարաշրջանում մարդկային հասարակության պատմական զարգացման գլխավոր բովանդակությունը, գլխավոր ուղղությունն ու գլխավոր առանձնահատկությունները որոշվում են համաշխարհային սոցիալիստական սիստեմով։

Բուրժուազիայի գաղափարախոսներն ու ռևիզիոնիստներն ամեն կերպ ջանում են ապացուցել, որ կապիտալիզմի զարգացումը XX դարում չի ընթացել ըստ Մարքսի, որ նրա հայացքները չեն հաստատվել պատմության հետագա ընթացքով, որ Մարքսի տեսությունը կապիտալիստական շահագործման մասին վաղուց հնացել է, իսկ կապիտալիզմն այլևս այն չէ։ Հորինում են առասպելներ կապիտալիզմի տրանսֆորմացիայի (փոխաձևման) մասին, կնքում նրան իրականությունը քողարկող «ժողովրդական կապիտալիզմ», «դեմոկրատական կապիտալիզմ», «նեոկապիտալիզմ» և այլ անուններով։ Նրանք կատաղի հարձակումներ են կատարում Մարքսի ուսմունքի հիմնական դրույթների դեմ և պաշտպանում արդի իմպերիալիզմը։ Եթե վերլուծելու լինենք հասարակական զարգացման հիմնական պրոցեսները, ապա պետք է ասենք, որ կապիտալիստական շահագործման էության, բանվոր դասակարգի դրության ու պատմական դերի մասին Կապիտալ-ում տրված Մարքսի բնութագիրը լիովին վերաբերում է նաև ժամանակակից իմպերիալիզմին։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի գոյությունը, սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը 14 երկրներում, իմպերիալիզմի գաղութային սիստեմի կործանումը, աճող պայքարն աշխատանքի ու կապիտալի միջև մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի փայլուն հաղթանակն են։

Աշխարհի պրոգրեսիվ մարդիկ պատրաստվում են հանդիսավոր կերպով տոնելու մեծ Հոկտեմբերի 50-ամյակը։ Դա Մարքսի ուսմունքի ամենալավագույն ու պերճախոս հաստատումն է։ Կապիտալ-ն այժմ ավելի շատ է ընթերցվում, քան երբևէ։ Նա եղել է և մնում է միլիոնների հզոր զենքը կապիտալիստական կարգերը կործանելու և սոցիալիզմի ու կոմունիզմի հաղթանակը համաշխարհային մասշտաբով ապահովելու գործում։



# ՊԼԱՆԱՎՈՐՈՒՄԸ ՈՐՊԵՍ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ՁԵՎ

Գ. ՄԽԻԹԱՐՅԱՆ

ՍՄԿԿ Կենտկոմի 1964 թ. հոկտեմբերյան պլենումից սկսած մեր կուսակցությունը միջոցառումներ է մշակում արտադրության կառավարման և ժողովրդական տնտեսության պլանավորման կատարելագործման համար։ Այդ գործում ուղենիշ են հանդիսանում ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. մարտյան և սեպտեմբերյան պլենումների որոշումները, XXIII համագումարի մշակած միջոցառումները և 1966—1970 թթ. հնգամյա պլանի դիրեկտիվները։

Տնտեսական ռեֆորմի համաձայն տնտեսական քաղաքականության և պլանավորման, որպես սոցիալական ազատության դրսևորման նոր ձևերի, կատարելագործման իմաստն այն է, որ սոցիալիստական էկոնոմիկայի կառավարման բնագավառում արմատախիլ արվեն կամայականությունը, վարչարարությունը, պլանավորման արատավոր ձևերն ու մեթոդները, որոնք մեծ չափով վնասում են ժողովրդական տնտեսությանը, խանգարում նրա ռիթմիկ զարգացմանը։ Ա. Ն. Կոսիգինը կենտկոմի սեպտեմբերյան պլենումում (1965 թ.) իր զեկուցման մեջ նկատեց, որ վոլյունտարիստական և սուբյեկտիվիստական, ոչ-գիտական ղեկավարության հետևանքով յոթնամյակի վերջին տարիներին տեղի էր ունեցել արտադրության հիմնական ֆոնդերի մի ռուբլուն հասնող ազգային եկամտի քանակի նվազում։ ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումներում խնդիր դրվեց տնտեսության արդյունավետությունն արմատապես բարելավելու և ժողովրդի բարեկեցությունն ավելի բարձրացնելու համար վերափոխել կառավարման հնացած ձևերը, կատարելագործել պլանավորման մեթոդները, պլանավորումը դնել գիտական բարձր հիմքերի վրա։ Անհրաժեշտ է նախապես ասել, որ ինչպիսի սխալներ էլ թույլ տրված լինեն (առանձնապես տնտեսական քաղաքականության և պլանավորման բնագավառում), մենք հիմնականում ընթացել ենք լենինյան կանխագծումների ճանապարհով։ Սովետական Միության նվաճումներն այնպիսի մասշտաբների հասան, որ նա այժմ իր տնտեսական հզորությամբ մրցում է աշխարհի ամենազարգացած արդյունաբերական երկրների հետ և արտադրության ու գիտության որոշ ճյուղերում նույնիսկ առաջ է անցել նրանցից։

Առանձին ղեկավարների և ղեկավար օրգանների սխալները չեն կարող ճակատագրական լինել ժողովրդական տնտեսության և սոցիալիզմի ու կոմունիզմի միջազգային հաղթանակի համար, որովհետև դրա նվաճման հիմնական, որոշիչ ուժը ոչ թե ղեկավարներն են, այլ աշխատավոր մասսաները, որոնք իրենց անձնազոհ և անխոնջ աշխատանքով նոր հասարակարգի մեծ պողոտաներն են կառուցում։ Թերևս սոցիալիզմ կառուցող ոչ մի ժողովրդի վիճակված չլինի հաղթահարելու այսպիսի դժվարություններ և կատարելու

այսպիսի զոհողություններ: Չէ՞ որ ամեն մի հաղթանակած ժողովուրդ, որն իր երկրի արտադրությունն իր ձեռքն է վերցնում, ունի ո՛չ միայն մեր անցած ուղու փորձն ու գիտությունը, այլև մեր բազմակողմանի օժանդակությունը:

Սակայն, ղեկավար օրգանների դերը նույնպես կարևոր է նոր հասարակարգի կառուցման գործում: Նրանք ազատության, գիտակցության կրողներն են, որոնք տնտեսությունն ու հասարակական զարգացումը ընդհանրապես վարում են պատմական անհրաժեշտության գիտակցությամբ, ղեկավարում ժողովրդի ստեղծագործական աշխատանքը հասարակական զարգացման օրենքների պահանջներին համապատասխան: Բայց ոչ-ճիշտ ղեկավարելու դեպքում նրանց հասցրած վնասը չափազանց զգալի է լինում:

Ինչպես նշվում է ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան և սեպտեմբերյան պլենումների և կուսակցության XXIII համագումարի որոշումներում, արդի պայմաններում, երբ մեր ժողովրդական տնտեսությունն ունի բարձր զարգացած արտադրողական ուժեր, փոխադարձ օգնության և համագործակցության արտադրահարաբերություններ, չի կարելի առաջնորդվել կառավարման հին մեթոդներով: Անհրաժեշտ են հույժ գիտական պլաններ, արտադրության զարգացման օբյեկտիվ տրամաբանությունն արտացոլող առավել ճկուն քաղաքականություն, ժողովրդական, աշխատավորական մասսաների պահանջմունքների ու շահերի վրա կառուցված ավելի հմուտ տնտեսավարություն, կառավարման այնպիսի կենսունակ սկզբունքներ, որոնք սովետական մարդկանց մղեն հերոսական աշխատանքի:

Արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման նպատակը հասարակության անդամների պահանջմունքների բավարարումն է. ուրեմն, պետք է այնպիսի տնտեսական քաղաքականություն վարել, որում արտացոլված լինեն դրանք: Տնտեսական քաղաքականության, որպես սոցիալական ազատության դրսևորման ձևի ճշտությունն ամենից առաջ որոշվում է նրանով, թե արդյոք այն խթանում է աշխատանքային խանդավառությունը, եթե այո, ուրեմն արտադրության ընդհանուր հասարակական նպատակն արտացոլված է քաղաքականության մեջ:

Ժամանակն է, որ մեր ժողովրդական տնտեսության պլանները (ամենամյա, թե հեռանկարային) առավել գիտականորեն հիմնավորված լինեն: Այդ նշանակում է, որ դրանք, նախ, կազմվեն ոչ միայն աշխատավոր մասսաների պահանջմունքների, այլև տնտեսական օրենքների պահանջների հաշվառման հիման վրա: Թեև աշխատավորների պահանջմունքները, վերջին հաշվով, համընկնում են տնտեսական օրենքների պահանջներին (քանի որ այդ օրենքների կրողները հիմնականում աշխատավոր մասսաներն են), բայց նրանց պահանջմունքների բավարարման ուղին ոչ թե բուն այդ պահանջմունքներն են ցույց տալիս, այլ նրանց տրամաբանական կամ գիտական ընդհանրացումը հանդիսացող օրենքները: Դրանց հետազոտությունը և գործնական կիրառումը կատարվում են սոցիալիզմի քաղաքատնտեսության և պլանավորման միջոցով: Վերջինս քաղաքատնտեսության սկզբունքներով ուսումնասիրում է տնտեսական օրենքների գործնական դրսևորումներն ու դրանք արտացոլում պլաններում, նշում օրենքների պահանջների իրականացման կոնկրետ ուղիները կամ միջոցները: Ուրեմն, նշանակում է՝ պլանավորման, պլանավորող օրգանների գործնական ազատությունը չափվում է նրանց կողմից կյանքի ճանաչողության, գիտական զինվածության ուժով, տնտեսական անհրաժեշտության կենսագործմամբ:



ՍՄԿԿ Կենտկոմի վերջին պլենումների և XXIII համագումարի փաստաթղթերում նշվում է, որ անհրաժեշտ է սուր պայքար մղել ամեն տեսակ անտնտեսավարության, վատնումների և անարտադրողական ծախսումների դեմ, թեթևացնել կառավարման ապարատը ուռճացած հաստիքներից ու ավելորդ ծախքերից: Պետական ու կուսակցական այդ կարևոր որոշումներում ընդգծվում է, որ այլևս չի կարելի հանդուրժել տևական անհամամասնությունը՝ արդյունաբերության և գյուղատնտեսության, արտադրության տարբեր ճյուղերի միջև:

Այդ ուղղությամբ եղած սխալների վերացման համար անհրաժեշտ էր, նախ՝ վերականգնել ժողովրդական տնտեսության կառավարման լենինյան սկզբունքները, էական փոփոխություններ մտցնել տնտեսական քաղաքականության մեջ, վերափոխել պլանավորման արատավոր պրակտիկան, դրա հիմքում դնելով տնտեսական օրենքների պահանջների ուսումնասիրությունն ու արտացոլումը: Տնտեսական ռեֆորմը ելնում է ազատության լենինյան տեսության սկզբունքներից. ինչպես, օրինակ, բարձրացնել պլանավորման գիտական մակարդակը (1), որը տեսության մեջ և գործնականում նշանակում է՝ զարգացնել ազատությունն ընդդեմ տարերայնության և կամայականության: Պլանավորումը գործնականում պետք է լինի տնտեսական անհրաժեշտության կոնկրետացումը, տնտեսական օրենքների պահանջների կոնկրետ հետազոտությունն ու արտացոլումը:

Տնտեսական ռեֆորմի մյուս հիմնական առաջարկը վերաբերում է արտադրական ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնության ու նախաձեռնության բարձրացմանը (2). արտադրական ձեռնարկությունը հասարակական տնտեսության հիմնական բջիջն է, և անհրաժեշտ է բարձրացնել ու խրախուսել ներքևից եկող ակտիվությունն ու նախաձեռնությունը, քանի որ առանձին կոլեկտիվներ կարևոր դեր են խաղում ինչպես աշխատանքի արտադրողականության բարձրացման, այնպես էլ նրա կազմակերպման նոր ձևերի, պլանավորման նոր մեթոդների մշակման և այլ բնագավառներում: Ձեռնարկության տնտեսական ինքնուրույնությունը մեծացնելու հիմնական ուղիներից մեկը նրան լրացուցիչ վարձատրության միջոցներ կամ ֆոնդ հատկացնելն է, պարգևատրման ու խրախուսման միջոցների տնօրինումը, որը կբարձրացնի կոլեկտիվի ու նրա ամեն մի անդամի ակտիվությունը ոչ միայն տվյալ ձեռնարկության, այլև ամբողջ հասարակության մասշտաբով:

Տնտեսական ինքնուրույնության (և պատասխանատվության) բարձրացման լավագույն ձևը ռեֆորմը համարում է տնտհաշվարկը (3). միայն տնտեսական հաշվարկի միջոցով կարելի է ձեռնարկությունը դարձնել եկամտաբեր, արտադրության աշխատողների շահագրգռվածությունը բարձրացնել այնպիսի միջոցներով, ինչպիսիք են՝ գինը, շահույթը, պարգևատրումը, վարկը: Տնտեսագիտական այդ կատեգորիաների, որպես խթանների, օգտագործումը նշանակում է՝ տնտհաշվարկը դնել իր կատարյալ հիմքերի վրա, զարգացնել առանձին ձեռնարկությունների պատասխանատվությունը արտադրության արդյունավետության, շահութաբերության գործում. դրանով աշխատավորներն իրենց կզգան արտադրության տերեր և այն կդիտեն որպես յուրաքանչյուրի և ողջ կոլեկտիվի բարեկեցության աղբյուր:

Այս սկզբունքներից ամեն մեկը, որն առաջադրվում է որպես տնտեսական ռեֆորմի էությունն արտահայտող տեսական ու գործնական դրույթ, սովետական հասարակության ազատության զարգացման մի նոր աստիճան է:

Այդ, նախ, նշանակում է ընդհանուր հասարակական-տնտեսական հարաբերությունների գիտակցական կառավարման, կարգավորման ու վերահսկողության մի նոր նվաճում (այս մասին անցյալ դարի 70-ական թվականներին գրում էին Մարքսն ու Էնգելսը), որին հասնելու առաջին քայլերը հեղափոխությունից հետո արեց Լենինը։ Բացելով արտադրության աշխատողների նախաձեռնության լայն ասպարեզ, տնտեսական ռեֆորմը միաժամանակ նոր հնարավորություններ է ստեղծում արտադրաուժերի հզոր վերելքի և սոցիալիստական արտադրահարաբերությունների ռիթմիկ ու վերընթաց զարգացման համար։ Կասկած չի հարուցում, որ այս հնգամյակում (1966—1970 թթ.) մեր ժողովրդական տնտեսությունը մի նոր թռիչք կկատարի, դրանով իսկ բազա կստեղծի հետագա ավելի մեծ թռիչքների համար։ Երբ կառավարման մեջ լիովին կվերացվեն վոլյունտարիզմի տարրերը կամ,— ինչպես ակադեմիկոս Նեմչինովն է գրում,— արմատախիլ կարվի «ադմինիստրատիվ վոլյունտարիզմը», այն ժամանակ տնտեսավարների ու կառավարման օրգանների համար ազատ ստեղծագործության ավելի լայն հեռանկարներ կստեղծվեն, և աշխատավորական կոլեկտիվներն ավելի արդյունավետ կգործեն։ Չէ՞ որ պլաններն այժմ իջեցվում են ոչ որպես «պլան-առաջադրանքներ», այլ՝ «պլան-պատվերներ», որոնց մշակմանն ու կատարմանը արտադրական կոլեկտիվները ոչ միայն մասնակցում են, այլև տնտեսապես շահագրգռված են։

Պլանավորման կատարելագործման մեջ (որպես ազատության զարգացման էական ձևի), բացի պլանի առավել գիտական հիմնավորվածությունից, չափազանց կարևոր է աշխատավորության շահախնդիր մասնակցությունը։ Բանն այն է, որ մինչև այժմ պլանավորման ու պլանի կատարման ցուցանիշների մեջ ֆոնդատվությունն ու շահութաբերությունը կարևոր պահանջ չեն եղել։ Հիմնական ցուցանիշը համախառն արտադրանքի պլանի կատարումն էր, որի համար տրվել են նախատեսված խրախուսանքի միջոցներ, պարգևահավելումներ և այլն։ Իսկ տվյալ ձեռնարկությունը հաճախ հոգ չի տարել իր եկամուտների հաշվին արտադրությունն ընդլայնելու, հիմնական ֆոնդերը փոխհատուցելու, նոր ներդրումներ կատարելու մասին։ Այլ խոսքով, բացակայում էր տնտեսավարության լիակատար տնտհաշվարկային սիստեմը։

Նման անշահավետ տնտեսավարությունը շատ թանկ էր նստում պետությանը. այն ժամանակի ընթացքում վեր էր ածվում մի ծանր բեռի, քանի որ պետությունը բոլոր ներդրումներն ինքն էր կատարում, իսկ ձեռնարկությունը զերծ էր մնում որևէ պատասխանատվությունից։ Տնտեսական ռեֆորմը ձեռնարկությանը տալով ինքնուրույն տնտեսավարության մեծ իրավունքներ, պլանավորման բնագավառում՝ նախաձեռնություն, օգուտներից՝ մասհանման իրավունք և այլն, դրանով ոչ միայն նախաձեռնությունների ասպարեզ է բացում, այլև արտադրության ընդլայնման, այն եկամտաբեր դարձնելու, պլանների կատարման և տնտեսավարման այլ հարցերում բարձրացնում է պատասխանատվությունը։ Պետական պլանավորումը մի կողմից բացառում է վարչարարական կարգադրությունը, մյուս կողմից՝ մանր հովանավորության դերից անցնում է հասարակական արտադրության պայմանների հաշվառման և գիտակցական վերահսկողության ֆունկցիային, որի նպատակը հասարակության բոլոր անդամների բարեկեցության ապահովումն է։

Պլանավորման նոր մեթոդի համաձայն ձեռնարկության տրամադրության տակ թողնված միջոցները կախված են նրան հատկացված արտադրական ֆոնդերի օգտագործման արդյունավետությունից, իրացված արտադրանքի



չափից, արտադրության շահավետությունից և արտադրանքի որակից։ Պետությունը, միաժամանակ, կապիտալ ներդրումների անվերադարձ ֆինանսավորումից անցնում է վարկավորման կիրառման (տե՛ս «Правда», от 28-го сент. 1965 г.)։

Մի շարք ցուցանիշներից երևում է, թե ինչ չափով է բարձրանում ձեռնարկության ղեկավարության, նրա կոլեկտիվի և ամեն մի աշխատողի պատասխանատվությունը, հոգատարության զգացումը, անհատական և հասարակական շահի միասնության գիտակցությունը։ Արտադրության կառավարման այս նոր սկզբունքը հետևողականորեն կիրառելու դեպքում բացառվում են սուբյեկտիվիզմը, վարչարարությունը, լայն ասպարեզ է բացվում խելացի տնտեսավարության համար, ձուլվում են արտադրության աշխատողի, նրա կոլեկտիվի և պետական-համաժողովրդական շահերը։ Այսպիսի տնտեսական շահի վրա հանդես է գալիս կամքի և ձգտումների միասնություն ամբողջ հասարակության մեջ։ Այժմ արդեն իրական տնտեսական հիմք կա հասարակության անդամների հոգեբանական վերափոխման և բարոյական դաստիարակության համար. իսկ երբ մենք դեռ տնտեսական շահերի միասնություն չէինք ստեղծել, հասարակության բարոյա-քաղաքական միասնության մասին խոսակցությունը հաճախ արդյունք չէր տալիս, որովհետև դրա հաստատումը դեռևս գործնականում չէր երևում։

Տնտեսական ռեֆորմը չի անտեսում նաև արտադրական ձեռնարկությունների փոխհարաբերության հարցը։ Նախկինում ձեռնարկությունները փոխադարձ պարտավորությունների համար համարյա պատասխանատվություն չէին կրում։ Այժմ նրանց կազմած տնտեսական պայմանագրերը օրենքի ուժ են ստանում։

Տնտեսական քաղաքականության էական փոփոխություններն ու պլանավորման կատարելագործումն արմատապես վերափոխում են ոչ միայն տնտեսավարության պրակտիկան, այլև զարգացնում են տեսությունը, զարկ են տալիս հասարակական գիտություններին, առաջին հերթին սոցիալիզմի քաղաքատնտեսությանը։ Տնտեսական ռեֆորմը, հենվելով մարքս-լենինյան աշխարհայացքի մեթոդոլոգիական սկզբունքների վրա, մի նոր աստիճանի է բարձրացնում գիտական կոմունիզմի ուսմունքը, հարստացնում այն պրակտիկայով։ Նոր թափ է ստանում, մասնավորապես, ազատության և պատմական անհրաժեշտության տեսությունը։ Փիլիսոփայական հասկացությունները, գործնականում գտնելով իրենց դրսևորման կոնկրետ ձևերը, դառնում են սովետական մարդկանց, առանձնապես երիտասարդ սերնդի դաստիարակության միջոցներ, կյանքի վերափոխման կարևոր լծակներ։

Ազատությունը ավելի կոնկրետ, անմիջական, առարկայական կերպարանք է ստանում, երբ հանդես է գալիս գործնականում ճանաչված անհրաժեշտության ձևով, վերացական հասկացություններից դառնում, օրինակ, արժեքի օրենքի պահանջների ճանաչման ու կարգավորման միջոց, գնի, շահույթի, պահանջի և առաջարկի, տնտեսական օրինաչափությունների նոր, խելացի համամասնություններ ստեղծելու և այլ օրենքների գիտակցական կարգավորման զենք, գործիք, մասսաների ստեղծագործական ակտիվության աղբյուրների դրսևորման ակունք։ Մեր օրերում ազատության հասարակական ուժն աճում ու զարգանում է ոչ որպես սոսկ տեսություն, այլ որպես հասարակական ու անհատական շահերի միասնության ըմբռնում, կոմունիզմի կառուցման ուղիների գիտակցություն։ Մարդիկ այժմ և՛ ըմբռնում, և՛ զգում

են, թե ինչ է նշանակում դեպքերի տարերային ընթացքի ազդեցությունից զերծ լինելը, թե որքան կարևոր է տնտեսական հարաբերությունների ընթացքի կարգավորողն ու հրամայողը լինել։ Մեր ազատության լավագույն ցուցանիշն այն է, որ մենք պլաններ ենք կազմում ու վաղօրոք կանխատեսելով արդյունքը, դրանք իրականացնում ենք։ Այդ նշանակում է, որ մենք իսկապես անցում ենք կատարել տարերային անհրաժեշտության տիրապետությունից՝ ազատության տիրապետությանը։

Իհարկե, այդ ամենի իրականացումը պահանջում է տևական ու համբերատար աշխատանք. ժողովրդական տնտեսության կառավարումն ու նրա գիտությունը միանգամից չեն ստեղծվում։ Մեր անցած մոտ կեսդարյա ուղու արդյունքները հիմտորեն ամփոփվել և գնահատվել են նախորդ պլենումների և XXIII համագումարի որոշումներում։

Տնտեսական ռեֆորմը անցած երկու տարում բարեհաջող քննություն է տալիս։ Պարզվում է, որ ճիշտ չէին այն «հեղինակավոր» տեսաբանները, որոնք խորհուրդ էին տալիս անհապաղ հրաժարվել տնտեսագիտության «հին ժառանգությունից», այնպիսի օրենքներից ու կատեգորիաներից, ինչպիսիք են՝ արժեքի օրենքը, գինը, շահույթը, որոնք կապված են ապրանքա-դրամային հարաբերությունների հետ և այլն։ Այդ մարդկանց, ըստ երևույթին, անհրաժեշտ էր մի անգամ էլ հիշել Մարքսի խոսքերը, որ օրենքներն ընդհանրապես չեն չքանում, այլ սոսկ փոխվում են նրանց դրսևորման ձևերը (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Избранные письма, стр. 209, М., 1947)։

Ինչպես ցույց է տալիս սոցիալիստական շինարարության պրակտիկան, քաղաքատնտեսության կատեգորիաները չեն չքանում, քանի որ չեն չքանում նրանց բովանդակությունը կազմող տնտեսական, ապրանքա-դրամային հարաբերությունները։ Միայն թե սեփականության ձևերի փոփոխման հետ փոխվում է նաև նրանց սոցիալական բովանդակությունը։ Եթե կապիտալիստական հասարակարգում այդ օրենքները գործում են տարերայնորեն, քանի որ նրանց գործողությունները հասարակայնորեն կարգավորել անհնար է, ապա սոցիալիստական հասարակարգում, քանի դեռ մնում են հին տնտեսական հարաբերություններն ու օրենքները, նրանց գիտակցական կարգավորումը ոչ միայն հնարավոր է, այլև անհրաժեշտ. չէ որ հանրային սեփականության բազայի վրա այդ օրենքների գործողությունները չի կարելի թողնել տարերայնության քմահաճույքին։ Նրանց կարգավորումն անհրաժեշտ է հասարակական արտադրության արդյունավետության ապահովման համար։ Արժեքի օրենքն, օրինակ, կապիտալիզմի պայմաններում գործում է տարերայնորեն և մեծ ավերածություններ պատճառում հասարակական արտադրությանը։ Սոցիալիզմի պայմաններում կան բոլոր հնարավորությունները կանխելու նրա գործողությունների տարերայնությունը և գիտակցաբար կարգավորելու այդ օրենքը, ենթարկելու այն հասարակական զարգացման ընդհանուր նպատակին։ Կապիտալիզմի պայմաններում, եթե նույնիսկ մարդիկ գիտակցում են այդ օրենքի ուժը, նախապես անկարող են կարգավորել գնի տատանումները։

Սոցիալիստական հասարակարգում արտադրությունը զարգանում է ընդհանուր հասարակական գիտակցված նպատակի թելադրանքով, չկան հակամարտ շահեր, հետևաբար պլանավորման միջոցով մարդիկ կարող են ստեղծել այնպիսի խելացի համամասնություններ, որ մի ճյուղում գերարտադրություն չլինի, իսկ մյուսում՝ արտադրանքի խիստ պահանջ։ Այստեղ տնտեսական շահավետության խնդիրը ընդհանուրի բարեկեցությանը ծառայելն է. ուրեմն, արժեքի և գնի միջև չեն լինի այնպիսի տատանումներ, ինչպիսին կա կապիտալիստական շուկայում։ Տնտեսական ռեֆորմը գնագոյացման քաղաքականության հիմնական խնդիրն է համարում գինն ամենուրեք մոտեցնել արժեքի մակարդակին, այդ բնագավառում վերացնել կամայականությունը։ Գների տատանումները մինիմումի հասցնելը հնարավոր է արժեքի օրենքի գործողությունների գիտակցական կարգավորմամբ միայն։ Խելացի պլանավորման միջոցով, դրա հիմքում դնելով աշխատավորների պահանջմունքների բազմակողմանի հաշվառման անհրաժեշտությունը, կարելի է արտադրության տարբեր ճյուղերում ստեղծել այնպիսի ռացիոնալ փոխադարձ կապ ու պայմանավորվածություն, այնպիսի խելացի համամասնություն, որ սոցիալիստական շուկայում պահանջարկն ու առաջարկը հնարավորին չափ համապատասխանեն իրար։ Տնտեսական ռեֆորմը պլանավորման կատարելագործման հիմնական խնդիրներից մեկն է համարում այդ, եթե ոչ ամենահիմնականը։ Օրինակ, գյուղատնտեսական մթերքների արտադրության կազմակերպման և պետական միասնական գների հիման վրա մատակարարման նորմալ կազմակերպումը շատ անհրաժեշտ է մեր երկրի բնակչության ռեալ աշխատավարձի բարձր մակարդակ ապահովելու համար։ Այնտեղ, ուր պետական մատակարարումները թույլ են կազմակերպվում, բնական է, սպեկուլյացիան անխուսափելի է դառնում, իսկ վարչական պայքարը դրա դեմ՝ թույլ միջոց։

Այսպիսով, ինչպես տեսնում ենք, հին հասարակարգից ժառանգություն մնացած տնտեսական հարաբերություններն ու օրենքները նոր բնույթ են ստանում, քանի որ նրանց դրսևորման ձևերն էականորեն փոխվում են։ Հասարակական նոր սիստեմը պլանավորման ու գիտակցական կարգավորման միջոցով այդ օրենքների գործողությունները ենթարկում է կոմունիզմի կառուցման մեծ նպատակին, կանխում նրանց տարերայնությունը և նրանց մեխանիզմը օգտագործում նոր սիստեմի օգտին։ Արժեքի օրենքի ուսումնասիրությունը նոր պայմաններում սովետական մարդկանց լավ տնտեսավարություն է սովորեցնում, ղեկավար օրգաններին հնարավորություն է տալիս բարձրացնելու արտադրության արդյունավետությունը, շահութաբերությունը։ Իսկ այդ կոմունիզմի կառուցման համար ամենագլխավորն է։ Մյուս խնդիրները դրանով են պայմանավորվում։ Սովետական գիտնականներն այժմ դեն են նետել այն հնացած դրույթը, թե արժեքի օրենքը խորթ է սոցիալիզմի քաղաքատնտեսությանը, և իբր պլանավորումը առանց արժեքի օրենքի էլ կարող է վարել արտադրությունը։ Մինչդեռ անցյալի պրակտիկան ցույց է տալիս, որ առանց արժեքի օրենքի պահանջների հաշվառման, արտադրական ձեռնարկությունների ղեկավարությունը դժվարանում է, ձեռնարկություններն ատաիճանաբար դառնում են անշահութաբեր, իսկ պետական հովանավորությունն ու խնամակալությունը վեր են ածվում միակողմանի վարչարարության։ Սա թանկ է նստում ժողովրդական տնտեսությանը։ Ղեկավար օրգաններն ազատ կարգավորողից կամա թե ակամա վեր են ածվում տարերայնությունը խրախուսողների, իսկ վերևից իջեցված պլանները՝ առանց արժեքի օրենքի պահանջների հաշվառման, «առաջադրանքների»։ Այդպիսով կարգավորող ու վերահսկող օրգանների համար անհնար է դառնում հսկել կապիտալ ներդրումների ու ֆոնդերի փոխհատուցումը, շահութաբերությունը, ձեռնարկության տնտեսական հաշվեկշիռը։

Սոցիալիզմի պայմաններում շուկայական հարաբերությունները տարերայնորեն չեն ձևավորվում։ Ապրանքա-դրամային հարաբերությունները, արժեքն ու գինը, պահանջարկն ու առաջարկը գտնվում են գիտակցական վերահսկողության ներքո, պլանավորվում են մեկ միասնական հասարակական նպատակի և շահի թելադրանքով։ Ամբողջ պլանավորման և արտադրության զարգացման խնդիրը միևնույնն է, իսկ այսպիսի պայմաններում տնտեսական հարաբերությունների գիտակցական կարգավորումը կախված է պլանավորող ու տնտեսական քաղաքականության կուրսը որոշող ղեկավար օրգաններից։

Մեր տնտեսավարության ամենաթույլ տեղերից մեկը աշխատավորության պահանջմունքների ամենօրյա ուսումնասիրության ու հաշվառման գրեթե բացակայությունն է։ Այդ առանձնապես վերաբերում է վիճակագրական ու գիտական ինֆորմացիայի կատարելագործմանը։ Այս բնագավառների մասին մեզ մոտ շատ է խոսվել, բայց կոնկրետ քայլեր չեն արվել։ Պլանավորող և ղեկավար օրգանների համար հասարակական պրակտիկայի, մասսաների պահանջմունքների լիակատար հաշվառման լավագույն միջոցը վիճակագրական հաշվառումն է, «տարերայնության էլեմենտի» նվազեցումը։

Արժեքի օրենքը և տնտհաշվարկային սիստեմը կարևոր դեր են խաղում հատկապես այժմ, երբ տնտեսական ռեֆորմի շնորհիվ ձեռնարկություններին տրվում են որոշակի ինքնուրույնություն և ինքնակառավարման իրավունքներ։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ տնտեսավարության նոր սկզբունքների համաձայն բարձրանում է ձեռնարկությունների ու նրանց ղեկավարների պատասխանատվությունն իրենց տնօրինությանը հանձնված միջոցների՝ կապիտալ ներդրումների, հիմնական ֆոնդերի, արտադրության արդյունքի իրացման, նրա որակի համար։ Այժմ ձեռնարկությունն ինքը պետք է ընդլայնվելու, առավել շահութաբեր դառնալու ռացիոնալ ուղիներ որոնի։ Եվ այդ ոչ միայն այն պատճառով, որ տվյալ կոլեկտիվը պատասխանատու է պետության և հասարակության առջև նրան վստահված միջոցների համար, այլև այն պատճառով, որ ձեռնարկության գործունեության այդ ցուցանիշներից է կախված կոլեկտիվի ու նրա ամեն մի անդամի վարձատրության չափը։ Պարզ է, որ ձեռնարկության ղեկավարության հիմքում պատասխանատվության հետ միասին պետք է դրված լինի և անձնական շահագրգռվածության ընդհանուր սկզբունքը։

Այստեղ հանդես է գալիս տնտեսական ռեֆորմի մյուս կարևոր սկզբունքը, որն արտացոլված է թե՛ վերոհիշյալ պլենումների և թե կուսակցության XXIII համագումարի որոշումներում։ Հասարակության և անհատի շահերի միասնության մասին շատ է խոսվել ու գրվել։ Բայց այժմ, շնորհիվ տնտեսական ռեֆորմի, ստեղծվել է տնտեսական խսկապես միասնական այն հիմքը, որտեղ աշխատավորի, նրա կոլեկտիվի և հասարակության շահերը օբյեկտիվորեն միահյուսվում են։ Առաջ շահերի միասնությունը պատկերացվում էր որպես ամեն մի առանձին անհատի տնտեսական շահագրգռվածության սկզբունքից բխող հետևություն. քանի որ շատ ստանալու համար աշխատավորը ձգտում է շատ արտադրել, ուրեմն, նրա շահերը համընկնում են հասարակական շահի, արտադրության ընդհանուր զարգացման հետ։ Այժմ պատկերը բոլորովին այլ է. բանը միայն անհատապես շատ արտադրելու կամ շատ աշխատելու ձգտման մեջ չէ, այլ ամբողջ կոլեկտիվի արդյունավետ աշխատելու, կոլեկտիվների փոխհարաբերություններում տնտհաշվարկային սկզբունքի պահպանման մեջ, քանզի ամեն մի անհատի վարձատրության



չափը կախված է ամբողջ ձեռնարկության շահութաբերությունից, կոլեկտիվի արդյունավետ աշխատանքից։ Ելնելով շահերի այդ միասնությունից, կարելի է եզրակացնել, որ նոր պայմաններում աշխատանքն աստիճանաբար դառնում է ինքնաբուխ, ինտենսիվ, հետաքրքրական և ոչ թե սոսկ արտաքին, արհեստական, ժամանակավոր խանդավառություն։

Խիստ փիլիսոփայական լեզվով ասած, այդ բոլոր պայմանների ամբողջությունը կարելի է բնութագրել որպես «տնտեսական անհրաժեշտության» տիրապետում, որը տնտեսական կառավարման մեջ հետևողականորեն արմատավորելու դեպքում վերջ է դնում սուբյեկտիվիզմին, վոլյունտարիզմին, վարչարարությանն ու ամեն բնույթի կամայականություններին։ Այդ նշանակում է՝ հասարակայնորեն տիրապետել սեփական տնտեսական հարաբերություններին, կամ սանձել տնտեսական զարգացման օրենքների գործողությունները և դրանք ի սպաս դնել մեծ նպատակի՝ կոմունիզմի կառուցման շահերին։ Այդ ազատության տիրապետությունն է արտադրության բնագավառում, որը նշանակում է տնտեսության զարգացումը վարել այնպես, որ նրա անշեղ վերելքը ծառայի հասարակության բոլոր անդամների բարօրությանն ու բազմակողմանի ծաղկմանը։ Եվ երբ «հասարակական հարստության բոլոր աղբյուրները բխեն հորդառատ գետի պես», կարող ենք ասել, որ իրականացրել ենք մարքս-լենինյան գիտության մեծ ռահվիրաների իդեալը՝ անցումը տարերային անհրաժեշտության տիրապետությունից ազատության տիրապետությանը։

Եթե հանրագումարի բերելու լինենք սոցիալական ազատության հիմքը, ապա կարող ենք եզրակացնել, որ տնտեսական օրենքները ինչպես կապիտալիզմի, այնպես էլ սոցիալիզմի ժամանակ, կախում չունեն մարդկանց կամքից ու ցանկությունից։ Նոր հասարակարգի կառուցումը մեր երկրում, իր բոլոր նվաճումներով ու անհաջողություններով, տեսության այդ դրույթը ոչ միայն հաստատել, այլև բազմաթիվ ուղղություններով հարստացրել է ու առաջ մղել։ Այժմ բոլորի համար էլ պարզ է, որ ամենամեծ հեղինակություններն անգամ, ովքեր հաշվի չեն նստում տնտեսական օրենքների օբյեկտիվ բնույթի հետ, ճակատով գրանիտե պատին են խփվում։ Տնտեսական կառավարման մեջ ազատության իմաստը օրենքների բնույթին համապատասխան գործելու, սրանց կոնկրետ դրսևորումները հաշվի առնելու մեջ է։ Այդ օրենքները, իհարկե, սոցիալիզմի ժամանակ այլ բնույթ են ստանում, փոխվում են դրսևորման ձևերը, պահանջները, բայց դրանից նրանց օբյեկտիվ բնույթը չի փոխվում, չի չքանում։ Հետևաբար, հասարակական այն ղեկավար օրգանները, որոնք ստանձնում են սոցիալիստական արտադրության կազմակերպման ու կառավարման ֆունկցիան, իրենց գործունեությունը նպատակասլաց և արդյունավետ դարձնելու համար առաջին ու հիմնական խնդիրը պետք է համարեն այդ օրենքների դրսևորման նոր ձևերի ուսումնասիրությունը, տնտեսական անհրաժեշտության գործնական բովանդակության բացահայտումը։ Առանց դրա նրանք չեն կարող խույս տալ տարերայնությունից։ Այդ խնդիրը վաղանցիկ ու ժամանակավոր չէ, այլ ամենօրյա է, հարատև։ Այն չի չքանում և գնալով ավելի կազմակերպված ու գիտական բնույթ է ստանում, քանի որ բոլոր հասարակական ձևերի պայմաններում, որքան էլ այն զարգացած լինի, մարդը միշտ պետք է իմանա, թե ինչ պետք է արտադրել ու ինչպես բաշխել, ինչպես կազմակերպել արտադրությունը։

---

Մարքսիզմի հիմնադիրների աշխատությունների ուշադիր ուսումնասիրության միջոցով կարելի է աներկբայորեն համոզվել, որ նրանք ազատ կոնկուրենցիային բացասող ու նրան փոխարինող վերջին բարձրագույն ձևերն են համարել՝ խոշոր ակցիոներական ընկերությունները և մոնոպոլիստական միությունները։

Անտի-Դյուրինգում Էնգելսը եկել է այն հետևության, որ երբ «արդյունաբերության մի ամբողջ ճյուղ վերածվում է մի ամբողջական հսկայական ակցիոներական ընկերության, ներքին կոնկուրենցիան (խոսքը ազատ կոնկուրենցիայի մասին է—Հ. Գ.) տեղի է տալիս... ընկերության մոնոպոլիային տվյալ երկրի ներսում» (Անտի-Դյուրինգ, Հայպետհրատ, 1952, էջ 355)։

Մարքսի տեսակետով թեև «ակցիոներական ընկերությունները երևան են գալիս նաև նրա (կապիտալիզմի—Հ. Գ.) սկզբնական շրջանում» էլ, բայց և այնպես նրանք հանդիսանում են «բուրժուական հասարակության վերջին ձևերից մեկը» (Քաղաքատնտեսության քննադատության շուրջը, էջ 267)։ Նկատելով, որ երկաթուղային տրանսպորտի զարգացումը կապիտալի խոշոր համակենտրոնացում պահանջելու միջոցով զանազան տեսակի «հսկայական ակցիոներական ընկերությունների առաջացման» հիմք է դառնում, Մարքսը 1879 թվականին Վ. Դանիելսոնին գրում էր, որ երկաթուղիների մուտքը «առաջավոր երկրներում» արագացրել է «Կապիտալիստական արտադրության զարգացման վերջին ստադիան, հետևապես, և նրա վերջնական կերպարանափոխությունը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Նամակներ «Կապիտալի» մասին, 1954, էջ 263)։ Ելնելով նրանից, որ խոշոր ակցիոներական ընկերությունները «Կապիտալիստական արտադրության բարձրագույն զարգացման արգասիքն» են, Մարքսը նշում էր, որ նրանք հանդիսանում են «մի անհրաժեշտ անցումնակետ դեպի կապիտալի ետփոխարկումն արտադրողների սեփականության», որտեղ արտադրության միջոցները կդառնան «ընկերակցած, ասոցիացիայի մեջ գտնվող արտադրողների... անմիջաբար հասարակական սեփականություն» (Կապիտալ, հ. 3, մաս I, էջ 427)։

Այսպիսով, ինչպես տեսնում ենք, Մարքսի ու Էնգելսի ըմբռնումների համաձայն ակցիոներական ընկերությունները ազատ մրցման հակադրությունն ու բացասումն են։ Լինելով կապիտալիստական արտադրության բարձրագույն զարգացման արգասիքը, դրանք կապիտալիստական հասարակության վերջին ձևերից մեկն են և արտահայտում են կապիտալիստական արտադրության զարգացման վերջին ստադիան և նրա վերջնական կերպարանափոխությունը, անհրաժեշտ անցումնակետեր արտադրության միջոցների կապիտալիստական սեփականությունը սոցիալիստական սեփականության վերածելու համար։

«Կես դար սրանից առաջ,—գրել է Լենինը,—երբ Մարքսը գրում էր իր «Կապիտալ»-ը, տնտեսագետների ճնշող մեծամասնությանը ազատ կոնկուրենցիան «բնության օրենք» էր թվում։ Կազյոնի գիտությունը փորձում էր լռության դավադրության միջոցով ոչնչացնել Մարքսի աշխատությունը, որը կապիտալիզմի թեորիական ու պատմական վերլուծությամբ ապացուցել էր, թե ազատ կոնկուրենցիան արտադրության համակենտրոնացում է ծնում, իսկ այս համակենտրոնացումը իր զարգացման որոշ աստիճանում դեպի մոնոպոլիա է տանում» (Երկեր, հ. 22, էջ 258—259)։

Լենինի այս հիանալի բնութագրումից երևում է, որ արտադրության համակենտրոնացման հետևանքով մոնոպոլիաների առաջացման տնտեսական օրենքը, որի գործողությունների շնորհիվ իրականացել է անցումն ազատ կոնկուրենցիայի կապիտալիզմից մոնոպոլիստական կապիտալիզմին, Մարքսն է հայտնագործել։ Անկասկած, այդ տնտեսական օրենքի մասին, ուրեմն նաև ազատ կոնկուրենցիայից մոնոպոլիային անցնելու մասին մարքսիստական ուսմունքը դեռ հայտնի չափով վերացական էր։ Քանի որ այն ժամանակ իմպերիալիզմը դեռ նոր էր կազմավորվում, և Մարքսն ու Էնգելսը այդ օրենքի գործողությունները հասունացած իմպերիալիզմի պայմաններում հետազոտելու հնարավորություն չունեցան, ուստի, բնականորեն, նրա տեղն ու դերը ինչպես հարկն է, հստակ կերպով որոշել չկարողացան։ Միայն հետագայում, երբ Լենինը հետազոտեց արդեն լիովին հասունացած իմպերիալիզմը նրա կազմավորումից մինչև նրա տրամաբանական վախճանն ու եկավ այն գիտական հետևության, որ «Արտադրության համակենտրոնացման հետևանքով մոնոպոլիաների առաջացումն ընդհանրապես կապիտալիզմի զարգացման արդի ստադիայի ընդհանուր և հիմնական օրենքն է» (Նույն տեղը, էջ 259։ Ընդգծումն իմն է — Հ. Գ.), առաջին անգամ տվյալ օբյեկտիվ օրենքի մասին մարքսիստական ուսմունքը միանգամայն կոնկրետ և պարզորոշ տեսք ընդունեց։

Այսպիսով, եթե այդ տնտեսական օրենքի հայտնագործումը Մարքսի անվիճելի երախտիքն է, ապա նրա տեղի և դերի որոշումը, նրա կոնկրետացումը և սահմանումը՝ որպես մոնոպոլիստական կապիտալիզմի ընդհանուր և հիմնական օրենքի, Լենինի երախտիքն է։ Այդ օրենքի մասին Մարքսի և Լենինի ուսմունքը մեկ միասնական ամբողջություն են կազմում։

Կապիտալիզմի տեսական և պատմական վերլուծության միջոցով պարզելով, որ արտադրության համակենտրոնացումը որոշ աստիճանում դեպի մոնոպոլիա է տանում, Մարքսն ու Էնգելսը, այնուհետև, քայլ առ քայլ հետևել են մոնոպոլիստական միությունների առաջացման ու զարգացման պրոցեսներին և կապիտալիզմի կյանքի այդ նորագույն փաստերից համապատասխան հետևություններ են արել, որքան որ այն ժամանակ դա հնարավոր էր։

Էնգելսը, 1891 թվականին, իր Սոցիալիզմի զարգացումը ուտոպիայից դեպի գիտություն աշխատության չորրորդ հրատարակության առաջաբանում հատուկ նշել է, որ ինքը տրեստների, որպես կապիտալիստական «արտադրության նոր ձևի մասին», «կարևոր լրացումներ» է արել, որովհետև տրեստն այդ «ժամանակամիջոցում կարևոր նշանակություն է ձեռք բերել» (Ֆ. Էնգելս, Սոցիալիզմի զարգացումը ուտոպիայից դեպի գիտություն, Հայպետհրատ, 1948 թ., էջ 7—8)։ Այնուհետև, 1894 թվականին, Կապիտալ-ի երրորդ հատորին արած լրացումներում, ընդհանրացնելով ազատ կոնկուրենցիայի կապիտալիզմից մոնոպոլիստական կապիտալիզմին անցման ժամանակաշրջանում տեղի ունեցող կերպարանափոխությունների ընթացքը, Էնգելսը գրել է. «Մրցման վաղուց ի վեր փառաբանված ազատությունը հոգեվարքի մեջ է, և նա ինքն ստիպված է իր բացահայտ խայտառակ սնանկությունը խոստովանելու» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 3, մ. 1, էջ 427—428—ընդգծ. իմն է։—Հ. Գ.)։ Նրա սնանկությունն, ըստ Էնգելսի, արտահայտվում է նրանում, որ արդեն ամեն մի երկրում որոշ ճյուղի խոշոր արդյունաբերողները միմյանց հետ միանալով ստեղծում են կարտելներ, սինդիկատներ, տրեստներ և դրա շնորհիվ «ազատ կոնկուրենցիան դառնում է մոնոպոլիա» (Անտի-Դյուրինգ, էջ 356)։

Չթուլացող ուշադրությամբ հետևելով կապիտալիզմի կերպարանափոխությունների ընթացքին, 1895 թվականին՝ իր կյանքի վերջին տարում, դարձյալ Կապիտալ-ի երրորդ հատորին արած լրացման մեջ, որը գրել է «Բորսա» վերտառությամբ և ցավոք թողել է պլանկոնսպեկտի վիճակում, Էնգելսն արտադրության կապիտալիստական եղանակի՝ դեպի մոնոպոլիաների տիրապետությունը տանող զարգացումն ավելի որոշակի է արտահայտել։ Տեսնելով, որ ակցիոներական ընկերությունները և մոնոպոլիստական միությունները բորսայի միջոցով հասարակության գործունեության հիմնական բնագավառներն իրենց ձեռքում են կենտրոնացնում, Էնգելսը նշել է, որ Կապիտալ-ի երրորդ հատորը գրվելուց հետո (1865 թ.) «փոփոխություն է տեղի ունեցել, որ շատ ավելի բարձր և դեռ անընդհատ աճող դեր է հատկացնում բորսային և որն իր հետագա զարգացման մեջ տենդենց ունի բորսայականների (կարդա՝ ակցիոներական ընկերությունների և մոնոպոլիստական միությունների—Հ. Գ.) ձեռքում համակենտրոնացնելու ինչպես արդյունաբերական, այնպես և երկրագործական ամբողջ արտադրությունը և ամբողջ շրջանառությունը՝ ինչպես հաղորդակցության միջոցները, այնպես և փոխանակության ֆունկցիան։ Այսպիսով, բորսան դառնում է կապիտալիստական արտադրության ամենից աչքի ընկնող ներկայացուցիչը» (Ֆ. Էնգելս. Լրացումներ «Կապիտալ»-ի երրորդ հատորին, Բորսա, Կ. Մարքս. Կապիտալ, հատ. 3, մաս 2, էջ 448)։

Եվ ահա այս ամենից հետո Ստալինն ասում է՝ Մարքսն ու Էնգելսը կապիտալիզմի հին փուլին փոխարինելու եկող նոր փուլի պայմանների մասին միայն կռահումներ են արել։ Իսկ Լեոնտևն շտապում է ավելացնել, թե այնուամենայնիվ Էնգելսը, կապիտալիզմի զարգացման նոր ստադիայի հարցը չի դրել։ Այո՛, եթե մենք հարցին մոտենանք ոչ թե ըստ էության, այլ ըստ ձևի, իրոք որ Էնգելսը բառացի կերպով այդ հարցը երբեք չի դրել։ Ո՛չ Մարքսը և ո՛չ էլ Էնգելսն իրենց աշխատություններում երբեք բառացիորեն չեն խոսել այն մասին, որ հոգեվարքի մեջ գտնվող ազատ կոնկուրենցիայից անցումը մոնոպոլիային հենց է՝ ազատ կոնկուրենցիայի կապիտալիզմից անցում մոնոպոլիստական կապիտալիզմի կամ, որը դարձյալ նույնն է, կապիտալիզմի զարգացման ստորին ստադիայից անցում բարձրագույնին։

Բայց մի՞թե բանը բառերն են և ոչ թե գործի բուն էության զարգացումը։ Մի՞թե Մարքսն ու Էնգելսը երբևէ բառացի կերպով խոսել են այն մասին, որ հավելյալ արժեքի արտադրության օրենքը կապիտալիզմի հիմնական տնտեսական օրենքն է։ Կամ երբ նրանք իրենց Կոմունիստական մանիֆեստում (թեկուզ և վերացականորեն), խոսել են տիրող դասակարգ կազմակերպված պրոլետարիատի պետության մասին, մի՞թե հենց պրոլետարիատի դիկտատուրայի մասին չեն խոսել։

Լենինը բազմիցս ընդգծել է, որ կապիտալիստական ֆորմացիայի ստորին ստադիայից նրա բարձրագույնին անցման բնապատմական «պրոցեսի մեջ տնտեսապես հիմնականը՝ կապիտալիստական ազատ կոնկուրենցիան կապիտալիստական մոնոպոլիաներով փոխարինելն է» (Երկեր, հատ. 22, էջ 353)։ Իսկ Մարքսն ու Էնգելսը, ինչպես տեսանք, ոչ միայն բացահայտել են այդ փոխարինման հիմնական օրենքը, այլև հայտնի չափով նաև ցույց են տվել, որ զարգացման բնապատմական պրոցեսն ընթանում է մոնոպոլիաներին տիրապետող դարձնելու ուղղությամբ։

Բարձր գնահատելով Էնգելսի ծառայությունները այդ գործում, Լենինն իր Պետություն և հեղափոխություն աշխատության մեջ գրել է.

«անցողակի կերպով նշենք, որ Էնգելսն էկոնոմիկայի հարցերի վերաբերմամբ ևս մի վերին աստիճանի արժեքավոր մատնանշում է անում, որը ցույց է տալիս, թե նա որքան ուշադիր ու լրջմտորեն է հետևել հենց նորագույն կապիտալիզմի կերպարանափոխություններին»։ Եվ որ ամենակարևորն է, Լենինը նշել է, որ Էնգելսը վերցրել է «նորագույն կապիտալիզմի, այսինքն՝ իմպերիալիզմի բնորոշ գնահատման ամենից ավելի հիմնական կողմը, այն է՝ կապիտալիզմը մոնոպոլիստական կապիտալիզմի է փոխարկվում» (Երկեր, հատ. 25, էջ 573։ Ընդգծումն իմն է—Հ. Գ.)։

Այստեղ, ինչպես տեսնում ենք, կոմենտարներն ավելորդ են։ Ասված է պարզ ու որոշակի. ուշադիր և լրջմիտ կերպով հետևելով նորագույն կապիտալիզմի կերպարանափոխություններին, Էնգելսը վերցրել է նրա տեսական գնահատման ամենահիմնական կողմը, այսինքն այն, որ ազատ կոնկուրենցիայի կապիտալիզմը մոնոպոլիստական կապիտալիզմի է փոխարկվում։

Լենինն այնուհետև նշել է, որ Էնգելսը նաև «որոշ չափով կանխատեսել» է «իմպերիալիստական էպոխայի խնդիրները» (Երկեր, հատ. 25, էջ 573)։ Զարգացած կապիտալիստական երկրների ուսումնասիրությամբ համոզվելով, որ մոնոպոլիստական միությունները արտադրության համակենտրոնացումը հասցնում են մինչ այդ չտեսնված չափերի և այդպիսով, տարերայնորեն սոցիալիզմի համար ավելի շատ նյութական նախադրյալներ են ստեղծում, Էնգելսը եկել է այն հետևության, որ կապիտալիստական արտադրության այն ճյուղը, որում ազատ կոնկուրենցիային փոխարինել է մոնոպոլիան, արդեն «...ամենագոհացուցիչ կերպով նախապատրաստված է ամբողջ հասարակության, ազգի ձեռքով կատարվելիք ապագա սեփականացման համար» (Կ. Մարքս, Կապիտալ, հատ. 3, մաս 1, էջ 428)։ Նկատելով, որ նորաստեղծ մոնոպոլիաներն ավելի և ավելի ծանրացնում են աշխատավորների շահագործումը, վատթարացնում նրանց վիճակը, սրում և խորացնում կապիտալիզմի հակասությունները, Էնգելսը եզրակացրել է, որ մոնոպոլիստական միությունները զգալիորեն արագացնում են կապիտալիզմի կործանումը։ «Ոչ մի ժողովուրդ,—գրել է նա,—չէր համաձայնի երկար ժամանակ հաշտվել տրեստների ղեկավարած արտադրության հետ», որոնք անքող կերպով շահագործում են ամբողջ հասարակությունը»։ «Իր այդ ձևով շահագործումը դառնում է այնքան շոշափելի, որ պետք է խորտակվի» (Ֆ. Էնգելս, Անտի-Դյուրինգ, էջ 356)։

Էնգելսի այս ճանճարեղ կանխատեսումը ցույց է տալիս, որ այդ մեծ մտածողը դեռ անցյալ դարի 90-ական թվականներին, կապիտալիզմի զարգացման տենդենցների ուսումնասիրությամբ ընդհուպ մոտեցել է այն հետևությանը, որ մոնոպոլիաների տիրապետության վրա խարսխված կապիտալիզմն արդեն մեռնող կապիտալիզմ է, արդեն իսկ սոցիալիստական հեղափոխության նախօրեն։

Ամփոփենք։ Ուրեմն, մեր ըմբռնումների համաձայն, ինչպես այն տեսակետը, թե Մարքսն ու Էնգելսը միայն կռահումներ են արել կապիտալիստական ֆորմացիայի հին փուլին փոխարինելու եկող նոր փուլի պայմանների մասին (Ստալին), այնպես էլ այն տեսակետը, թե նրանք կապիտալիզմի ողջ զարգացումը ազատ կոնկուրենցիայի կապիտալիզմի տիրապետության ձևով են պատկերացրել (Լեոնտև), իրականությանը չեն համապատասխանում։ Ուստի, մենք գտնում ենք, որ գոնե այժմ, երբ գիտության վրա անհատի պաշտամունքի բացասական ազդեցությունները հաղթահարված են և նրա ստեղծագործական զարգացման համար նորմալ մթնոլորտ է ստեղծված, հարկավոր է առանց որևէ նախապաշարմունքի, նման ոչ ճիշտ գնահատականներից համարձակորեն անցնել լենինյան գնահատականներին, որոնք իրականության գիտական ադեկվատ արտացոլումն են։

Մարքսիզմի հիմնադիրների համապատասխան աշխատությունների համբերատար ուսումնասիրությունը և Լենինի տված գնահատականների մանրազնին վերլուծությունը մեզ բերել է այն հետևության, որ այն չափով, որչափով Մարքսն ու Էնգելսը հետազոտել են կապիտալիզմի զարգացման ստորին ստադիայից նրա վերջին, բարձրագույն ստադիային անցման ժամանակաշրջանում երևան եկած նորագույն փաստերը և դրանց հիման վրա արել համապատասխան գիտական հետևություններ, որչափով նրանք բացահայտել են որոշ տնտեսական օրենքներ և կատեգորիաներ, որոնք անմիջականորեն կապիտալիզմի զարգացման բարձրագույն ստադիային են վերաբերում, այդ չափով նրանք իրենց որոշ լուման են մտցրել իմպերիալիզմի տեսության մեջ։ Ընդսմին, ինքնըստինքյան հասկանալի է, որ տեսության մեջ որոշ լումա մտցնելը և այդ տեսությունը որպես գիտականորեն սիստեմավորված ամբողջություն ստեղծելը, միանգամայն տարբեր մեծություններ են։

Ի՞նչ է նշանակում այս կամ այն հասարակական ֆորմացիայի մասին կամ նրա զարգացման այս կամ այն ստադիայի մասին ստեղծել ամբողջական, սիստեմավորված, գիտական մատերիալիստական ուսմունք։ Դա նշանակում է գիտականորեն վերլուծել նրա արտադրության եղանակը, արտադրողական ուժերը և արտադրական հարաբերությունները, բազիսը և վերնաշենքը, դասակարգերը և դասակարգային հարաբերությունները, բացահայտել նրա շարժման ու զարգացման պրոցեսները կառավարող օրենքները և ցույց տալ այն հիմնական առանձնահատկությունները, որոնք այդ ֆորմացիան կամ այդ ստադիան տարբերում են մյուսներից։

Իսկ այդպիսի բազմակողմանի ու խոր հետազոտման համար անհրաժեշտ է, որ տվյալ հասարակական ֆորմացիան կամ նրա տվյալ ստադիան ստեղծված լինի։ Այլ կերպ ասած՝ անհրաժեշտ է համապատասխան հասարակական, պատմական պրակտիկա, որի հիման վրա տվյալ տեսությունը կարող է ստեղծվել։

Ինչո՞ւ Մարքսը կարողացավ կապիտալիստական ֆորմացիայի զարգացման ստորին ստադիայի մասին խոր և բազմակողմանիորեն մշակված ամբողջական-գիտական ուսմունք ստեղծել։ Որովհետև նրա ապրած դարաշրջանում այդ ստադիան արդեն առկա էր, որովհետև համապատասխան հասարակական-պատմական պրակտիկան արդեն գոյություն ուներ։

Ինչո՞ւ Մարքսն ու Էնգելսը, բացառիկ հանճարներ լինելով հանդերձ, իմպերիալիզմի մասին բազմակողմանիորեն մշակված, ամբողջական ուսմունք ստեղծել չէին կարող։ Որովհետև նրանց ապրած դարաշրջանում իմպերիալիզմը դեռևս լիովին ձևավորված փաստ չէր դարձել, որովհետև բավարար չափով համապատասխան-պատմական պրակտիկա չկար։

Այդպիսի ուսմունք ստեղծելու համար պատմական պայմանները լիովին հասունացան և նրա ստեղծումը դարաշրջանի հրամայական պահանջը դարձավ միայն այն ժամանակ, երբ «անցումը քանակից դեպի որակը, անցումը զարգացած կապիտալիզմից դեպի իմպերիալիզմ» իրականացավ (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 22, էջ 355)։ Եվ նրա հանճարեղ ստեղծողը հանդիսացավ Լենինը։

Հենվելով Մարքսի և Էնգելսի տեսական ժառանգության գրանիտյա պատվանդանի վրա, հատկապես Կապիտալ-ի հիմնական դրույթների վրա, Լենինն իր Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա աշխատության մեջ ու մի շարք այլ աշխատություններում, հարուստ փաստական նյութի պատմական-կոնկրետ հետազոտման միջոցով կապիտալիստական ֆորմացիայի զարգացման վերջին, բարձրագույն ստադիայի գիտական, մատերիալիստական վերլուծությունն ու բնութագիրը տվեց այնպիսի խորությամբ ու բազմակողմանիությամբ, այնպիսի կատարյալ ձևով ու մեթոդներով, որ մինչև օրս ոչ-ոքի կողմից գերազանցված չէ։

Ստեղծելով իմպերիալիզմի գիտական տեսությունը՝ Լենինն ամենից առաջ պետք է լուծեր այն կարևոր հարցը, թե իրենից ինչ է ներկայացնում իմպերիալիզմը, պետք է տար նրա գիտական բնորոշումը։ Եվ նա այդ բազմաբարդ պրոբլեմը լուծել է հանճարեղորեն։

Կապիտալիզմի զարգացման վերջին ստադիայի արտադրական, տնտեսական հարաբերությունների ու այդ հարաբերություններով պայմանավորված տնտեսական օրենքների առանձնահատկությունների վերլուծման միջոցով բացահայտելով, որ կապիտալիստական ֆորմացիայի զարգացման ստորին ստադիայից նրա բարձրագույնին անցման պրոցեսի մեջ և ողջ հետագա զարգացման ընթացքում տնտեսական տեսակետից էականը, հիմնականը, որոշիչը ազատ կոնկուրենցիայի փոխարինումն է մոնոպոլիայով, որ մոնոպոլիաները իմպերիալիզմի առանձնահատկությունների հիմնական կրողներն են, Լենինը եկավ այն եզրակացության, որ իմպերիալիզմը կապիտալիզմի զարգացման հատուկ մոնոպոլիստական ստադիան է, որ այն մոնոպոլիստական կապիտալիզմ է։

Ըստ Լենինի որքանով որ այս բնորոշումն իր մեջ ընդգրկում է ամենագլխավորը և շատ հակիրճ է, այդ տեսակետից այն չափազանց հարմար է։ Բայց մյուս կողմից, քանի որ այն շատ նեղ է և չի ընդգրկում իմպերիալիզմի մի քանի էական գծերը, ուստի և անբավարար է։

Այդ պատճառով էլ Լենինը տվել է նաև իմպերիալիզմի լայն բնորոշումը, որը պարունակում է նրա մեզ հայտնի հինգ հիմնական հատկանիշները։

Այնուհետև, գնալով իրից դեպի իրադրությունը, այսինքն՝ հետազոտելով կապիտալիստական ֆորմացիայի վերջին ստադիայի փոփոխման ու զարգացման դիալեկտիկան, Լենինը որոշել է նրա պատմական տեղը, բացահայտել է նրա պատմական տենդենցը։ Նա ապացուցել է, որ կապիտալիզմի զարգացման տվյալ ստադիայի առանձնահատկությունները եռակի են. իմպերիալիզմը՝ ա) մոնոպոլիստական կապիտալիզմ է. բ) պարազիտային կամ նեխող կապիտալիզմ է. գ) մեռնող կապիտալիզմ է։

Իմպերիալիզմն, ըստ Լենինի, մարդկությանն ընդհուպ մոտեցնում է սոցիալիզմին, այն սոցիալիստական հեղափոխության նախօրեն է։ Լենինի աշխատություններում, ամենուրեք, նրա իմպերիալիզմի մասին տեսությունը և սոցիալիստական հեղափոխության տեսությունը ներքին, օրգանական միասնության մեջ են գտնըվում։ Եվ, այդ բոլոր բնագավառներում Լենինն իր հանճարեղ նախորդների համեմատ, գիտական խոշոր քայլ է արել դեպի առաջ։

Մարքսն ու Էնգելսն ապացուցել էին, որ կապիտալիզմն անցողիկ հասարակարգ է, նա անխուսափելիորեն պետք է կործանվի։ Լենինը ապացուցեց, որ կապիտալիզմի զարգացման իմպերիալիստական ստադիայում սոցիալիստական հեղափոխությունները անմիջական օրակարգի հարց են դառնում։

Ելնելով իրենց ապրած ժամանակի պատմական պայմաններից՝ Մարքսն ու Էնգելսը գտնում էին, որ սոցիալիստական հեղափոխությունը կարող է հաղթանակել զարգացած կապիտալիստական երկրներում միասին վերցրած։ Բացահայտելով իմպերիալիզմի տնտեսական ու քաղաքական անհամաչափ զարգացման օրենքը, Լենինը եկավ այն հետևության, որ այսուհետև, տարբեր երկրներում պրոլետարական հեղափոխությունները կհասունանան տարբեր ժամանակներում։ Հետևաբար, սոցիալիզմի հաղթանակը հնարավոր է սկզբնապես մի քանի, կամ նույնիսկ մեկ առանձին երկրում։

Իմպերիալիզմի և սոցիալիստական հեղափոխության մասին իր դիալեկտիկական մատերիալիստական ուսմունքը մշակելիս, Լենինը մշտապես հենվել է կապիտալիզմի տնտեսական օրենքների կերպարանափոխությունների ուսումնասիրման ու հետազոտման վրա, բացահայտել նրա հիմնական տնտեսական օրենքը, որը իմպերիալիզմի տեսության մեջ անկյունաքարային նշանակություն ունի։

Կապիտալ-ում Մարքսը ապացուցել էր, որ հավելյալ արժեքի արտադրության օրենքը հանդիսանում է արտադրության կապիտալիստական եղանակի շարժման հիմնական տնտեսական օրենքը և այն ազատ կոնկուրենցիայի կապիտալիզմի պայմաններում դրսևորվում է միջին շահույթի օրենքի ձևով։

Շարունակելով և զարգացնելով Մարքսի ուսմունքը կապիտալիզմի հիմնական տնտեսական օրենքի մասին, Լենինը ապացուցեց, որ հավելյալ արժեքի օրենքը մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում, ենթարկվելով էական կերպարանափոխության, դրսևորվում է մոնոպոլ շահույթի օրենքի ձևով։ Ինչպես որ կապիտալիստական ֆորմացիան ամբողջական սոցիալական օրգանիզմ լինելով հանդերձ հանդես է գալիս իր զարգացման տարբեր ստադիաների ձևով, նրանց մեջ, նրանց միջոցով, այնպես էլ հավելյալ արժեքի արտադրության բացարձակ օրենքը հանդես է գալիս միջին շահույթի օրենքի և մոնոպոլ շահույթի օրենքի ձևերով։

Եթե հավելյալ արժեքի արտադրության օրենքը վերցնենք իր դրսևորման ձևերից դուրս, նա կարտահայտի միայն այն ներքին հիմնական առանձնահատկությունները, որոնք ողջ կապիտալիստական ֆորմացիայի համար ընդհանուր են, սակայն նրա զարգացման ստադիաների տարբերիչ առանձնահատկությունները չի արտահայտի։ Մինչդեռ, միջին շահույթի օրենքը և մոնոպոլ բարձր շահույթի օրենքը, յուրաքանչյուրն իրեն համապատասխանող ստադիայի շրջանակներում, արտացոլում են և՛ ընդհանուրը, և՛ առանձնահատուկը։ Այդ երկու օբյեկտիվ օրենքները, որոնք կապիտալիստական ֆորմացիայի զարգացման ստադիաների համար (համապատասխանորեն) հանդես են գալիս որպես հիմնական տնտեսական օրենքներ, կերպարանափոխված ձևերով արտահայտում են հենց հավելյալ արժեքի օրենքի գործողությունները։

Ինչպես որ ազատ կոնկուրենցիայի կապիտալիզմը և իմպերիալիզմը զարգացման տարբեր ստադիաներ լինելով հանդերձ կապիտալիզմ են, նրանց արմատական բովանդակությունը կապիտալիզմն է, այնպես էլ միջին շահույթի օրենքը և մոնոպոլ շահույթի օրենքը, կապիտալիզմի զարգացման տարբեր ստադիաների հիմնական տնտեսական օրենքներ լինելով հանդերձ, միևնույն հավելյալ արժեքի օրենքի դրսևորումներն են։ Նրանց արմատական բովանդակությունը նորից ու նորից հավելյալ արժեքի արտադրությունն է։ Եվ ընդամին, սրանից ամենևին չի հետևում, թե այդ ստադիալ օրենքները միմյանցից տարբեր օրենքներ չեն։ Որչափով որ ազատ կոնկուրենցիայի կապիտալիզմը և իմպերիալիզմը միևնույն կապիտալիստական ֆորմացիայի երկու բաղկացուցիչ մասերը լինելով հանդերձ, միմյանցից որակապես տարբերվում են և զարգացման տարբեր ստադիաներ են, նույն չափով էլ միջին շահույթի օրենքը և մոնոպոլ բարձր շահույթի օրենքը միևնույն հավելյալ արժեքի օրենքի կերպարանափոխված դրսևորումները լինելով հանդերձ, միաժամանակ, տարբեր տնտեսական օրենքներ են։ Եվ հետևաբար Լենինի կողմից մոնոպոլ բարձր շահույթի էության ու ստացման եղանակների բացահայտումը էապես տնտեսական նոր օրենքի հայտնագործումն էր։

Ինչպես որ Մարքսը արտադրության կապիտալիստական եղանակի բազմակողմանի ու խոր դիալեկտիկական-մատերիալիստական վերլուծության միջոցով բացահայտեց նրա ծագման, զարգացման և կործանման օրենքները, և այդ իմաստով, կարելի է ասել, հայտնագործեց կապիտալիստական ֆորմացիան, նմանապես էլ Լենինը բացահայտելով այդ ֆորմացիայի զարգացման վերջին, բարձրագույն ստադիայի օրենքները և որոշելով նրա հիմնական առանձնահատկություններն ու շարժման պատմական տենդենցները, հայտնագործեց իմպերիալիզմը։

Ահա թե ինչու իմպերիալիզմի տեսությունը կոչվում է Լենինի անունով։ Ահա թե ինչու կապիտալիստական ֆորմացիայի մասին գիտական-մատերիալիստական ուսմունքի մեջ լենինյան ժառանգությունն, իրավամբ, նոր էտապ է։




## ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՈՒԺԸ ՆՐԱ ՄԱՐՏՈՒՆԱԿՈՒԹՅԱՆ ՄԵՋ Է



Ս. ԽԱՉԱՏՐՅԱՆ
ՀԿԿ Հրազդանի շրջկոմի առաջին քարտուղար

Կոմունիստական շինարարության ժամանակակից պայմաններում, ինչպես նշված է ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումներում, օրինաչափորեն աճում է կոմունիստական կուսակցության դերը երկրի քաղաքական, տնտեսական ու կուլտուրական կյանքում։ Ելնելով դրանից, համագումարը, միաժամանակ, առանձնահատուկ ուժով ու բացառիկ հոգատարությամբ խնդիր դրեց բարձրացնել սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակությունը, արմատապես բարելավել նրանց ղեկավարությունը և այդ գործը համարեց բոլոր կուսակցական կոմիտեների, հատկապես կուսակցական քաղաքային և շրջանային կոմիտեների գլխավոր խնդիրը։

Կուսակցության հիմքը սկզբնական կուսկազմակերպություններն են, մասսաների մարտական կազմակերպիչները, որոնց գործունեությամբ է պայմանավորված, վերջին հաշվով, կուսակցության ուժն ու հզորությունը, նրա դերի հետագա բարձրացումը։

Սկզբնական կուսկազմակերպությունները միավորում և ուղղություն են տալիս կուսկազմակերպության բոլոր անդամների գործունեությանը։ Այստեղ են կոմունիստները ստանում կուսակցական դաստիարակություն, քաղաքական կոփվածք, այստեղ են նրանք ձևավորվում որպես կուսակցության գործի ակտիվ ու անձնվեր մարտիկներ։

Սկզբնական կուսկազմակերպությունները գործում են մասսաների խորքում, անմիջականորեն կապված են աշխատավորական լայն զանգվածների հետ, մասսաներին են հասցնում կուսակցության բոցաշունչ խոսքը, նրա կանխագծումները, նրա որոշումները, մոբիլիզացնում են աշխատավորության ուժերը կուսակցության առաջադրած քաղաքական, տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրների լուծման համար։

Մեր կյանքում քիչ չեն նաև բացասական երևույթները. սկզբնական կուսկազմակերպությունները առաջինն են բախվում կյանքի բոլոր բացասական երևույթների հետ, պայքարում և հաղթահարում դրանք։

ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները մեծ նշանակություն ունեն նաև Հրազդանի շրջանային կուսկազմակերպության համար. օր-օրի ընդլայնվում է պայքարի ճակատը, քաղաքական-կազմակերպական աշխատանքի ասպարեզը։ Ընթացիկ տարում պահանջվում է շեշտակի բարելավել արդյունաբերական և գյուղատնտեսական ձեռնարկությունների գործունեու-

թյունը, բարձրացնել նրանց տնտեսական ցուցանիշները, ապահովել արտադրական պլանների կատարումը, բարձրացնել արտադրանքի որակը, համատեղել աշխատավորների բարեկեցության հետագա բարձրացման, ավելի մեծ արդյունավետությամբ զբաղվել աշխատավորների կոմունիստական դաստիարակության հարցերով։

Սակայն այդ խնդիրների լուծումը չի կարելի պատկերացնել առանց սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման, առանց կուսանդամ-թեկնածուների գործունեության ակտիվացման։

Ներկայումս շրջանում գործում են 109 սկզբնական կուսկազմակերպություններ, 44 արտադրամասային կուսկազմակերպություններ և կուսակցական խմբեր։ Դրանք ընդգրկում են բոլոր արդյունաբերական ձեռնարկությունները, կոլտնտեսություններն ու սովխոզները, դպրոցներն ու հիվանդանոցները, տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր վճռական տեղամասերը։ Դրանք խոշոր ուժ են, եթե մշտապես գտնվում են մարտունակ վիճակում, տնտեսական, քաղաքական և կուլտուրական շինարարության բարդ ու պատասխանատու խնդիրների մակարդակին։

Մեր կուսակցությունը կառավարող կուսակցություն է։ Նա է մշակում երկրի տնտեսական քաղաքականությունը և այն նրա անմիջական ղեկավարությամբ է իրականացվում։ Այդ հանգամանքը ինքնին մեծ պարտականություններ է դնում ՍՄԿԿ հիմքը հանդիսացող սկզբնական կուսկազմակերպությունների վրա։ Դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինը նշում էր, որ տնտեսական գործը մեզ համար ամենահետաքրքրական քաղաքականությունն է, իսկ կուսակցության X համագումարը խնդիր դրեց՝ կուսակցական բջիջները վերածել կուսակցության տնտեսական աշխատանքի մարտական օրգանների։

Ահա թե ինչու յուրաքանչյուր սկզբնական կուսկազմակերպության մարտունակության գլխավոր չափանիշը արտադրության, էկոնոմիկայի, կուլտուրական շինարարության կուսակցական ղեկավարման հմտությունն է, կուսակցության տնտեսական քաղաքականության կոնկրետ իրականացման կարողությունը։

Արտադրության կուսակցական ղեկավարումը ընդհանուր ոչինչ չունի տնտեսական ու սովետական կազմակերպություններին փոխարինելու, այդ օրգանների ղեկավարներին յուրահատուկ աշխատանքի ձևերի ու մեթոդների մեխանիկական ընդօրինակման դեռևս գոյություն ունեցող փորձերի հետ։

Արտադրության կուսակցական ղեկավարումը, ամենից առաջ, ենթադրում է արտադրական պրոցեսի հստակ կազմակերպում, կադրերի ընտրության գործի արմատական բարելավում, հանձնարարված գործի նկատմամբ բոլոր կոմունիստների ու ղեկավար աշխատողների պատասխանատվության բարձրացում, կուսակցական, պետական ու աշխատանքային կարգապահության ամրապնդում, պետական պլանների և առաջադրանքների կատարման ապահովում, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակում։

Պետք է ասել, որ վերջին ժամանակներս, հատկապես հետհամագումարյան ժամանակաշրջանում, շրջանի սկզբնական կուսկազմակերպությունները արտադրության կուսակցական ղեկավարման զգալի փորձ են կուտակել։

Այդ խնդիրը հաջողությամբ են իրականացնում հատկապես Լուսավանի ներտաշ հաստոցների, Հրազդանի ջերմաէլեկտրակենտրոնի շինվարչության,



Աթարբեկյանի սովխոզի, Մեղրաձորի կոլտնտեսության և մի քանի այլ սկզբնական կուսկազմակերպությունները։

Լուսավանի ներտաշ հաստոցների գործարանի երիտասարդ կոլեկտիվի աշխատանքային սխրանքները շատերին են հայտնի։ Գործարանում արտադրված հաստոցները լայն ճանաչում են գտել Սովետական Միության և աշխարհի տեխնիկապես զարգացած շատ երկրներում։ Նրանք արտահանվում են Չեխոսլովակիա, Գերմանական Դեմոկրատական Հանրապետություն, Անգլիա, Գերմանական Ֆեդերատիվ Հանրապետություն, Վիետնամ, Նոր Զելանդիա և այլուր։

Գործարանի կոլեկտիվը շրջանում առաջինը բարձրացրեց սոցիալիստական մրցության դրոշը, ի պատիվ Մեծ Հոկտեմբերի 50-ամյակի, ստանձնեց լուրջ պարտավորություններ և այժմ դրանք հաջողությամբ կենսագործում է։ Հաստոցագործները երեք եռամսյակ անընդմեջ հաղթող են դուրս գալիս նաև Համամիութենական սոցիալիստական մրցույթում. նրանք արժանացել են ՍՍՀՄ հաստոցաշինության և գործիքաշինության մինիստրության, ՍՍՀՄ մեքենաշինության աշխատողների արհմիության Կենտկոմի առաջին մրցանակին ու փոխանցիկ կարմիր դրոշին։ Այստեղ արտադրության բոլոր օղակները ապահովված են հմուտ ու փորձառու մասնագետ կադրերով, որոնց զգալի մասը աճել է բուն արտադրության պրոցեսում։ Կոմունիստները արտադրության վճռական տեղամասերում են. նրանք արտադրության առաջավորներ են, կոմունիստական աշխատանքի շարժման ակտիվ մասնակիցներ։ Կազմակերպությունն ու դիրեկցիան գիտեն խրախուսել արտադրության առաջավորներին և, միաժամանակ, խիստ պատժել ու հասարակական պարսավանքի ենթարկել ծույլին ու անբանին։

Սակայն, ամեն բան չէ, որ հաշտ ու խաղաղ է անցնում նույնիսկ այդպիսի կոլեկտիվում. բայց կուսկազմակերպությունը կարողանում է ժամանակին տեսնել հիվանդագին երևույթները, անողոք կերպով վեր հանել դրանք ծնող պատճառները և կուսակցական կոլեկտիվ ներգործուն ուժով հմտորեն հաղթահարել, վերացնել դրանք։

Անցյալ տարի, օրինակ, գործարանում նկատվեցին գրոհայնության տրամադրություններ, որոնք արդյունք էին նյութա-տեխնիկական մատակարարման բաժնի և որոշ արտադրամասերի անբավարար աշխատանքի։ Կուսկազմակերպությունը ժամանակին զբաղվեց այդ հարցով և քննարկեց կուսակցական ռոնբաց ժողովում։

Դա աշխույժ ժողով էր և երկար ժամանակ մնաց կոմունիստների հիշողության մեջ։ Քննադատությամբ հանդես եկած ընկերները չխնայեցին ոչ մեծավաստակ դիրեկտորին, ոչ կուսբյուրոյի և ոչ էլ շարքային աշխատողներին։ Հարցի բուռն քննարկմանը հաջորդեցին ժողովականների կշռադատված ու կոնկրետ առաջարկությունները, որոնք իրենց արտացոլումը գտան ընդունված որոշման մեջ։ Դիրեկցիան ու կուսկազմակերպության բյուրոն հետևողականորեն ապահովեցին որոշման կենսագործումը, որը նոր հաջողություններ բերեց կոլեկտիվին։

Ներտաշ հաստոցների գործարանի կոլեկտիվը մի քանի տարի է, ինչ պայքարում է կոմունիստական աշխատանքի ձեռնարկության բարձր կոչմանն արժանանալու համար (մոտ 17 բրիգադներ արդեն արժանացել են այդ կոչմանը)։

Սակայն, ինչպես ցույց տվեցին ուսումնասիրությունները, շրջանի մի

շարք սկզբնական կուսկազմակերպություններ արտադրության կուսակցական ղեկավարումը իրականացնում են մակերեսորեն, հաճախ չեն տարբերում գլխավորը երկրորդականից, քննարկում են, այսպես կոչված, «հերթապահ», «կամպանիոն» բնույթի հարցեր, առանց լրջորեն խորանալու բուն երևույթների և դրանք ծնող պատճառների մեջ։ Այսպես, Հրազդանի սովխոզը մի քանի տարի է, ինչ աշխատում է վնասով, սակայն սովխոզի սկզբնական կուսկազմակերպությունը լուրջ անալիզի չի ենթարկել դրա պատճառները և այժմ էլ լուրջ միջոցներ չի ձեռնարկում տնտեսությունը շահութաբեր դարձնելու համար։ Կուսակցական ժողովներում քիչ չեն քննարկվում արտադրական հարցեր, բայց որպես կանոն, դրանք բոլորն էլ «հերթապահ» հարցեր են՝ խոտհնձի, բերքահավաքի, ծնի կամպանիայի ընթացքը և այլն։ Միևնույն թերությունները ու հանձնարարությունները մի ժողովի որոշումից մյուսին են անցնում, իսկ դրանց կենսագործմամբ կուսկազմակերպությունը չի մտահոգվում։

Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ բարձր կազմակերպվածությունը տասնապատկում է կուսակցության ուժը։ Այդպիսի կազմակերպվածություն հնարավոր է միայն կոմունիստների հայացքների ու գործողությունների միասնության, կուսակցության կանոնադրության և կուսակցական կյանքի լենինյան նորմերի անշեղ կենսագործման պայմաններում։ Այդ պահանջների հետևողական կենսագործումը սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման հուսալի միջոց է։ Ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների մեծ մասը հետևողականորեն է իրականացնում լենինյան այդ նորմերը, մշտապես հետևում, որպեսզի բոլոր կոմունիստները իրենց արտադրական ու հասարակական գործունեությամբ և վարքագծով իրականացնեն կոմունիստական բարոյականության պահանջները։

Բացառություններ, սակայն, այնուամենայնիվ կան։

Վերջերս կուսշրջկոմի բյուրոն քննարկեց ներկուսակցական դեմոկրատիայի և կուսակցական կարգապահության վիճակը Արզականի սովխոզային կուսկազմակերպությունում։ Քննարկումը ցույց տվեց, որ կոմունիստներ Ս. Պետրոսյանը և Ե. Աբրահամյանը, անտեսելով տնտեսության շահերը, բռնել են սովխոզի ղեկավար աշխատողներին վարկաբեկելու ուղին, իրենց սխալ վարքագծով կազմալուծում են սովխոզի աշխատանքները, իսկ սկզբնական կուսկազմակերպության քարտուղար Լ. Խաչատրյանը, կորցնելով կուսակցական սկզբունքայնությունը, լիբերալ վերաբերմունք է հանդես բերում կարգապահությունը խախտողների նկատմամբ։ Կուսշրջկոմի բյուրոն կուսակցական խիստ պատասխանատվության ենթարկեց հիշյալ ընկերներին, իսկ Լ. Խաչատրյանին ազատեց քարտուղարի պարտականություններից։

ՍՄԿԿ կանոնադրությունը պահանջում է, որպեսզի կոմունիստը կուսակցության հանդեպ լինի ազնիվ ու ճշմարտացի, աչքի լույսի պես պահպանի կուսակցական շարքերի անաղարտությունը։ Կուսկազմակերպությունները պարտավոր են խիստ պատասխանատվության ենթարկել նրանց, ովքեր մոռանում են այդ ճշմարտությունը։

Վերջերս հայտնի դարձավ, որ Հանքավանի սովխոզի ոչխարաբուծական բրիգադայի բրիգադավար, կոմունիստ Ա. Շահինյանը և սովխոզի գլխավոր զոոտեխնիկ, կոմունիստ Բ. Այվազյանը աշխատանքում անփույթ են, անազնիվ, թույլ են տալիս մեքենայություններ։ Կուսշրջկոմի բյուրոն նրանց ազատեց աշխատանքից, իսկ սովխոզի դիրեկտոր Ա. Սահակյանին և կուսկազմակեր-



պության քարտուղար Կ. Մահմեդովին անսկզբունքայնության և հաշտվողականության համար խիստ պատասխանատվության ենթարկեց։ Կուսշրջկոմի բյուրոյի որոշումը լիովին հավանություն գտավ սովխոզի բոլոր կոմունիստների կողմից։

ՍՄԿԿ-ը հեղափոխական մեծ վերափոխումների կուսակցություն է, անհաշտ ամեն տեսակ և ամեն բնույթի թերությունների ու բացասական երևույթների նկատմամբ։ Այդ բանը յուրահատուկ է մեր շատ սկզբնական կուսկազմակերպություններին։ Չէ՞ որ դա կուսկազմակերպությունների մարտունակության, նրանց ուժի ու կարողության չափանիշն է. այդ խիստ արժեքավոր հատկանիշի կորուստը հանգեցնում է անտարբերության, անպատասխանատվության։ Այդպիսի վիճակ էր ստեղծվել Լուսավանի հիվանդանոցի կոլեկտիվում և կուսկազմակերպությունում։

Հիվանդանոցի վիրաբույժ, կոմունիստ Մ. Էլազյանը կոպտում էր իր աշխատանքային ընկերներին, զազրախոսում նրանց հասցեին, խլրտումներ գցում կոլեկտիվում։ Նա քմահաճորեն էր վերաբերվում իր պաշտոնական պարտականությունների կատարմանը և թույլ էր տալիս լուրջ սխալներ ու վրիպումներ։ Մ. Էլազյանին կարգի հրավիրելը դժվար գործ չէր, եթե հիվանդանոցի կուսկազմակերպությունն ու ադմինիստրացիան գտնվեին սկզբունքային դիրքերում, լինեին անզիջում նրա արարքների նկատմամբ։

Կուսկազմակերպության քարտուղար Կ. Ասատրյանը (որն, ի դեպ, Մ. Էլազյանի մերձավոր բարեկամն է) անվերապահորեն բռնեց վերջինիս հովանավորելու ուղին, իսկ Լուսավանի և շրջկենտրոնի հիվանդանոցների գլխավոր բժիշկներ Վ. Ծուղուրյանը և Ս. Սահակյանը բարվոք համարեցին բռնելու թերությունները սքողելու, աղբը տանից դուրս չհանելու ուղին։

Կուսշրջկոմի բյուրոն քննելով այդ կազմակերպության հարցը, Մ. Էլազյանին կուսակցական խիստ տույժի ենթարկեց, իսկ Կ. Ասատրյանին ազատեց կուսկազմակերպության քարտուղարի պարտականություններից, միաժամանակ կուսակցական պատասխանատվության ենթարկեց Վ. Ծուղուրյանին և Ս. Սահակյանին։

Խոսքի և գործի միասնությունը բոլշևիկի ամենաբնորոշ հատկանիշն է, մեծ Լենինի մեծագույն ավանդներից մեկը, կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման հուսալի միջոցը։

Շրջանի մի շարք սկզբնական կուսակցական կազմակերպություններ հետևողականորեն են իրականացնում վերադաս օրգանների և իրենց իսկ սեփական որոշումները, պարբերաբար կոմունիստներին հաղորդում են ընդունված որոշումների կատարման մասին։ Այդ պրակտիկան լայնորեն են կիրառում Լուսավանի գործիքաշինական գործարանի, Սոլակի կոլտնտեսային, Ծաղկաձորի գիշերօթիկ դպրոցի և մի քանի այլ սկզբնական կուսկազմակերպություններ։

Պետական պլանների և առաջադրանքների, վերադաս օրգանների և սեփական որոշումների կատարման գործում լուրջ թերություններ ունեն «Հրազդանշին» տրեստի և նրա շինվարչությունների կուսակցական կազմակերպությունները։ «Հրազդանշին» տրեստն անցյալ տարի զգալի չափով թերակատարեց շինարարական մոնտաժային աշխատանքների պլանները. այժմ էլ տրեստում կան լուրջ թերություններ։

Տրեստի և շինվարչությունների կուսկազմակերպությունները բազմիցս անդրադարձել են պետական պլանների և առաջադրանքների կատարմանը,

ընդունել են կոնկրետ ու գործնական որոշումներ։ Դժբախտությունը, սակայն, այն է, որ այդ որոշումներին հաճախ չի հաջորդել կենդանի գործը։ Այդ կուսկազմակերպությունները բավարար չափով պահանջկոտ ու մարտունակ չեն, լուրջ պայքար չեն ծավալում պետական, կուսակցական ու աշխատանքային կարգապահության խախտումների, անպատասխանատվության, անկազմակերպվածության, անորակ աշխատանքի երևույթների դեմ։

Կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացումը պայմանավորված է կոմունիստների քաղաքական հասունությամբ և կոփվածքով։

Կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման գործում վճռական նշանակություն ունի նրանց քարտուղարների որակական կազմի բարելավումը։ Այդ ուղղությամբ շրջանում քիչ աշխատանք չի տարվել։ Սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների 74 տոկոսն այժմ ունի բարձրագույն, թերի բարձրագույն և միջնակարգ կրթություն, նրանց զգալի մասը ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի տարբեր ճյուղերի մասնագետներ են։

Կուսշրջկոմը վաղօրոք մշակած պլանի համաձայն սեմինար պարապմունքներ է անցկացնում սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների հետ, օգնում նրանց տիրապետելու կուսակցական աշխատանքի ձևերին ու մեթոդներին, կազմակերպում փորձի փոխանակում։

Կուսկազմակերպությունների քարտուղարների ընտրության գործում, առանձին դեպքերում, սակայն թույլ են տրվել կոպիտ սխալներ, հապճեպություն։ Այդ բացասաբար է անդրադարձել մեր աշխատանքների վրա։

ՍՄԿԿ XXIII համագումարը սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացումը համարեց բոլոր կուսակցական կոմիտեների, հատկապես քաղկոմների և կուսշրջկոմների գլխավոր խնդիրը։

Հրազդանի կուսշրջկոմը և նրա ապարատը այդ ուղղությամբ քիչ գործ չեն արել, սակայն սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքներում տեղ գտած թերությունները վկայում են, որ դեռևս կուսշրջկոմը, նրա բյուրոն և քարտուղարները սերտորեն կապված չեն սկզբնական կուսկազմակերպությունների հետ, խորամուխ չեն լինում նրանց աշխատանքներում, բավարար չափով օգնություն ցույց չեն տալիս կուսկազմակերպություններին, չեն ապահովում կազմակերպական ու քաղաքական աշխատանքների իսկական վերելքը։

ՀԿԿ Հրազդանի շրջկոմի պլենումը, մանրամասն ու խոր ուսումնասիրությունից հետո վերջերս քննարկեց սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման հարցը, այդ ուղղությամբ մշակեց կոնկրետ միջոցառումներ, որոնք այժմ կենսագործվում են։ Սա մենք համարում ենք լուրջ գործի սկիզբը և ջանք չենք խնայի այն մինչև վերջ հասցնելու համար։



# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՌԵՖՈՐՄԸ ԵՎ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ



ՌԱԻՍԱ ՎԱՀՐԱՄՅԱՆ
Սարքաշինական գործարանի կուսկազմակերպության բյուրոյի քարտուղար

Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմը, որն արմատավորվում է ավելի ու ավելի մեծ թվով ձեռնարկություններում, վիթխարի նշանակություն ունի մեր էկոնոմիկայի արագ զարգացման համար։ Ինչպես ասված է ՍՄԿԿ Կենտկոմի «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50 տարին» թեզիսներում, տնտեսական ռեֆորմի «...էությունն է ուժեղացնել ղեկավարման տնտեսական մեթոդների դերը, կատարելագործել պետական պլանավորումը և ընդլայնել ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնությունն ու նախաձեռնությունը, ըստ ամենայնի արմատավորել ու կատարելագործել տնտհաշվարկը»։

Ռեֆորմի հաջող իրականացումը մեծապես կախված է տեխնիկա-տընտեսական մի շարք կարևորագույն միջոցառումներից, ինչպես նաև մասսաների շրջանում տարվող կազմակերպչական ու գաղափարական-դաստիարակչական աշխատանքի դրվածքից։ Այդ ամենն ավելի կամ պակաս չափով կարելի է տեսնել նաև Երևանի սարքաշինական գործարանում, որը պլանավորման և նյութական խթանման նոր սիստեմին է անցել տարեսկզբից։

Գործարանի կուսկազմակերպությունը, դիրեկցիայի և գործարհկոմի հետ միասին, նախապատրաստական մեծ աշխատանք է կատարել պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին անցնելու համար։ Դեռևս 1966 թվականի վերջին կուսկազմակերպության ժողովը քննարկեց ձեռնարկության տնտեսական ծառայության վիճակի ու նրա բարելավման միջոցառումների հարցը։ Պարզվեց, որ գործարանի պլանային, աշխատանքի և աշխատավարձի բաժինները վատ են կոմպլեկտավորված, չկան համապատասխան մասնագիտությունների հմուտ կադրեր, որ հիշյալ բաժինները իրենց անձնակազմով ի վիճակի չեն ապահովելու ռեֆորմի կապակցությամբ առաջ քաշվող խնդիրների լուծումը։

Հաշվի առնելով կոմունիստների առաջարկությունները, գործարանի դիրեկցիան կարճ ժամկետում տնտեսական ծառայության բաժինները կոմպլեկտավորեց ձեռներեց աշխատողներով, որոնք այժմ ջանք չեն խնայում իրենց պարտավորությունները բարեխղճորեն կատարելու համար։

Բաժինների լրիվ կոմպլեկտավորման շնորհիվ գործարանի տնտեսական ծառայության աշխատողների թիվը գրեթե եռապատկվեց։ Այժմ պահանջվում է կազմակերպել նրանց, ինչպես նաև բոլոր ինժեներա-տեխնիկական կադրերի, տնտեսագիտական ուսուցումն ու վերապատրաստումը։ Այդ հարցը մենք հան-

գամանորեն քննարկեցինք կուսբյուրոյի ընդլայնած նիստում։ Որոշվեց կազմակերպել կադրերի տնտեսագիտական ուսուցման խմբակներ՝ եռամսյա տևողությամբ։ Այդ խմբակներում սովորեցին և անհրաժեշտ գիտելիքներ ձեռք բերին ոչ միայն տնտեսական ծառայության աշխատողները, այլև արտադրամասերի պետերը, վարպետները, առաջավոր բանվորները և ուրիշներ։ Կադրերի վերապատրաստման դասընթացներն իրավամբ շատ բան տվին ունկնդիրներին։

Տնտեսական ռեֆորմի իրականացումը դժվարին և բարդ գործ է։ Դրա համար էլ կուսկազմակերպությունը և դիրեկցիան կադրերի ուսուցմանը զուգընթաց մեծ նշանակություն են տալիս այն ձեռնարկությունների աշխատանքի փորձի ուսումնասիրությանը, որոնք վաղուց են անցել պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին և արդեն ուսանելի շատ բան ունեն։ Այդ նպատակով գործարանի մի խումբ աշխատողներ եղել են Լվովի սարքաշինական գործարանում, ուսումնասիրել նրանց փորձը, մի ուրիշ խումբ՝ Արզնիի «Ճշգրիտ քարերի» գործարանում, որը նոր սիստեմին է անցել 1966 թ. չորրորդ եռամսյակում։

Սարքաշինական գործարանի կուսակցական կազմակերպությունը քաղաքական-բացատրական լայն աշխատանք է ծավալել բանվորների ու բանվորուհիների շրջանում, հանգամանորեն պարզաբանել պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմի առավելությունները։ Ելնելով հարցի կարևորությունից և բարդությունից, տնտեսական ռեֆորմի հետ կապված զեկուցումներն ու զրույցները մենք հանձնարարել ենք առավել պատրաստված և հմուտ կոմունիստների։

Տնտեսական ռեֆորմը պահանջում է կուսակցական-քաղաքական աշխատանքի կազմակերպման նոր ձևեր և մեթոդներ։ Մեզ մոտ դա արտահայտվեց նրանում, որ ստեղծվեց ագիտատոր-ինֆորմատորների խումբ, որի մեջ ընդգրկված են նաև որակյալ էկոնոմիստներ։

Ագիտատոր-ինֆորմատորները հաճախակի հանդես են գալիս արտադրամասերում և բաժիններում, պատմում տնտեսական նորությունների, երկրի առաջավոր գործարանների՝ նոր սիստեմով վարվող աշխատանքի փորձի մասին, մասսայականացնում ՍՄԿԿ Կենտկոմի «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50 տարին» թեզիսները։ Բանվորները հետաքրքրությամբ են լսում այդ զրույցները և սրտանց հավանություն տալիս կուսակցության և կառավարության ձեռնարկած նոր միջոցառումներին։

Ավարտելով բոլոր նախապատրաստական աշխատանքները, մեր գործարանը 1967 թվականի հունվարի մեկից սկսեց աշխատել նոր սիստեմով։

Ինչպես հայտնի է, նոր սիստեմի պայմաններում արտադրական հաջողությունները ավելի անմիջականորեն են նպաստում նրա կոլեկտիվի անդամների աշխատավարձի բարձրացմանը, նրանց ընդհանուր կենսամակարդակի բարելավմանը։ Դա շատ կարևոր հանգամանք է։ Բանվորները ավելի մեծ շահագրգռվածություն են դրսևորում ձեռնարկության ընդհանուր պլանների կատարման և ավելի բարձր տնտեսական ցուցանիշներ ձեռք բերելու գործում, աշխատում են կրկնապատկված եռանդով և կրքոտությամբ։

Հիրավի, տնտեսական ռեֆորմի առաջին իսկ ամիսը մեզ մոտ շոշափելի արդյունքներ տվեց. գրեթե բոլոր ինժեներա-տեխնիկական աշխատողները, գործարքային հիմունքներով աշխատող բանվորները արժանացան դրամական պարգևների, ստացան անհամեմատ բարձր աշխատավարձ։ Այսպես, օրի-



նակ, եթե № 10 արտադրամասի բանվոր Ռոմիկ Մարգարյանի միջին ամսական աշխատավարձը 1966 թվականին կազմել է 150 ռուբլի, ապա հետռեֆորմյան առաջին ամսում (1967 թվականի հունվարին) նա ստացավ 190 ռուբլի, ֆրեզերող Համասիկ Մեջլումյանը համապատասխանաբար՝ 170 և 201 ռուբլի և այլն։

Տնտեսական ռեֆորմը լայն հորիզոն բացեց սոցիալիստական ստեղծագործական մրցության ծավալման համար։

Արտադրամասերը և առանձին բանվորներ մրցելով իրար հետ, պայքարում են արտադրանքի քանակական և որակական ցուցանիշների բարձրացման համար։ Չէ՛ որ նոր պայմաններում յուրաքանչյուր աշխատող անձամբ շահագրգռված է ամբողջ ձեռնարկության արտադրական ցուցանիշների բարձրացմամբ։ № 5 ձուլման-մամլման արտադրամասը (պետ՝ կոմունիստ Հ. Գևորգյան), գործարանում առաջիններից մեկը, անցնելով տնտհաշվարկի, սոցիալիստական լայն մրցություն ծավալեց՝ Մեծ Հոկտեմբերի 50-ամյակի պատվին։ Այդ արտադրամասի կոլեկտիվն առաջին եռամսյակում համախառն արտադրանքի պլանը կատարել է 107,4 տոկոսով, հիմնական նյութերի միջին ամսական խնայողությունը հասցրել 1—1,2 տոննայի (անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի 0,4—0,5 տոննայի դիմաց), տնտեսել է 3 տոննա գունավոր մետաղ, 0,5 տոննա ֆենոպլաստ և այլն։ Այս ցուցանիշների համար № 5 արտադրամասի կոլեկտիվին շնորհվել է փոխանցիկ կարմիր դրոշ և դրամական պարգև։ Արտադրամասի առաջավոր մամլողներ Կ. Զոհրաբյանը, Ա. Մարտիրոսյանը, ձուլողներ Հ. Ղազարյանը, Լ. Տարանուշինը, Ս. Մինասյանը և շատ ուրիշներ սիստեմատիկ կերպով արտադրական նորմաները գերակատարում են 25—30 տոկոսով։

Գործարանի ղեկավարությունը և մասնագետներն այժմ ավելի ու ավելի մեծ պահանջկոտությամբ են մոտենում արտադրանքի որակի բարձրացմանը։ Նոր պայմաններում ձեռնարկության կոլեկտիվի արտադրական հաջողության կարևոր չափանիշներից մեկը արտադրանքի իրացումն է։ Իսկ հաջող իրացվում է այն ապրանքը, որն ունի մեծ հուսալիություն, հարատևություն և սպառողական բարձր հատկություններ։ Ուստի, գործարանի կուսբյուրոն և դիրեկցիան ձեռնարկել են կոնկրետ միջոցներ՝ բարձրացնելու համապատասխան բաժինների և ինժեներա-տեխնիկական աշխատողների դերն ու պատասխանատվությունը արտադրանքի որակի համար։ Նրանց ցուցումներով տեխնիկական, կոնստրուկտորական և տեխնոլոգիական բաժինները ժամանակին վերանայել են մեքենաների ու սարքավորումների փաստաթղթերը, վերացրել եղած անճշտությունները, պատշաճ վերահսկողություն սահմանել սարքավորումների ճիշտ և արդյունավետ օգտագործման նկատմամբ։

Բարելավվել է գլխավոր ինժեներին կից տեխնիկական խորհրդի գործունեությունը։ Կոմունիստների առաջարկությամբ տեխնիկական վերահսկողության բաժնին կից ստեղծվել է հատուկ տեղամաս, որը հանգամանորեն ուսումնասիրում է խոտան արտադրանքի թողարկման յուրաքանչյուր դեպքի պատճառները և կոնկրետ առաջարկություններ անում դրանց վերացման համար։

Շաբաթը մեկ անգամ գործարանի դիրեկտորի մոտ անց է կացվում, այսպես ասած, որակի օր, որին մասնակցում են արտադրամասի պետերը, ինժեներա-տեխնիկական ղեկավար աշխատողները, վարպետներ և արտադրության առաջավորներ։ Այստեղ ինֆորմացիաներ են տրվում շաբաթվա ըն-

թացքում թողարկված արտադրանքի որակի մասին, նշվում են թերությունների վերացման ուղիները, ձեռնարկվում պրոֆիլակտիկ միջոցներ առաջիկայում խոտանը կանխելու համար։ Նույն նպատակն է հետապնդում նաև № 9 հավաքման արտադրամասի ստուգող-ընդունող հատուկ կայանը, որտեղ ստուգվում են արտադրված սարքերը։

Մեզ մոտ սահմանված է ընդհանուր կարգ. այն արտադրամասը, որը թողարկում է խոտան արտադրանք, տվյալ ամսում զրկվում է դրամական պարգևից, էլ չենք խոսում այն մասին, որ մեղավորները ենթարկվում են նաև հասարակական պարսավանքի, քննադատվում ժողովներում, պատի թերթերի էջերում և երգիծական թերթիկներում։ Այդ ամենը իզուր չի անցնում։ Անցած հինգ ամսում, օրինակ, ձեռնարկության որակական ցուցանիշները զգալիորեն բարձրացվել են։ Եթե 1966 թվականի հունվար—մայիս ամիսներին ստացվել է 41 բողոք 288 սարքի մասին և ետ վերադարձված խոտան սարքերը իրոք կազմում են ընդհանուր արտադրանքի 0,56 տոկոսը, ապա այս տարվա նույն ամիսներին ստացվեց միայն 30 բողոք՝ 133 սարքի մասին, իսկ վերադարձված խոտան սարքերը կազմեցին ամբողջ արտադրանքի ընդամենը 0,41 տոկոսը։

Սոցիալիստական լայն մրցություն ծավալելով հոբելյանական տարին աշխատանքային նվերներով դիմավորելու համար, մեր սարքաշինարարները անցած 5 ամսում համախառն արտադրանքի պլանը կատարել են 101,4, և ապրանքայինը՝ 104,8 տոկոսով։ Լուրջ հաջողություն են ձեռք բերվել արտադրանքի իրացման ասպարեզում. պլանային 2445 հազար ռուբլու դիմաց վաճառահանվել է 2562 հազար ռուբլու սարք։

Պլանների հաջող կատարումը հնարավորություն ընձեռեց ստեղծելու նյութական խրախուսման ֆոնդ, այդ նպատակին հատկացվեց 48 հազար ռուբլի։

Հաջողություններն է՛լ ավելի մեծ կլինեին, եթե ընդմիշտ կարգավորվեր նյութատեխնիկական մատակարարման հարցը։ Գործարանը չի կարողանում ժամանակին ստանալ իրեն անհրաժեշտ դետալներ և պահեստամասեր։ Մատակարարման հետ կապված շատ հարցեր դեռևս հեշտությամբ չեն լուծվում կամ լուծվում են մեծ դժվարություններով։ Գործարանը տնտեսական տարվա սկզբին ներկայացրել է իր նյութատեխնիկական պահանջների պլանը, որը հաստատվել է մինիստրության և նրա համապատասխան վարչության կողմից։ Բայց, դժբախտաբար, մեր հիմնավոր պահանջները համապատասխան գերատեսչությունների և առանձին ձեռնարկությունների կողմից ժամանակին չեն կատարվում։ Օրինակ. Լուցկ քաղաքի սարքաշինական գործարանը պարտավոր է մեզ մատակարարել անհրաժեշտ քանակությամբ ջերմազույգեր, բայց այն կանոնավոր չի կատարում իր պարտականությունները։ Այդ պատճառով հաճախ Լուցկ ենք գործուղել մեր աշխատողներին, բայց դրությունը գրեթե մնում է անփոփոխ։ Ավելին, պատահում են դեպքեր, երբ առանձին դետալների համար մարդիկ ենք ուղարկում Մոսկվա, Լենինգրադ, Պսկով, Նովգորոդ և այլ քաղաքներ։ Հաճախակի գործուղումները ավելորդ ծախսեր են պատճառում գործարանին։ Մի՞թե չի կարելի այնպես անել, որպեսզի կազմակերպվի ձեռնարկությունների մատակարարման գործը, կրճատվեն ապարդյուն գործուղումները և այլն։

Ինձ թվում է, որ հաճախակի գործուղումները մասամբ հետևանք են նաև նրա, որ ՍՍՀՄ սարքաշինության, ավտոմատացման միջոցների և կառավար-



ման սիստեմների մինիստրությունը մեր հանրապետությունում չունի իր ներկայացուցչությունը (միավորումը կամ վարչությունը), որպեսզի տեղում հոգա իր ձեռնարկությունների կարիքները։ Դա անհրաժեշտ է, որովհետև վերոհիշյալ մինիստրությունը ներկայումս Հայաստանում ունի 15 ձեռնարկություն և օբյեկտ։

Տնտեսական ռեֆորմը ոչ միայն չնվազեցրեց, այլև ավելացրեց գործարանի կուսկազմակերպության և կոմունիստների անմիջական հոգսերը։ Ծագեցին նոր, մեկը մյուսից բարդ ու անհետաձգելի հարցեր։

Նոր սիստեմին անցնելուց հետո կուսակցական ժողովում նախ և առաջ քննարկեցինք բարձր շահույթի ապահովման հարցը։ Ժողովում տեղի ունեցավ մտքերի աշխույժ փոխանակություն։ Արտահայտվեցին Մանյա Մկրտումյանը (գլխավոր հաշվապահ), Իշխան Համբարձումյանը (գլխավոր տնտեսագետ) և շատ ուրիշներ։

Ելույթների միջով կարմիր թելի պես անցնում էր այն միտքը, որ բարձր շահույթի հասնելու համար ամբողջ գործարանը, նրա յուրաքանչյուր արտադրամաս պետք է աշխատի խիստ պլանաչափ և հստակ։ Արտադրամասերից մեկի վատ աշխատանքը կարող է խախտել ամբողջ ձեռնարկության ռիթմիկ գործունեությունը և այն ժամանակ բարձր շահույթի մասին մտածելն անգամ ավելորդ կլինի։

Կոմունիստները խիստ քննադատեցին թերությունները, որոնց վերացման համար ժողովը կոնկրետ որոշում ընդունեց։

Կուսժողովի նշած միջոցառումների կիրառման շնորհիվ կարճ ժամանակամիջոցում ապահովվեց գործարանի ռիթմիկ աշխատանքը, արտադրական առաջադրանքների կատարումը և շահույթի բարձրացումը։ Գործարանն անցած հինգ ամսում պլանային 402 հազար ռուբլու դիմաց ստացել է 405 հազար ռուբլու օգուտ։ Դա հնարավորություն է տվել նյութական խրախուսման ֆոնդին հատկացնելու 39 հազար ռուբլի (պլանային 35 հազարի դիմաց), սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար՝ 12 հազար ռուբլի (10 հազարի դիմաց)։

Պլանների և ստանձնած պարտավորությունների կատարման համար գործուն պայքար են մղում արտադրամասային կուսկազմակերպությունները։ Նրանց ուշադրության կենտրոնում են աշխատանքի կազմակերպման և վարձատրման բարելավման, արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման, կոմունիստների ավանգարդային դերի ապահովման և աշխատավորների քաղաքական-դաստիարակչական հարցերը։

№ 5 արտադրամասում (որտեղ դետալներ են թողարկում պլաստմասսայից և գունավոր մետաղից) պահանջվում էր կարգավորել ջերմային ռեժիմը, կիսաավտոմատացնել որոշ մամլիչների աշխատանքը և իրականացնել մի շարք այլ միջոցառումներ։ Այդ հարցը բարձրացրին արտադրամասի կոմունիստները, որը լուծվեց դրական կերպով։

Կուսբյուրոյի և արտադրամասային կուսկազմակերպությունների ամբողջ ուշադրությունը այժմ կենտրոնացված է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակն արժանավայել դիմավորելու վրա։ Կոլեկտիվի համար պարբերաբար կազմակերպում ենք դասախոսություններ, զեկուցումներ և զրույցներ՝ նվիրված սովետական ժողովրդի ձեռք բերած տնտեսական ու քաղաքական նվաճումներին և նրա առջև ծառացած նոր խնդիրներին։ Կանոնավոր լույս են տեսնում պատի թերթերն ու երգիծական թեր-

թիկները, որոնք լուսաբանում են գործարանի կյանքը, խարազանում թերությունները և մոբիլիզացնում մարդկանց ուժերը՝ պատվով կատարելու հոբելյանական տարվա առաջադրանքները:

Գործարանի դիրեկցիան, կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները բացառիկ ուշադրություն են դարձնում աշխատավորների կուլտ-կենցաղային պայմանների բարելավման, նրանց հանգիստը կազմակերպելու հարցերին: Դեռևս 1966 թ. սկզբին, երբ գործարանն անցավ հնգօրյա աշխատանքային շաբաթի, կոնկրետ միջոցներ ձեռնարկվեցին բանվորների կուլտ-կենցաղային պայմանների բարելավման համար: Գործարանը պայմանագրային հիմունքներով վարձել է Ծաղկաձորի մանկապարտեզներից մեկի պանսիոնատը՝ շաբաթ և կիրակի օրերը կոլեկտիվի անդամների հանգիստը կազմակերպելու համար: Յուրաքանչյուր շաբաթ 30—40 հոգուց բաղկացած խմբերով բանվորները մեկնում են իրենց 1—2-օրյա հանգիստը անցկացնելու բնության այդ գեղատեսիլ վայրում: Պանսիոնատում սարքաշինարարների համար կազմակերպվում են սպորտային զանազան մրցումներ, խաղեր և այլն:

Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմը, ինչպես նաև հնգօրյա աշխատանքային շաբաթը նպաստավոր պայմաններ են ստեղծել գործարանի կոլեկտիվի արդյունավետ գործունեության, աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացման, նրանց շրջանում քաղաքական-մասսայական աշխատանքի ծավալման և կուլտուրական հանգստի կազմակերպման համար:





# ԿՈՄՈՒՆԻՍՏ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ

Տարիներ առաջ էր: Արտաշեսը թերթի նոր համարը դրեց սեղանին, ու մտազբաղ քայլեց սենյակում: Կինը, որ նախաճաշ էր պատրաստում, մի պահ կանգնեց, ուշադիր նայեց ամուսնուն ու հարցրեց.

— Ի՞նչ է պատահել:

— Չլսեցի՞ր:

— Ի՞նչը:

— Շրջանի երիտասարդությանն ուղղված կոչը: Ռադիոն հաղորդեց: Ա՛յ, թերթն էլ տպագրել է, Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատը բանվորների պահանջ ունի:

— Հետո՞...

— Ուզում եմ գնալ:

Կինը, որ չգիտեր ինչու Քաջարանի անունը լսել չէր ցանկանում, առարկեց.

— Ես Քաջարան եկողը չեմ:

Մայրն էլ միացավ հարսին:

— Բախտիցդ էղպես հեշտ երես մի՛ թեքի, որդի: Յոթը չափիր, մեկ կտրիր: Հեռվի ձենն է լավ: Տան, դռան գործին բան չի հասնի:

... Էհ, հայ ընտանիք է, տղամարդու խոսքով է ավարտվում վեճը...

Ու Շրվենանց գյուղի դպրոցի մաթեմատիկայի երիտասարդ ուսուցիչ Արտաշես Պետրոսյանը 1954 թվականի աշնանը բարձրացավ Գանձասար, կանգնեց բուլդոզերի ղեկի մոտ, դարձավ վարորդի օգնական: Աշխատանքն անսովոր էր, ծանր, ձմեռը՝ ցրտաշունչ... Պետք էր տանել դժվարությունները: Հաղթահարեց: Կարճ ժամանակում դարձավ բուլդոզերավար ու իր ուժը խառնեց հսկաների ուժին:

Այստեղ, ընթերցող, բուլդոզերավարի գործը Գանձասարը մերկացնելն է, մակերեսային դատարկ ապարը հեռացնելը, մոլիբդենային շերտը բացելը: Ուրիշ գործեր էլ կան. հանքաքար փոխադրող ավտոմեքենաների համար միջելուստային ճանապարհներ էլ պետք է պատրաստել:

Արտաշեսը լավ քննություն հանձնեց: Բայց, երբ բոլորեց երկրորդ տարին, նա վճռեց էքսկավատորավար դառնալ: Հաճախեց տեխնիկական ուսուցման խմբակ, սովորեց սիրելի մասնագիտությունը, ստանձնեց «ԷԿԳ—4» հսկայի ղեկը:

Շուտով Արտաշեսի լուսանկարը երևաց բաց հանքի պատվոտախտակին: Նրա մասին սկսեցին խոսել ռադիոյով, գրել թերթերում: Բայց այս չէ բոլորը: Դպրոցը Գանձասարով փոխարինած մարդու օրինակը Քաջարան բերեց հարյուրավոր երիտասարդների: Շահենը, Վիգոն, Սուրիկը, Պետիկը, Միքայելը... Որոնք այժմ արդեն վարպետ էքսկավատորավարներ են, ակնածանքով են տալիս իրենց ուսուցչի անունը: Ուսուցիչ՝ դպրոցում, ուսուցիչ՝ Գանձասարի գագաթին:

Արտաշեսի աշակերտներից մեկը հիշում է, թե ինչպես մի անգամ, երբ նոր էքսկավատոր էր ստացվել, իսկ մասնագետը հիվանդ էր, իր վարպետը հանձն առավ մոնտաժել մեքենան: Ընտրեց հինգ մարդ ու գործի անցավ: Մեկուկես

ամիս հետո հսկան գործում էր: Այնինչ սովորաբար նման մեքենան մոնտաժվում է առնվազն երկու ամսում: Հանքի ղեկավարները տեսնելով Արտաշեսի հմտությունը, առաջարկեցին թողնել էքսկավատորավարությունը, զբաղվել միայն մեքենաների մոնտաժման աշխատանքով: Նա հրաժարվեց, ասելով.

— Իսկական մասնագետ գտեք, ես կամ ու կամ. նեղն ընկած դեպքում կգամ, կօգնեմ:

Հանքը տասնմեկ տարում տասնմեկ անգամ «նեղն ընկավ» և միշտ էլ օգնության հասավ Արտաշեսը:

— Նրա հետ ոտք մեկնող չկա նաև հանքաքարի բարձման գործում,— ասում է բաց հանքի նորմավորողը, ու հաշվիչ մեքենայի վրա թվերն իրար գումարելով, հայտնում, որ յոթնամյակի առաջադրանքը Արտաշես Պետրոսյանը կատարել է 5 տարում. այլ խոսքով՝ այդ ժամանակամիջոցում նա մեծ քանակությամբ հանքաքար և ապար է բարձել:

— Իսկ նրանից առաջ անցնողներ չկա՞ն:

— Ո՛չ: Ինքն է իրեն գերազանցում: Հերթափոխային առաջադրանքը սիստեմատիկաբար գերակատարում է,— նկատում է հանքի պետը:

Զրույցը շարունակվում է: Հանքի պետի գրասենյակում հավաքված մարդիկ Արտաշես Պետրոսյանի անձնուրաց աշխատանքից շատ դրվագներ են հիշում:

... Այս տարվա մարտի 30-ն էր: Գիշերվա կեսին ձնախառն քամին գետնին տապալեց Գանձասարի գագաթի էլեկտրահաղորդման ցցասյուներից մեկը: Էներգիան ընդհատվեց, կանգ առան մեխանիզմները: Խավարի մեջ թաղված Գանձասարում կյանքն ասես մեռավ: Միայն համարձակ բուքն էր մոլեգնում: Իսկ Արտաշեսը մտածել գիտե. նա հաշվում է, թե լեռնային տեղամասի մեկժամյա պարապուրդն որքան է վնասում երկրին:

Ու հերթափոխի էլեկտրիկների հետ անհապաղ գործի անցավ: Բքի, հողմերի մեջ, պարզ է, թե ցցասյուն նորոգելն ինչ է նշանակում: Քանդեցին նրանք ձյան բլուրը, գտան ցցասյունն, ու լարված աշխատանքը տվեց իր արդյունքը: Բնության աղետը, արհավիրքը տեղի տվեցին մարդկանց կամքին: Ցցասյունը կանգնեցվեց, Արտաշեսը նորից բարձրացավ էքսկավատորի խցիկը:

— Եվ այնտեղից չիջավ, մինչև չկատարեց հերթափոխային առաջադրանքը,— վրա բերեց աշխատանքային ընկերներից մեկը:

— Հենց այդ օրն էլ զեկուցեց հինգ ամսվա առաջադրանքը կատարելու մասին,— ավելացրեց հանքի կուսկազմակերպության բյուրոյի քարտուղարը:

Գանձասար... աշխատանքային մի վիթխարի հրապարակ է սա, ուր գիշեր-ցերեկ չեն դադարում լեռների հետ գոտեմարտի բռնված հսկր մեքենաների հռնդոցը, աշխատանքային հաճելի աղմուկը: Յուրաքանչյուր հերթափոխում տասնյակ էքսկավատորներ, խոր փորող հաստոցներ, ինքնաթափ ավտոմեքենաներ են աշխատում բաց հանքի հորիզոններում: Դրանք են ապահովում ճոպանուղիներով հանքաքարի հոսքը հարստացուցիչ ֆաբրիկա:

Ու դրանց մեջ մեկը չկա, որին Արտաշեսի ձեռքը կպած չլինի: Ահա ինչու բոլորը նրան վարպետ են ասում: Իսկ իրենից իր մասին խոսք կորզելն ավելի դժվար է, քան ձեռքով ապար պոկելը: Կխոսի միայն իր աշխատանքային ընկերների, բաց հանքի հիանալի կոլեկտիվի,. մեծ Քաջարանի փայլուն հեռանկարների մասին:

Փույթ չէ: Ինչ նա չի ասում, հանքի և կոմբինատի ղեկավարներն են լրացնում: Ու դուք իմանում եք, որ մի քանի մասնագիտությունների տեր այս մարդուն Գանձասարում «Շտապ օգնություն» էլ են անվանում: Չէ՛ որ հարկ եղած դեպքում օգնության է հասնում բոլորին՝ և՛ էքսկավատորավարներին, և՛ բուլդոզերավարներին, և՛ ավտովարորդներին, և՛ հաստոցավարներին... բոլորին, բոլորին: Գանձասարի մարդիկ շատ փաստեր կբերեն, թե ինչպես կոմունիստ Պետրոսյանի օգնությամբ և նրա անձնական օրինակին հետևելով կյանքի ճիշտ ճանապարհի վրա են կանգնել նախկինում պորտաբույծ կյանք վարող առանձին մարդիկ:

Պետրոսյանը պատվով է կատարում կոմունիստի իր պարտականությունները, անընդհատ բարձրացնում իր քաղաքական-գաղափարական մակարդակը: Ագիտատոր է. ամուր թելերով կապված լինելով բաց հանքի կոլեկտիվի հետ, ժամանակին բանվորներին է մեկնաբանում կուսակցության ու կառավարության որոշումները, զրույցներ է կազմակերպում ՍՄԿԿ Կենտկոմի «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50 տարին» թեզիսների մասին, պատմում սովետական իշխանության տարիներին մեր ժողովրդի ձեռք բերած վիթխարի նվաճումների, ՍՍՀՄ-ի ներքին ու միջազգային դրության կարևոր իրադարձությունների, Քաջարանի կոմբինատի կոլեկտիվի առջև դրված խնդիրների մասին, և դրանց կատարման նպատակին ուղղում մարդկանց ուժերն ու եռանդը:

Ուրիշներից կլսեք նաև նրա անձնական կյանքի «մանրուքները»: Կիմանաք, որ նա օրինակելի ընտանիք ունի, և իր հարազատներին դաստիարակում է աշխատասիրության ոգով:

— Քաջարանում չկա մեկը, որ չհարգի Պետրոսյանին:

— Ամենքին հասնում է, ամենքին օգնում:

— Ճիշտ է, շարքային բանվոր է, բայց կոնստրուկտորի խելք ունի, լավ հասկանում է մեխանիզմների «լեզուն»:

Մեկը մյուսին ընդհատելով, կոմունիստ մեխանիկատորի հասցեին ջերմ խոսքեր են ասում նրա աշխատանքային ընկերները: Կոմունիստները նրան մի քանի անգամ ընտրել են հանքի կուսկազմակերպության բյուրոյի անդամ, կոմբինատի կուսկոմիտեի անդամ: Կիմանաք դուք, որ անցյալ տարի ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը Արտաշես Պետրոսյանին շնորհեց Սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչում, որ նա ընտրվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ:

✻✻✻

Առավոտ է... Արեգակի առաջին ճառագայթները կուտակվում են գագաթը մշուշի մեջ կորած Կապուտջիղ լեռան կանաչ կրծքին, հալված ոսկու նման հոսում ցած, հեղեղում Գանձասարը: Զորում արթնանում են Քաջարանը, Ողչին, Հանքավանը: Զորաբերաններով ողորված ճանապարհը հատակվում է: Արևը ժպտում է ճոպանուղիների շարժուն վագոնիկներին, ու ձորի ահագին խորությունը կտրելով, հասնում հարստացուցիչ ֆաբրիկա: Գանձասարի ելուստներում շող են արձակում աշխատանքային եռուզեռով բռնված հանքաքար փոխադրող ավտոմեքենաների խցիկների ապակիները, էքսկավատորների արծաթին տվող շերեփների ատամները, խոր փորող հաստոցների պողպատաձույլ կորպուսները:

Ժամը 7-ն է: Հնչում է գիշերային հերթափոխության ավարտի ազդանշանը: Մարդիկ նստում են ավտոբուսները, գնում հանգստանալու:

Նրանց հոգնաբեկ աշխատանքը միշտ էլ հիանալի արդյունք է տալիս: Մեծ հոկտեմբերի հիսնամյակի պատվին սոցիալիստական մրցություն ծավալելով, հանքի բոլոր հերթափոխությունները այս օրերին գերակատարում են հանքաքարի արդյունահանման և հանքի բացման աշխատանքների առաջադրանքները:

Ահա տեմպերի տախտակին է մոտենում գիշերային հերթափոխի տեղամասի պետը: Նա հանում է ծոցատետրը, թվերը իրար գումարում ու կավճով գրում քառանիշ թիվը: Պլանը գերակատարված է: Հերթափոխ եկած կոմունիստ էքսկավատորավարներ Արտաշես Պետրոսյանը, Շահեն Հայրապետյանը և ուրիշներ նայում են տեմպերի տախտակին, որոշում գերազանցել ընկերներին:

— Առաջ Արտաշեսի մոտ գնանք,— առաջարկում է հերթափոխի պետը և մեզ առաջնորդում է դեպի 2165-րդ հորիզոնականը:

Ուրալյան հսկան տարերքի մեջ է: Քսանհինգ տոննա բեռնատարողությամբ ութ ավտոմեքենայի է սպասարկում Արտաշես Պետրոսյանը· Ութ վարորդներն էլ առաջավորներ են, առաջադրանքները գերակատարող: Սակայն նրանք հազիվ են հասցնում փոխադրել բարձվող հանքաքարը:

— Իսկական կոնվեյեր է, կենդանի հոսքային գիծ,— նկատում է հերթափոխի պետը,— բավական է, որ էքսկավատորը մի փոքր դադարի, ավտոմեքենաներն անմիջապես կշարվեն և ֆաբրիկան հարյուրավոր տոննա հանքաքար պակաս կստանա:

Ապա հերթափոխի պետը կանչում է հաշվառիչին, հարցնում արդյունքները:

— Բոլորից շատ Պետրոսյանն է բարձել, այս մեքենան էլ, որ բարձի, մի քանի հարյուր տոննա կդառնա,— հայտնում է հաշվառիչը:

— Եթե այս տեմպերով աշխատի, մինչև հերթափոխի վերջը մի քանի հազար տոննա կբարձի,— շշնջում է հերթափոխի պետը:

— Հավատացած եղեք, որ այդ թափով էլ կաշխատի,— վրա է բերում ավտովարորդ Վազգեն Հակոբյանը:

— Երբ Արտաշեսն է մեզ սպասարկում, քիթ սրբելու ժամանակ էլ չենք ունենում,— ավելացնում է մեկ ուրիշը:

Ու նա իրավացի է: Պետրոսյանի և նրա աշխատանքային ընկերների ջանքերով կոմբինատի կոլեկտիվը հոբելյանական մրցության այս օրերին միշտ կատարում, գերակատարում է մրցությամբ ստանձնած պարտավորությունները: Ընթացիկ տարվա անցած ժամանակամիջոցում ձեռնարկությունը լրացուցիչ մի քանի միլիոն ռուբլու թանկարժեք մետաղների կոնցենտրատ է ուղարկել երկրի մետալուրգներին: Իսկ կոմունիստ էքսկավատորավարը հինգ ամսում ութ ամսվա նորմա է կատարել:

Տարեկան առաջադրանքը ժամկետից շուտ կատարելու, մեծ հոկտեմբերի պանծալի հիսնամյակն արժանավայել դիմավորելու համար ծավալված մրցությունն օրեցօր նոր հաջողություններ է բերում Քաջարանի Լենինի շքանշանակիր կոմբինատի կոլեկտիվին: Ինչպես միշտ, այսօր էլ էքսկավատորավար Պետրոսյանը պայքարի առաջին գծումն է և իրեն դրսևորում է որպես անձնվեր կոմունիստ, որպես իսկական հայրենասեր:

Մ. ՈՍԿԱՆՅԱՆ



# ԱՆԱՍՆԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ ԴԱՐՁՆԵՆՔ ՇԱՀՈՒԹԱԲԵՐ

Մ. ԲԱԲԱՋԱՆՅԱՆ, Ա. ԱՍԱՏՐՅԱՆ

Այժմ, երբ գնման գների բարձրացման շնորհիվ կոլտնտեսությունների համար բարենպաստ պայմաններ են ստեղծվել անասնապահությունն օգտավետ վարելու համար, նրա արտադրանքի ինքնարժեքի իջեցումն առանձնահատուկ նշանակություն է ստանում։ Մինչդեռ հանրապետության շատ շրջաններում անասնապահությունը շահութաբեր չէ, բարձր է կաթի, մսի, բրդի, ձվի ինքնարժեքը։ Բավական է նշել, որ հանրապետության կոլտնտեսություններում 1965 թ. (որը կլիմայական պայմանների տեսակետից միանգամայն նպաստավոր էր անասնապահության համար) ոչխարաբուծության շահութաբերության մակարդակը կազմում էր 17,1 տոկոս, իսկ տավարաբուծությունը և թռչնաբուծությունը վնասաբեր էին։ Այդ այն դեպքում, երբ խաղողագործության շահութաբերության մակարդակը հասնում էր 46, ծխախոտագործությանը՝ 34,7, պտղաբուծությանը՝ 119 տոկոսի։ Բերված տվյալները վկայում են, որ անասնապահությունը շարունակում է մնալ որպես գյուղատնտեսության ցածր եկամտաբեր ճյուղ։

Զանգեզուրի գյուղատնտեսական գոտու Սիսիանի և Գորիսի շրջանները հայտնի են զարգացած անասնապահությամբ և հացահատիկային տնտեսությամբ։ Նշված շրջանների կոլտնտեսություններում 1965 թվականին արտադրվել է 25,5 հազար ցենտներ միս (կենդանի քաշով), 96,1 հազար ցենտներ կաթ, 1,6 հազար ցենտներ բուրդ, կամ հանրապետության բոլոր կոլտնտեսությունների նկատմամբ համապատասխանաբար՝ 6,8, 15,8 և 11,4 տոկոսը։ 1965 թ. այստեղ արտադրվել է 138,4 հազար ցենտներ հացահատիկ, կամ հանրապետության կոլտնտեսությունների բերքի 20 տոկոսը։

Հանրապետության կոլտնտեսային անասնապահության և հացահատիկային արտադրության մեջ Սիսիանի և Գորիսի շրջանների կոլտնտեսություններն ունեն որոշիչ տեղ. հետևաբար պետք է լուրջ ուշադրություն նվիրել այդ շրջանների արտադրական հնարավորությունները լրիվ օգտագործելու, անասնապահության շահութաբերությունը բարձրացնելու հարցերին։

Այդ շրջանների տերիտորիայի լեռնային ռելիեֆը, ծովի մակերևույթից նրա ունեցած բարձրության խիստ տատանումները, պայմանների խիստ բազմազանությունը շատ տեղերում մեծ չափով դժվարացնում են գյուղատնտեսության մասնագիտացումը։

Հայտնի է, որ անասնապահական մթերքների արտադրության ավելացման համար առաջնահերթ նշանակություն ունի անասունների խտությունը՝ օգտագործվող հողատարածությունների մեկ միավորի հաշվով։ Որքան շատ է անասունների թիվը, այնքան մեծ մթերքների քանակը։



Պետք է նշել, որ Սիսիանի ու Գորիսի շրջանների անասնապահական մթերքների արտադրությունը զգալի չափով կարելի է ավելացնել ոչխարաբուծության զարգացման հաշվին։ Գորիսի շրջանի Քարաշենի կոլտնտեսությունն ունի 1660 հեկտար գյուղատնտեսական պիտանի հող, 3604 գլուխ ոչխար, կամ գյուղատնտեսական օգտագործելի 100 հեկտարի հաշվով՝ ավելի քան 217 գլուխ։ Նույն հաշվով այստեղ արտադրվել է 42,3 ցենտներ միս, այդ թվում ոչխարի՝ 17,9 ցենտներ։ Անասնապահության համախառն արտադրանքի արժեքը կազմեց մոտ 10 հազար ռուբլի։ Իսկ Սիսիանի շրջանի Արավուսի կոլտնտեսությունը (որտեղ նույնպես լավագույն հնարավորություններ կան ոչխարաբուծության զարգացման համար) ունի 2077 հեկտար գյուղատնտեսական պիտանի հող, ընդամենը 850 գլուխ ոչխար, կամ գյուղատնտեսական հողատեսքերի 100 հեկտարի հաշվով՝ 41 գլուխ։ Այդ նույն հաշվով արտադրվել է 15,9 ցենտներ միս, այդ թվում ոչխարի միս 3,5 ցենտներ։

Ոչխարաբուծության արագ զարգացման համար անհրաժեշտ է վերանայել հոտի կազմը և, ամենագլխավորը, ամրապնդել կերային բազան։ Բանն այն է, որ կերի խիստ պակասի պատճառով ոչխարների զգալի մասը մսուրային շրջանում արածեցնում էին հանրապետությունից դուրս գտնվող ձմեռային արոտավայրերում։ Բայց պրակտիկան ցույց տվեց, որ դա զգալի կորուստներ էր պատճառում։ Ավելի նպատակահարմար է ոչխարների ձմեռումն անցկացնել տեղում, իսկ դա պահանջում է կերի լրացուցիչ կուտակումներ։ Ահա այդ ուղղությամբ պետք է մշակվեն համապատասխան միջոցառումներ։

Կատարված հաշվարկումները ցույց են տալիս, որ եթե բոլոր կոլտնտեսություններում անասունների խտությունը հասցվի շրջանների միջին մակարդակին (82,1 պայմանական գլուխ 100 հեկտար պայմանական հողի հաշվով), ապա մսի արտադրությունը կավելանա 2640, իսկ կաթինը՝ 5760 ցենտներով, կամ համապատասխանաբար՝ 22 և 12 տոկոսով։ Եթե նշված ցուցանիշը հասցրվի 110 պայմանական գլխի (որը 20—30 գլխով ցածր է առաջավոր տնտեսությունների մակարդակից), ապա մսի ելքը կավելանա 39,3, կաթինը՝ 30,7, բրդինը՝ 28,1 տոկոսով։

Ցածր են ուսումնասիրվող տնտեսությունների անասունների մթերատվության ցուցանիշները։ Մեկ կովի կաթնատվությունը 1965 թ. կազմեց 1153 կգ, իրացված մեկ խոշոր եղջերավոր անասունի քաշը՝ 216 կգ, ոչխարինը՝ 39,5 կգ, մեկ ոչխարի բրդատվությունը՝ 2,1 կգ, կամ հանրապետության կոլտնտեսությունների միջին ցուցանիշների համեմատությամբ կաթնատվությունը կազմել է 83,3, խոշոր եղջերավոր անասունների քաշը՝ 99,6, ոչխարի միջին քաշը՝ 100,3, իսկ բրդատվությունը՝ 105 տոկոս։ Մինչդեռ ուսումնասիրվող շրջանների առաջավոր կոլտնտեսությունները մեկ կովից ստանում են մինչև 1600 կգ կաթ (Շաքի, Շաղաթ, Խնածախ, Խնձորեսկ), մեկ ոչխարից՝ 2,8 կգ բուրդ (Տաթև, Սվարանց, Խնձորեսկ, Սպանդարյան, Սառնակունք, Շաղաթ)։

Անասունների մթերատվության բարձրացումը ուղղակիորեն կախված է արտադրության ինտենսիվության մակարդակից։ Դրա համար առավել արդյունավետ միջոցառումներից են՝ ցանովի խոտաբույսերի տարածությունների ընդարձակումը, արոտավայրերի բարելավումը և ջրարբիացումը, երկարատև օգտագործման համար կուլտուրական արոտավայրերի ստեղծումը, քիմիական կերային միջոցների օգտագործումը (հատկապես կարբամիդի և վիտամինային լրացումների), անասունների կերակրումը ըստ մթերատվության խմբերի, նրանց ցեղայնության բարելավումը և այլն։

Անասնապահական մթերքների արտադրության ավելացման փոքր ռեզերվ չէ նաև անասունների անկման և ստերջության կրճատումը։ Ուսումնասիրվող շրջանների կոլտնտեսություններում 1965 թ. խոշոր եղջերավոր անասունների հարկադիր մորթը և անկումը հասել են 2581, ոչխարներինը՝ 14334 գլխի, կամ ընդհանուր գլխաքանակի 5,5 և 15,4 տոկոսը։ Ստերջ են մնացել կովերի և երինջների 25,5 տոկոսը։

Ընդհանուր առմամբ պետք է նշել, որ անասնաբուծության կերային և այլ հնարավորություններն ավելի լավ են օգտագործվում սակավահող տնտեսություններում։ Համեմատաբար մեծ տարածություններ և արտադրական հնարավորություններ ունեցող կոլտնտեսությունները պատշաճ ուշադրություն չեն դարձնում անասունների գլխաքանակի և անասնապահական մթերքների արտադրության ավելացման վրա, բավարարվում են ստացվող արդյունքներով։

Մեծ ռեզերվ է խոշոր տնտեսությունների հողային տարածությունների լրիվ և ինտենսիվ օգտագործումը։ Աղուդիի կոլտնտեսությունն ունի 1173 հեկտար պայմանական վարելահող։ 100 հեկտարի հաշվով այստեղ ընկնում է ընդամենը 50 պայմանական գլուխ անասուն և ստացվել է 6 հազ. ռուբլու արժեքով անասնապահական մթերք, իսկ նույն գոտու Լծենի կոլտնտեսությունում, որն ունի ընդամենը 474 հեկտար պայմանական վարելահող, անասունների գլխաքանակը հասնում է 122 գլխի և անասնապահական մթերքների արժեքը 23,2 հազ. ռուբլու կամ համապատասխանաբար՝ 2,4 և 3,8 անգամ ավելի, քան Աղուդիի կոլտնտեսությունում։ Մեզ թվում է, որ եթե մի որևէ տնտեսություն իր միջոցներով ի վիճակի չէ արդյունավետ օգտագործելու իրեն պատկանող հողային տարածությունները, իսկ նրա հարևան տնտեսությունները հողերի սահմանափակվածության պատճառով մեծ կարիքի մեջ են, ապա պետք է հողերի որոշ վերաբաժանում կատարել՝ վերջինների օգտին։ Դրան են հանգեցնում նաև տնտեսությունների օպտիմալ չափերի ուսումնասիրությունները։ Պարզ է, որ տնտեսությունների օպտիմալ չափերին վերաբերող և ոչ մի մասնագիտական հանձնարարական չի կիրառվի, եթե փոփոխություններ չմտցվեն հողային օրենսդրության մեջ։

Արտադրության արդյունավետության բարձրացման կարևորագույն պահանջը ո՛չ միայն ավելի շատ արտադրելն է, այլև ավելի էժան, աշխատանքային և նյութական նվազագույն ծախսումներով գյուղատնտեսության բոլոր ճյուղերը շահութաբեր դարձնելը։ Կուսակցության Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումի որոշումների իրագործման շնորհիվ կոլտնտեսությունները այժմ լայն հնարավորություններ են ստացել արտադրության արդյունավետությունը բարձրացնելու համար։ Սահմանված նոր գնման գների պայմաններում շահույթների չափը հնարավոր է ավելացնել ի հաշիվ աշխատանքի արտադրողականության բարձրացման, գիտության նվաճումների ներդրման։

Տավարաբուծության մեջ եկամտաբերության մակարդակի վրա մեծ ազդեցություն է գործում արտադրության չափը, որը սերտորեն կապված է տնտեսության մասնագիտացման հետ։

83-րդ էջի № 1 աղյուսակի տվյալները հաստատում են այդ դրույթը։

Խմբավորման տվյալները ցույց են տալիս, որ երրորդ խմբի կոլտնտեսություններում տավարաբուծության եկամտաբերության մակարդակը գրեթե երեք անգամ բարձր է՝ առաջինի համեմատությամբ։ Երբ տնտեսությունը պահում է 300-ից ավելի կով, հնարավորություն ունի զգալիորեն իջեցնելու արտադրանքի ինքնարժեքը՝ վերադիր ծախսերի կրճատման, անասնաշենքերի



*Աղյուսակ 1*

ՍԻՍԻԱՆԻ ԵՎ ԳՈՐԻՍԻ ՇՐՋԱՆՆԵՐԻ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԽՄԲԱՎՈՐՈՒՄՆ ԸՍՏ ՖԵՐՄԱՆԵՐՈՒՄ ԿՈՎԵՐԻ ԳԼԽԱՔԱՆԱԿԻ (1965 Թ.)

| Կոլտնտեսությունների խմբերը ըստ կովերի գլխաքանակի ֆերմաներում | Տնտեսությունների թիվը խմբում | Աշխատանքային ծախսումները մեկ ցենտների վրա (մարդ-օր) | | Մեկ ցենտների ինքնարժեքը (ռուբլի) | | Շահութաբերության մակարդակը (տոկոս) | Շահույթը մեկ կովի հաշվով (ռուբլի) |
|---|---|---|---|---|---|---|---|
| | | մսի | կաթի | մսի | կաթի | | |
| Մինչև 150 գլուխ . . . . | 18 | 17,5 | 3,2 | 116,2 | 19,1 | 5,9 | 22 |
| 150—300 » . . . . | 10 | 16,5 | 2,9 | 110,2 | 17,9 | 7,5 | 32 |
| 300-ից բարձր . . . . . | 10 | 12,8 | 2,4 | 103,8 | 17,2 | 17,9 | 75 |
| Ընդամենը . . | 38 | 14,8 | 2,7 | 108,4 | 17,8 | 12,6 | 52 |

և սարքավորման ավելի արդյունավետ օգտագործման, աշխատանքային պրոցեսների կատարելագործման շնորհիվ։ Եվ որպես օրինաչափ հետևանք՝ բարձրանում է զուտ եկամտի չափը մեկ կովի հաշվով։

Աղյուսակից երևում է, որ խոշոր տնտեսություններում մոտ 1,5 անգամ բարձր է աշխատանքի արտադրողականությունը։ Դա օրինաչափ է, քանի որ հենց այստեղ են առաջին հերթին ներդրվում սարքավորումները, որոնք հեշտացնում են անասնապահի աշխատանքը, կրճատում աշխատանքային ծախսումները։ Միևնույն ժամանակ բարձրանում է անասունների մթերատվությունը, քանի որ նրանց խնամքը բարելավվում է, կատարելագործվում կերակրման ռեժիմը։

Տվյալների վերլուծությունից պարզվում է, որ ուսումնասիրվող տնտեսություններում հատկապես արդյունավետ է տավարի մսի արտադրությունը, որը և ապահովում է տվյալ ճյուղի շահութաբերությունը ամբողջությամբ վերցրած։ Կաթի արտադրությունը շատ անգամ վնասաբեր է. դժվարությունների հետ է կապված նրա իրացումը, նկատի ունենալով սպառողների հեռավորությունը արտադրման վայրերից։ Ուստի, տավարաբուծության եկամտաբերության բարձրացման ուղիներից կարելի է համարել հատկապես մսի արտադրության ավելացումը, մսատու ցեղերի ներդրումը, բտման տնտեսությունների կազմակերպումը և այլն։

Հայտնի է, որ անասնապահական մթերքների ինքնարժեքը և արտադրության արդյունավետությունը ուղղակի կախում ունեն տնտեսության մեջ արտադրվող կերի ինքնարժեքից և գնովի կերի արժեքից։ Գնովի կերն ունի համեմատաբար ցածր տեսակարար կշիռ։ Որոշելու համար, թե ինչպես է ազդում սեփական կերի ինքնարժեքն անասնապահության արդյունավետության վրա, մենք կատարել ենք մի հաշվարկ, որի արդյունքները բերվում են № 2 աղյուսակում (էջ 84)։

Խմբավորման տվյալները ցույց են տալիս, որ միայն տնտեսությունների առաջին խմբում կերարտադրության վիճակը կարելի է նորմալ համարել։ Մնացած 28 կոլտնտեսություններում հայթայթվող կերի կերամիավորի ինքնարժեքը բարձր է և դրա հետևանքով խիստ իջնում է արտադրության եկամտաբերությունը։

կերարտադրությանը մեծ ուշադրություն են դարձնում Խնձորեսկի, Տաթևի, Տեղի, Բռնակոթի, Անգեղակոթի, Սալվարթի կոլտնտեսությունները։ Այստեղ լավ է կազմակերպված աշխատանքը, ժամանակին և առանց կորուստների հավաքվում է բերքը և, որպես կանոն, բարձր է կերային կուլտուրաների բերքատվությունը և կերի որակը։

1965 թ. Գորիսի շրջանի Տեղ գյուղի կոլտնտեսությունում գարու բեր-

Աղյուսակ 2

ՍԻՍԻԱՆԻ ԵՎ ԳՈՐԻՍԻ ՇՐՋԱՆՆԵՐԻ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԽՄԲԱՎՈՐՈՒՄՆ ԸՍՏ ՍՏԱՑՎԱԾ ԿԵՐԻ ՄԵԿ ՑԵՆՏՆԵՐ ԿԵՐԱՄԻԱՎՈՐԻ ԻՆՔՆԱՐԺԵՔԻ (1965 Թ.)

| Կոլտնտեսությունների խմբերը ըստ մեկ ցենտներ կերամիավորի ինքնարժեքի | Տնտեսությունների թիվը խմբում | Մեկ ցենտներ կերամիավորի վրա ծախսված մարդ-օր | Մեկ ցենտների ինքնարժեքը (ռուբ.) | | Տավարաբուծության եկամտաբերության մակարդակը |
|---|---|---|---|---|---|
| | | | կաթ | միս | |
| 2—4 ռուբլի . . . . | 10 | 3,9 | 16,7 | 102,5 | 18,9 |
| 4,1—6 » . . . . | 14 | 4,9 | 17,9 | 107,7 | 11,5 |
| 6-ից բարձր . . . . | 14 | 6,5 | 20,4 | 122,5 | 1,8 |
| Ընդամենը . . | 38 | 4,8 | 17,8 | 108,4 | 12,6 |

քատվությունը կազմեց 14 ց., կորնգանինը՝ 34,1 ց., սիլոսային կուլտուրաներինը՝ 81 ց.։ Մշակվող կերային կուլտուրաների մեկ հեկտարից ստացվել է միջին հաշվով 16,8 ց. կերամիավոր, իսկ մեկ ցենտներ կերամիավորի ինքնարժեքը կազմել է 1,46 ռուբլի։ Նույն շրջանի Հարևան Արավուսի կոլտնտեսությունում, որը գտնվում է նույն հողակլիմայական պայմաններում, գարու բերքատվությունը կազմեց 9,1 ց., կորնգանինը՝ 21,3 ց., սիլոսային կուլտուրաներինը՝ 30 ց.։ Միջին հաշվով մեկ հեկտարից ստացվել է 9,9 ցենտներ կերամիավոր՝ 7,2 ռուբլի ինքնարժեքով։ Այստեղ տավարաբուծությունը ավելի պակաս շահութաբեր է և դրա պատճառը առաջին հերթին պետք է փնտրել կերարտադրության թերությունների մեջ։

Որպես կանոն, ուսումնասիրվող տնտեսություններում մշակվող կերային կուլտուրաներից շատ կերային միավորներ ունեն կորնգանը և հացահատիկային կուլտուրաները, այնուհետև՝ սիլոսային կուլտուրաները։ Կերամիավորները քիչ են կերային արմատապտուղներում, իսկ նրանց ինքնարժեքը՝ ամենաբարձրն է։ Հետևապես կերային բազայի ամրապնդումը Սիսիանի և Գորիսի շրջաններում պետք է ընթանա ցանովի խոտի տարածությունների ընդլայնման և հյութալի կերեր տվող կուլտուրաների արմատավորման ուղղությամբ, բարձրացնելով նրանց բերքատվությունը։

Անասնապահության եկամտաբերության բարձրացման գործում կարևոր է նաև կերի ռացիոնալ օգտագործումը։ Խնձորեսկի կոլտնտեսությունում կաթի մեկ ցենտների արտադրության համար ծախսվել է 1,5, իսկ մսի՝ 9,6 ցենտներ կերամիավոր։ Այստեղ անասնաբուծությունը մեծ եկամուտ է բերում։ Մինչդեռ Քարահունջի կոլտնտեսությունում կաթի և մսի արտադրության համար ծախսվում է համապատասխանաբար 2,2 և 2,6 անգամ ավելի կերամիավոր, իսկ անասնաբուծությունը չնչին եկամուտ է տալիս։ Կերի այսպիսի գերածախսի պատճառներն են՝ կերաբաժնի ոչ ճիշտ ընտրությունը, սպիտակուցային կերերի, վիտամինների և անտիբիոտիկների պակասը, կերի հաշվառման և բացթողնման գործում տեղ գտած թերությունները և որպես դրա հետևանք՝ կերի շռայլումը որոշ տնտեսություններում։

Անասնաբուծությունը գյուղատնտեսության այնպիսի մի ճյուղ է, որը համեմատաբար հեշտ է ենթարկվում կոմպլեքսային մեքենայացման։ Ընդ որում խոզաբուծության և թռչնաբուծության համար արդեն ստեղծվել են հոսքային գծեր՝ խոզի և թռչունի մսի, ձվի՝ ինդուստրիալ հիմունքներով արտադրության նպատակով։ Սակայն մեքենայացման եղած միջոցները ուսումնասիրվող տնտեսություններում լավ չեն օգտագործվում։ Համարյա չեն օգտագործվում կաթի ագրեգատները, գոմաղբի և կերի տեղափոխման գծերը և այլն։

Մեր կարծիքով, դրա պատճառը սարքավորումների կոնստրուկտիվ թերություններն են և բարձրորակ կադրերի բացակայությունը։ Ուստի անասնապահության կոմպլեքսային մեքենայացման գործում կարևոր ուղղություններից կարելի է ընդգծել պարզ, թեթև, գործածության համար հեշտ սարքավորումների ստեղծումը և համապատասխան կադրերի պատրաստումը, արտադրության կուլտուրայի բարձրացումը։ Որպես առաջին քայլ կարելի է առաջարկել հատուկ դպրոցի ստեղծումը, որտեղ 3—6 ամսով գործուղել կթվորուհիներին և անասնապահներին, բարձրացնելու իրենց որակավորումը, անասնապահ-մեխանիկի մասնագիտություն ստանալու համար։

Անասնապահության մեջ մեքենայացման ցածր աստիճանը հանգեցնում է բարձր աշխատանքային ծախսումների, աշխատանքի արտադրողականության ցածր մակարդակի։

Ուսումնասիրվող տնտեսություններից 20-ը կամ 53 տոկոսը մեկ ցենտներ տավարի միս արտադրելու համար ծախսում են 15—25 մարդ-օր։ Խմբավորման նյութերը ցույց են տալիս, որ որքան ցածր է աշխատանքի արտադրողականությունը, այնքան բարձր է արտադրանքի ինքնարժեքը, ցածր՝ արտադրության արդյունավետությունը։

Այսպիսով, ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ Գորիսի և Սիսիանի շրջանների կոլտնտեսությունները մեծ ռեզերվներ ունեն անասնապահական մթերքների արտադրության ավելացման և նրա արդյունավետության բարձրացման համար։ Հայտնաբերելով և խելացի օգտագործելով եղած հնարավորությունները, ուսումնասիրվող տնտեսությունները կարող են զգալիորեն ավելացնել անասնապահական մթերքների արտադրությունը։

---

**— Սովետական իշխանության տարիներին Հայաստանում ցանքատարածություններն աճել են 315 հազար հեկտարով, կամ շուրջ 5 անգամ։ Այդ նույն տարիներին հացահատիկային կուլտուրաների բերքատվությունն աճել է 2,5 անգամ, իսկ համախառն արտադրանքը՝ ավելի քան 6 անգամ։**

**— Անցած 47 տարում մեր հանրապետությունում ոռոգելի հողատարածություններն ավելացել են 170.000 հեկտարով. կառուցվել են Շիրակի, Սարդարապատի, Արտաշատի, Էջմիածնի, Լոռու, Սպիտակի, Սպանդարյանի, Դվինի, Դալմայի, Կոտայքի, Գառնիի, Թալինի, Ներքին Զանգվի, Արզնի-Շամիրամի և ուրիշ ջրանցքներ ու ջրամբարներ։**

**Ոռոգման ցանցի ընդարձակման շնորհիվ միայն խաղողի և պտուղների այգիները ավելացել են շուրջ 65 հազար հեկտարով։**

# ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ՇՐՋԱՆԱՌՈՒ ՄԻՋՈՑՆԵՐԸ

Ա. ԲԱԴԱԼՅԱՆ

*Մեր երկրում պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմի իրականացման պայմաններում հիմնական արտադրական ֆոնդերի հետ մեկտեղ, հատուկ նշանակություն է ստանում շրջանառու միջոցների օգտագործման արդյունավետության բարձրացումը։*

*Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցումը պահանջում է ֆինանսական մեծ ռեսուրսներ, որոնց մի մասը կարելի է ստանալ շրջանառու միջոցների արդյունավետ օգտագործման և դրանց շրջապտույտի արագացման շնորհիվ։ Այդ մենք կարող ենք ցույց տալ Հայկական ՍՍՀ արդյունաբերության կարևոր ճյուղերից մեկի՝ գինեգործական արդյունաբերության օրինակով, ուր գինիների երկրորդային մշակման գինեգործական ձեռնարկությունների տերիտորիալ տեղաբաշխման, փոխադրման ռացիոնալ ձևերի կիրառման և արտադրանքի իրացման ծախսերի կրճատման հիման վրա շրջանառու միջոցների շրջապտույտի արագացման հսկայական ռեզերվներ կան նաև շրջանառության ոլորտում։*

*Արդյունաբերության այս ճյուղի երկրորդային գինեգործության ձեռնարկություններում շրջանառության ոլորտն սպասարկող արտագործարանային ծախսերը թողարկվող արտադրանքի ինքնարժեքում մեծ տեսակարար կշիռ ունեն։ Դա բացատրվում է այդ ձեռնարկությունների արտադրանքի իրացման շրջանների հեռավորությամբ և փոխադրման ոչ ռացիոնալ ձևերով։*

*«Արարատ» վարչության ապրանքային արտադրանքի լրիվ ինքնարժեքում արտագործարանային ծախսերը 1966 թվականին կազմել են 9,5 տոկոս, այդ թվում երկրորդային գինեգործության ձեռնարկություններում՝ 12,9 տոկոս։*

*Արտաարտադրական ծախսերը մեծ տոկոս են կազմում հատկապես Երևանի գինու կոմբինատում (25 տոկոս) և շամպայն գինիների գործարանում (15,3 տոկոս)։ Դա բացատրվում է նրանով, որ այս ձեռնարկությունների շշալցված արտադրանքի գերակշռող մասը (Երևանի գինու կոմբինատում 80—83 տոկոսը, իսկ շամպայն գինիների գործարանում՝ քաղցր թունդացրած գինիների 85 տոկոսը) վաճառվում է հանրապետության սահմաններից դուրս, 3—11 հազար կիլոմետր հեռավորության վրա գտնվող շրջաններում (Ուրալում, Հեռավոր Արևելքում և ամենահեռավոր հյուսիսում)։ Արտադրանքն այդ վայրերը փոխադրելու համար նշված գործարանները երկաթուղուն վճարում են հսկայական փոխադրավարձ և կատարում փոխադրման հետ կապված շատ այլ ծախսեր (Երևանի գինու կոմբինատը 1966 թ. վճարել է 4800 հազար ռուբլի փոխադրավարձ)։*

*Արտադրանքի վաճառքի կազմակերպման այսպիսի վիճակը, մեր կարծիքով, չի կարելի նորմալ համարել։ Դա երկրորդային գինեգործության ձեռնարկությունների տերիտորիալ ոչ ճիշտ տեղաբաշխման հետևանք է։ Որպես թերություն պետք է նշել, որ Միության երկրորդային գինեգործության ձեռնարկությունները գլխավորապես տեղաբաշխված են երկրի եվրոպական, միջին ասիական և կովկասյան շրջաններում։ Այստեղ շատ քաղաքներում գործում են գինեգործական նույնիսկ մի քանի ձեռնարկություններ, մինչդեռ արևելյան և հյուսիսային խոշոր արդյունաբերական շատ կենտրոններում չկան անգամ մեկական գործարաններ։ Այդ այն ժամանակ, երբ Սիբիրի, Հեռավոր Արևելքի և Ղազախստանի բնական անսահման հարստություններն արագ յուրացնելու նպատակով, այդ շրջաններում, 1966—1970 թթ. հնգամյա և գլխավոր հեռանկարային պլանով նախատեսվում են արդյունաբերության զարգացման ավելի բարձր տեմպեր։*

*Միշտ և ամենուրեք ստեղծվում են արդյունաբերական նորանոր կենտրոններ, ավելանում է բնակչության թիվը, դրան զուգընթաց ավելանում է նաև սպառման առարկաների՝ այդ թվում և գինեգործական արտադրանքի պահանջը։ Սակայն պրակտիկան ցույց է տալիս, որ սպառման առարկաների արտադրությունը տեղաբաշխելիս այս և նման հարցերին պատշաճ ուշադրություն չի նվիրվում։ Դրանով է բացատրվում նաև այդ շրջաններում երկրորդային գինեգործության ձեռնարկությունների սակավաթվությունը։*

*Միության մեջ երկրորդային գինեգործության ձեռնարկությունների ներկայումս գոյություն ունեցող աշխարհագրական տեղաբաշխումն ունի էական թերություններ. այն տնտեսապես չի հիմնավորված և կարիք է զգում բարելավման*[1]*։*

*Բնակչության՝ գինու և կոնյակի հարաճուն պահանջը ժամանակին բավարարելու համար անհրաժեշտ է, որ Միության նշված շրջաններում (Սիբիրում և Հեռավոր Արևելքում) կառուցվեն երկրորդային գինեգործության նոր ձեռնարկություններ։ Այն, միաժամանակ, հնարավորություն կտա խիստ կրճատելու հեռավոր փոխադրումները, բեռնաթափելու երկաթուղին, ազատելու մեծ քանակությամբ վագոններ և տնտեսելու հսկայական ֆինանսական միջոցներ։*

*Այս տեսակետից Հայաստանի «Արարատ» վարչության համար բացառիկ կարևոր նշանակություն ունի Իրկուտսկում տարեկան 1,5 միլիոն դալ (դեկալիտր) շշալցման կարողությամբ երկրորդային գինեգործության ձեռնարկության կառուցումը։ Մենք առաջարկում ենք այդպիսի գործարան կառուցել, հատկապես, Իրկուտսկում, որովհետև երկրի այդ և նրան հարող շատ շրջաններում երկրորդային գինեգործության ձեռնարկություններ չկան, իսկ գինեգործական շրջաններից հազարավոր կիլոմետր հեռավորության վրա շշալցված վիճակում գինու և կոնյակի փոխադրումը կապված է մեծ դժվարությունների հետ, որի հետևանքով այստեղ բնակչության գինու և կոնյակի պահանջը լրիվ չի բավարարվում։ Իրկուտսկում գործարան կառուցելու դեպքում գինեգործական արտադրանքով հնարավոր կլինի ապահովել Բուրյաթ-Մոնղոլական ինքնավար հանրապետությունը, Կրասնոյարսկի, Պրիմորիեի, Խաբարովսկի երկրամասերն և ծայրագույն հյուսիսի շատ այլ շրջաններ։*

*Այժմ ընդհանուր գծերով ցույց տանք, թե ինչպիսին կլինի կառուցվող*

---

[1] *Այս հարցը բարձրացրել է նաև տնտեսական գիտությունների թեկնածու Լ. Բապանյանը. տե՛ս նրա* Հայկական ՍՍՀ գինու և կոնյակի արդյունաբերության եկամտաբերության բարձրացման ուղիները *դիսերտացիոն աշխատանքը, էջ 125։*

գործարանի տնտեսական արդյունավետությունը: Նախ ասենք, որ 1,5 միլիոն դալ շշալցման կարողությամբ գինու գործարանի կառուցման նախահաշվային արժեքը կազմում է 1,4—1,5 միլիոն ռուբլի: Գործարանի կառուցումը հնարավորություն կտա տարեկան 1,5 միլիոն դալ արտադրանք վաճառելու Երևանից 7—11 հազար կիլոմետր տարածության վրա գտնվող հեռավոր շրջաններում (ներկայումս վաճառվում է 1—1,2 միլիոն դալ արտադրանք՝ 3—11 հազար կիլոմետր հեռավորության վրա): Քանի որ արտադրանքը հիմնականում իրացվելու է սկսած Իրկուտսկից, նրա արևելյան, հյուսիսային և հյուսիսարևելյան շրջաններում, այս պատճառով տնտեսական արդյունավետության գումարի մեջ մտցված է Երևանից մինչև Իրկուտսկ ընկած հատվածի փոխադրումների կրճատումից տնտեսված երկաթուղային փոխադրավարձի լրիվ գումարը: 1,5 միլիոն դալ գինին և կոնյակը շշալցված վիճակում Երևանից Իրկուտսկ փոխադրելու համար պահանջվում է 1500 քառալիսեռ վագոն (յուրաքանչյուր վագոնում տեղավորվում է 1000 դալ արտադրանք): Իրկուտսկում շշալցման գործարան ունենալու դեպքում այդ արտադրանքը կարելի է փոխադրել հավասարաչերմ վագոն-ցիստեռններով, որի համար կպահանջվի 553 վագոն-ցիստեռն (յուրաքանչյուր վագոն-ցիստեռնի տարողությունն է 2710 դալ): Ներկայումս Երևանից մինչև Իրկուտսկ, քառալիսեռ, մեկ վագոն գինին փոխադրելու համար վճարվում է 4607 ռուբլի փոխադրավարձ. 1500 վագոնի համար այն կկազմի 6910 հազար ռուբլի: Մինչդեռ այդ նույն տարածության վրա հավասարաչերմ մեկ վագոն-ցիստեռնի համար վճարվում է փոխադրավարձ 3956 ռուբլի[1], իսկ 553 վագոնի համար կվճարվի 2188 հազար ռուբլի: Միայն ի հաշիվ երկաթուղային փոխադրավարձի կտնտեսվի 4722 հազար ռուբլի:

Բացի դա, գինին շշալցված վիճակում փոխադրելիս, յուրաքանչյուր վագոնի համար պահվում է 2 ուղեկցող: Ուղեկցողների պահպանման ծախսը Երևանից մինչև Իրկուտսկ կազմում է մեկ վագոնի համար մոտ 700 ռուբլի, իսկ բոլոր վագոնների (1500) համար 1050 հազար ռուբլի: Գինիները վագոն-ցիստեռնով փոխադրելիս այս ծախսերը ամբողջությամբ վերանում են, որովհետև վերանում է վագոններին ուղեկցելու անհրաժեշտությունը:

Այսպիսով, Իրկուտսկում 1,5 միլիոն դալ շշալցման կարողությամբ երկրորդային գինեգործության ձեռնարկություն կառուցելու դեպքում առաջին տարվա տնտեսումը դեռ ոչ լրիվ գումարով կկազմի 4222 հազար ռուբլի: Բացի դա, կազատվի 947 քառալիսեռ վագոն և զգալի բանվորական ուժ, որոնք հետագայում կարող են օգտագործվել ժողովրդական տնտեսության մյուս բնագավառներում:

Սակայն տնտեսումը միայն դրանով չի սահմանափակվում: Գինիները վագոն-ցիստեռններով փոխադրելու դեպքում իսպառ կվերանան ճանապարհին առաջացող կորուստները: Դրանք միայն Երևանի գինու կոմբինատում 1966 թվականին կազմել են 93,6 հազար ռուբլի: Բացի դա, ինչպես հայտնի է, շշալցված վիճակում արտադրանքը փոխադրվում է արկղներով: Ընդ որում շշերը փաթեթավորելու համար յուրաքանչյուր վագոնում պահանջվում է 618 արկղ, իսկ 1500 վագոնի համար կպահանջվի 1027 հազար արկղ (միանվագ բարձման դեպքում): Բայց նկատի ունենալով, որ յուրաքանչյուր արկղ տարվա ընթացքում կարող է կատարել 9 պտույտ (Երևան—Իրկուտսկ և հետա-

[1] Քաշի թեթևության շնորհիվ հավասարաչերմ վագոն-ցիստեռնի փոխադրավարձը քիչ է:



դարձ երկաթուղային վազքը տևում է մոտ 40 օր), տարեկան կտնտեսվի 114 հազար արկղ: Չմոռանանք ասել, որ արկղները պատրաստելու համար Հայաստանը փայտանյութ չունի, այն հիմնականում ստացվում է Պերմից և Սվերդլովսկից, որի փոխադրման համար կատարվող ծախսերը նույնպես կկրճատվեն:

Զգալի տնտեսում կառաջանա նաև երկրի արևելյան և հյուսիսային շրջաններից շրջանառու դատարկ շշերի փոխադրումները վերացնելու շնորհիվ: Այդ շշերը այլևս չեն փոխադրվի Երևան, այլ կմնան Իրկուտսկում: Կկրճատվի հաշվարկներում զետեղված շրջանառու միջոցների գումարը, որովհետև օգտագործումից դուրս կգան լցված և դատարկված վիճակում գործածվող տպակյա շշերը, արկղները և այլն:

Իրկուտսկում երկրորդային գինեգործության ձեռնարկության կառուցումն ունի ժողովրդա-տնտեսական մեծ նշանակություն: Նրա կառուցումը վաղուց անհրաժեշտություն է: Մեր կարծիքով «Արարատ» վարչությունն առանց հապաղելու պետք է ձեռնամուխ լինի այդ շատ կարևոր միջոցառման շուտափույթ իրականացմանը:

Շրջանառության ոլորտի ծախսերի տնտեսման բնագավառում ոչ պակաս նշանակություն կունենա «Արարատ» վարչության Մոսկվայի կամ Լենինգրադի գինու գործարանում կոնյակի պատրաստման ոչ մեծ արտադրամասի կառուցումը: Ամեն տարի Երևանի կոնյակի գործարանը «Արարատ» վարչության Մոսկվայի և Լենինգրադի գինու գործարաններին ուղարկում է մեծ քանակությամբ պատրաստի կոնյակ: 1966 թ. այն կազմել է 244 հազար դալ: Վերջինները, ստանալով պատրաստի կոնյակը, այն շշալցնում են իրենց ունեցած միջոցներով և բաց թողնում առևտրական կազմակերպություններին:

## ՍՍՀՄ-Ն ԱՅՍՕՐ

(Թվեր և փաստեր)

◆ ՍՍՀՄ-ը բաղկացած է միութենական 15 հանրապետություններից և ունի 234 միլիոն բնակիչ: 1965 թվականի տվյալներով բնակչության 75,4 տոկոսը բանվորներ ու ծառայողներ են, 24,6 տոկոսը՝ կոլտնտեսային գյուղացիներ: 1966 թվականին, 1926 թվականի համեմատությամբ, մտավոր աշխատողների թիվն ավելացել է 10 անգամ և հասել 26 միլիոնի:

◆ 1918—1965 թվականներին երկրում կառուցվել ու շահագործման են հանձնվել պետական 39.760 արդյունաբերական խոշոր, ինչպես նաև մեծ թվով միջակ ու մանր ձեռնարկություններ: Դրա շնորհիվ ՍՍՀՄ-ը տալիս է համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մոտավորապես 1/5-ը (ցարական Ռուսաստանը տալիս էր 4 տոկոսից քիչ ավելի):

◆ Սովետական Միությունը դարձել է ինդուստրիալ խոշոր տերություն, որն արդյունաբերական արտադրանքի ծավալով Եվրոպայում գրավում է առաջին, իսկ աշխարհում՝ երկրորդ տեղը:

◆ 1913 թվականի համեմատությամբ, 1965 թվականին ՍՍՀՄ-ում հասարակական համախառն արտադրանքն ավելացել է 5,7, ազգային եկամտի արտադրությունը՝ 32, հիմնական արտադրական ֆոնդերը՝ 15,2, արդյունաբերության համախառն արտադրանքը (1966 թվականին)՝ 66 անգամ, գյուղատնտեսության համախառն արտադրանքը՝ 2,5, կապիտալ ներդրումները՝ 58,1 անգամ:

◆ Սովետական իշխանության տարիներին միութենական բոլոր հանրապետություններում ստեղծվել է ծանր արդյունաբերություն, որը զարգանում է արագ տեմպե-

Կոնյակը պատրաստվում է կոնյակի 65—70 տոկոսանոց սպիրտից, նրան խառնելով թորած ջուր և որոշ օժանդակ նյութեր: Նշված թնդության կոնյակի սպիրտներից պատրաստած 40 տոկոսանոց սովորական կոնյակների մեջ թորած ջրի քանակությունը կազմում է 40—42 տոկոս: 1966 թ. վերը նշված գործարաններին բարձած 244 հազար դալ կոնյակի պատրաստման համար, սպիրտից բացի, արհեստականորեն խառնած թորած ջրի քանակությունը կազմել է 97,6 հազ. դալ: Եթե կոնյակի կուպաժը (խառնումը) կատարվեր «Արարատ» վարչության նշված գործարաններից որևէ մեկում, այդ նպատակի համար Երևանի կոնյակի գործարանից ստանալով միայն հասունացված սպիրտը, ապա Երևանից Մոսկվա և Լենինգրադ ներկայումս կատարվող կոնյակի փոխադրումները կկրճատվեին մոտ 40 տոկոսով: Բացի դա, ռացիոնալ կլիներ, եթե կոնյակի սպիրտը Մոսկվա կամ Լենինգրադ փոխադրվեր ո՛չ թե տակառներով, ինչպես ներկայումս է, այլ վագոն-ցիստեռններով: Այս միջոցառումների տնտեսական արդյունավետությունն ապացուցվում է հետևյալ տվյալներով:

ա) փոխադրումների ծավալը կկրճատվի 97,6 հազար դալով (կոնյակի սպիրտին խառնված) թորած ջրի քանակության չափով, ազատվում է 36 քառալիսեռ վագոն և տնտեսվում է 72 հազար ռուբլի, որը որպես փոխադրավարձ 1966 թ. հատկացվել է երկաթուղուն՝ կոնյակի մեջ պարունակվող թորած ջուրը Մոսկվա և Լենինգրադ փոխադրելու համար:

բ) Կոնյակը տակառներով փոխադրելիս առաջանում է կորուստ, նորմայի սահմանում՝ տակառների փայտանյութի մեջ ներծծվելու հետևանքով 0,3 տոկոս, փոխադրման ժամանակ՝ 0,42 տոկոս. ընդամենը 0,72 տոկոս, որը 244 հազար դալ փոխադրված կոնյակի նկատմամբ կազմում է 1757 դալ, կամ

րով: Այսպես, արդյունաբերական արտադրանքը Ղազախական ՍՍՀ-ում (1913 թվականի համեմատությամբ) ավելացել է 94, Կիրգիզական ՍՍՀ-ում՝ 102, Հայկական ՍՍՀ-ում՝ 107 անգամ և այլն:

◆ ՍՍՀՄ արդյունաբերական արտադրանքը 1913 թվականին կազմել է ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրանքի 12,5, 1950 թվականին՝ 30, 1957 թվականին՝ 47, 1965 թվականին՝ 65 տոկոսը: Գնալով ՍՍՀՄ-ն արդյունաբերական արտադրանքի ծավալով ավելի է մոտենում ԱՄՆ-ին: Բավական է ասել, որ նոր հնգամյակում ՍՍՀՄ արդյունաբերական արտադրանքի ծավալը կաճի 1,5 անգամ:

◆ Հնգամյակի առաջին տարում, 1966 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, Սովետական Միությունում հասարակական արդյունքն ավելացել է 8, ազգային եկամուտը՝ 7,5, արդյունաբերական արտադրանքը՝ 8,6 և գյուղատնտեսական արտադրանքը՝ 10 տոկոսով: Այդ նույն ժամանակաշրջանում ավելի քան 6 տոկոսով աճել է բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող ռեալ եկամուտը:

◆ ՍՍՀՄ արդյունաբերության համախառն արտադրանքի աճի ամեն մի տոկոսը այս տարի հավասար է ամբողջ այն արտադրանքի երկու երրորդին, որ թողարկել է ցարական Ռուսաստանի արդյունաբերությունը 1914 թվականին:

◆ Անցած 50 տարում ՍՍՀՄ-ում արտադրության միջոցների արտադրությունը (Ա խումբ) աճել է 141 անգամ, սպառման առարկաների արտադրությունը (Բ խումբ)՝ ավելի քան 20 անգամ:

◆ Արդյունաբերության բարձր տեմպերով կարգացումն իր հետ բերեց արդյունաբերական արտադրանքի առանձին տեսակների թողարկման արագ աճ: Այսպես. էլեկտրաէներգիայի արտադրությունը 1966 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, աճել է 272,5 անգամ, քարածխինը՝ 20, նավթինը՝ 25,7, թուջինը՝ 16,7, պողպատինը՝ 22,5, պրոկատինը՝ 21,3, հանքային պարարտանյութերինը՝ 397,8, մետաղկտրիչ հաստոցներինը՝ 106,1, ցեմենտինը՝ 44,4 անգամ և այլն:



130 հազար ռուբլի: Մինչդեռ կոնյակի սպիրտը վագոն-ցիստեռններով փոխադրելիս կորուստը կկազմի 0,15 տոկոս կամ 219 դալ: Սպիրտի այդ քանակությունից կարելի է պատրաստել 384 դալ կոնյակ, որը կկազմի 28,3 հազար ռուբլի: Այսպիսով, ի հաշիվ կոնյակի կորուստների կրճատման, կարելի է տնտեսել 101,7 հազար ռուբլի: Մենք դեռ չենք հաշվում նորմայից դուրս կոնյակի այն կորուստները, որպիսիք փոխադրումների ժամանակ առաջանում են տակառների մաղումներից և այլ պատահարներից: Այսպիսի կորուստները 1966 թ. Երևանի կոնյակի գործարանում կազմել են 90 հազար ռուբլի:

գ) Կոնյակը տակառներով փոխադրելիս զբաղեցվում են մեծ քանակությամբ տրանսպորտային տակառներ: Դրանք 1966 թ. կազմել են 4500 հատ: Մոսկվայից և Լենինգրադից նշված քանակությամբ տակառները դատարկ վիճակում ետ վերադարձնելու համար օգտագործվել է 80 վագոն, որի համար երկաթուղուն վճարվել է շուրջ 120 հազար ռուբլի փոխադրավարձ: Ինչ վերաբերում է վագոն-ցիստեռններին, ապա դրանք գրեթե դատարկ չեն վերադարձվի, այլ կօգտագործվեն Բուլղարիայից և Ռումինիայից ներմուծվող կոնյակի սպիրտները Երևան փոխադրելու համար:

դ) Տակառները վերանորոգելու, մշակելու և ավտոմեքենաներով փոխադրման նախապատրաստելու, իսկ այնուհետև դրանք վագոններում բարձելու և բեռնաթափելու համար Երևանի կոնյակի գործարանում տարեկան պահվում են 5 բեռնակիր, 2 տակառագործ, տակառ մշակող 2 բանվոր, ընդամենը 9 հոգի, որոնց վճարվում է 10,4 հազար ռուբլի աշխատավարձ: Այս նույն աշխատանքները կատարելու համար Մոսկվայի և Լենինգրադի գործարաններում նույնպես պահվում են բանվորներ՝ նրանց տարեկան վճարելով (երկու գործարաններում միասին վերցրած) մոտ 7 հազար ռուբլի աշխատա-

◆ 1929—1966 թվականներին մեր երկրում արդյունաբերական արտադրության տարեկան միջին աճը կազմել է 11,1 տոկոս, մինչդեռ ԱՄՆ-ում՝ 4, իսկ Անգլիայում և Ֆրանսիայում՝ 2,5 տոկոս:

◆ Իր արագաթափ կարգացման շնորհիվ ՍՍՀՄ-ը վաղուց ԱՄՆ-ին գերազանցել է քարածխի, երկաթահանքի, մարգանեցի, քրոմային հանածոյի հանույթով, ինչպես նաև պողպատի, կոքսի, շոգեքարշների, էլեկտրաքարշների, տրակտորների, կոմբայնների, մետաղահատ հաստոցների, փայտամշակման նյութերի, կենդանական յուղի, շաքարի, ցեմենտի և մի շարք այլ արտադրանքների արտադրությամբ:

◆ Անցած 50 տարում որոշակի հաջողություններ են ձեռք բերված նաև ՍՍՀՄ գյուղատնտեսության կարգացման բնագավառում: Հաջողություններն առանձնապես ակնբախ են կոլտնտեսային կարգի հաղթանակից հետո, երբ գյուղատնտեսության մեջ տիրապետող դարձավ արտադրության միջոցների հանրային սեփականությունը:

◆ 1965 թվականի վերջին երկրում կային 36,9 հազար կոլտնտեսություն: Յուրաքանչյուր կոլտնտեսություն միջին հաշվով ունի ավելի քան 6 հազար հեկտար գյուղատնտեսական օգտակար հողեր, 1050 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, 38 տրակտոր: Սովխոզների թիվը հասնում է 11,7 հազարի, որոնցից յուրաքանչյուրը միջին հաշվով ունի 24,6 հազար հեկտար հողատարածություն, 2098 գլուխ խոշոր եղջերավոր անասուն և 114 տրակտոր:

◆ 1965 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, երկրում ցանքատարածություններն ավելացել են 1,8 անգամ (91 միլիոն հեկտարով): Ավելացել է նաև անասունների գլխաքանակը: Այսպես, 1967 թվականի սկզբին, 1916 թվականի համեմատությամբ, խոշոր եղջերավոր անասունների թիվն ավելացել է 1,7, խոզերինը՝ 2,5, ոչխարներինն ու այծերինը՝ 1,5 անգամ:

վարձ:

Բացի դա շրջանառությունից կաղատվեն մեծ քանակությամբ տակառներ, որոնց պատրաստման համար ամեն տարի օգտագործվում է հսկայական քանակությամբ կաղնյա դեֆիցիտային փայտանյութեր:

Այս միջոցառումների իրականացումից տարեկան կարելի է տնտեսել առնվազն 311,1 հազար ռուբլի:

Որքան էլ տարօրինակ թվա, պետք է ասել, որ Երևանի կոնյակի գործարանը կառուցելիս բոլորովին հաշվի չեն առնվել նրա երկաթուղային հաղորդակցության հնարավորությունները, որը շատ կարևոր նշանակություն ունի յուրաքանչյուր երկրորդային գինեգործության և, առանձնապես, կոնյակի արտադրության ձեռնարկությունների համար:

Ինչպես հայտնի է, Երևանի կոնյակի գործարանը հանրապետության սահմաններից դուրս գտնվող իր սիստեմի ձեռնարկություններին երկաթուղով տարեկան առաքում է ավելի քան երկու հարյուր հազար դալ կոնյակ: Ինքն էլ ստանում է մոտ այդքան կոնյակի սպիրտ և գինենյութեր: Բացի դա, Միության հեռավոր քաղաքներից յուրաքանչյուր ամիս գործարանի հասցեով ստացվում են տասնյակ վագոն ապակյա շշեր, տակառներ և այլ բեռներ: Սակայն աշխարհագրական անբարենպաստ դիրքի հետևանքով այս գործարանը ընդմիշտ զրկված է երկաթուղային անմիջական հաղորդակցությունից: Այս պատճառով հսկայական քանակությամբ պատրաստի արտադրանքը նախ ավտոմեքենաներով փոխադրվում է Երևանի երկաթուղային կայարան, ապա նոր բարձվում վագոնները: Իսկ գործարանի հասցեով ստացված կոնյակի սպիրտները, կոնյակի գինենյութերը, ապակյա շշերը, դատարկ տակառները և այլ բեռներ բեռնաթափվում են երկաթուղային կայարանում, իսկ

◆ Անցյալ տարի, բերքառատ 1964 թվականի համեմատությամբ, երկրում հացահատիկի համախառն բերքը ավելացավ 12 տոկոսով և հասավ 170,8 միլիոն տոննայի: Նույն տարում բամբակի հումքի արտադրությունը հասավ մոտ 6 միլիոն տոննայի:

◆ ՍՍՀՄ գյուղատնտեսությունը պինվել է ժամանակակից կարգացած տեխնիկայով: 1966 թվականի վերջին նրանում հաշվվում էր 1.700 հազար տրակտոր (ֆիզիկական միավոր), 540 հազար հացահատիկահավաք կոմբայն (ֆիզիկական միավոր), 1013 հազար բեռնատար ավտոմեքենա:

◆ 1965 թվականին գյուղատնտեսության մեջ մեքենայական աշխատանքի ծավալը կազմում էր. կարտոֆիլի տնկմանը՝ 73, տարբեր կուլտուրաների միջշարային մշակմանը՝ 60—97, կոմբայնով հացահատիկի բերքահավաքինը՝ 98, հացահատիկի մաքրմանը՝ 96, խոտհնձինը՝ 79 տոկոս և այլն:

◆ Սովխոզների 99 և կոլտնտեսությունների 95 տոկոսը էլեկտրիֆիկացված են: Գյուղատնտեսությանը մատակարարվող հանքային պարարտանյութերը միայն 1960—1965 թվականներին ավելացել են 2,4 անգամ, կամ ավելի քան 27 միլիոն տոննայով:

◆ Գյուղատնտեսական արտադրության մեջ ժամանակակից մեքենաների գործադրման, նրա էլեկտրիֆիկացման ու քիմիացման շնորհիվ, 1913 թվականի համեմատությամբ, աշխատանքի արտադրողականությունն ավելացել է ավելի քան 5 անգամ:

◆ Ընթացիկ հնգամյակում երկրի գյուղատնտեսությունը կստանա 1.700 հազար տրակտոր, 1100 հազար բեռնատար ավտոմեքենա, 550 հազար հացահատիկային կոմբայն և գյուղատնտեսական այլ մեքենաներ:

◆ ՍՍՀՄ-ում լայն ծավալ է ստանում կապիտալ շինարարությունը, որը սովետական հասարակարգի բնորոշ գիծն է: Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի կարգացման ուղղությամբ նախատեսված պլանների իրականացման համար կապիտալ խոշոր ներդրումներ են կատարվում: Կապիտալ ներդրումների ծավալով ՍՍՀՄ-ը համարյա հասել է ԱՄՆ-ի մակարդակին (ԱՄՆ-ի 1966 թվականի մակարդակի մոտ 90 տոկոսը):



այնուհետև կայարանից ավտոմեքենաներով փոխադրվում գործարան: Այս կարգով գործարանը տարեկան բարձում և բեռնաթափում է մոտ 500 վագոն բեռներ:

Դա առաջացնում է բանվորական ուժի ավելորդ ծախսումներ և նյութական արժեքների մեծ կորուստներ: Չէ՛, որ այս արտադրության թե՛ հումքը և թե պատրաստի արտադրանքը խիստ թանկ է, իսկ կորուստները, որոնք առաջանում են դրանք երկաթուղային կայարան փոխադրելուց, ավելորդ անգամ բարձելուց և բեռնաթափելուց, մեծ գումարներ են կազմում: Այսպես, օրինակ՝ 1966 թ. ընթացքում Երևանի կոնյակի գործարանից մինչև երկաթուղային կայարան և ընդհակառակը, կայարանից-գործարան կատարած բոլոր տեսակի փոխադրումների համար ավտոմինիստրության 4-րդ ավտոմոբիլային գրասենյակին վճարվել է 38,4 հազար ռուբլի: Կոնյակի և կոնյակի սպիրտի կորուստները (բարձելու, բեռնաթափելու, տակառների մեջ ներծծվելու և այլ գործողությունների համար) կազմել է 208,6 հազար ռուբլի, ընդամենը 247 հազար ռուբլի: Այս ծախսերը չէին կատարվի, եթե գործարանն ունենար երկաթուղային հաղորդակցման հնարավորություններ:

Սակայն դժվար է հաշտվել այն մտքի հետ, որ ստեղծված վիճակը այդպես էլ պետք է շարունակվի: Մեր կարծիքով հնարավոր է և պետք է ելք գտնել այդ վիճակից:

Կոնյակի գործարանի պլանային բաժնի պետ Հ. Հովհաննիսյանն առաջարկում է կոնյակի գործարանից մինչև Երևանի գինու կոմբինատ անցկացնել ստորգետնյա խողովակագիծ և կոնյակը պոմպերի միջոցով մղել դեպի գինու կոմբինատ, ուղղակի վագոն ցիստեռնների մեջ: Մենք առաջարկում ենք այդ նույն տարածության վրա, կոնյակի գործարանից Երևանի գինու կոմբինատ,

◆ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ 1918—1966 թվականներին կապիտալ ներդրումները հասել են 591,5 միլիարդ ռուբլու, որից 1918—1928 թթ.՝ 4,1, առաջին հնգամյակում 7,3, երկրորդ հնգամյակում՝ 16,6, երրորդ հնգամյակի երեք և կես տարում՝ 17,3, 1941 թվականի հուլիսի 1-ից մինչև 1946 թվականի հունվարի 1-ը՝ 17,5, չորրորդ հնգամյակում՝ 41,2, հինգերորդ հնգամյակում՝ 77,7, վեցերորդ հնգամյակի երեք տարում՝ 77,1 յոթնամյակում (1959—1966 թթ.)՝ 281,0, այդ թվում 1961—1965 թթ.՝ 211,8, 1966 թվականին՝ 51,7 միլիարդ ռուբլի:

◆ Սովետական Միությունում հատկապես արագ թափով է ընթանում բնակարանաշինարարությունը: 1918—1966 թվականներին քաղաքներում և գյուղական վայրերում կառուցվել են բնակելի տներ (չհաշված կոլտնտեսությունների կառուցածը)՝ 1.273,5 միլիոն քառակուսի մետր ընդհանուր մակերեսով:

◆ 1926 թվականից մինչև 1966 թվականը երկրում կառուցվել են 844 նոր քաղաք, այդ թվում այնպիսիք, ինչպիսիք են՝ Մագնիտագորսկը, Նովոկուզնեցկը, Կոմսոմոլսկը՝ Ամուրի վրա, Բրատսկը և այլն:

◆ Եթե 1913 թվականին երկրի քաղաքներում ու քաղաքատիպ վայրերում բնակարանային ֆոնդը կազմում էր 180 միլիոն քառակուսի մետր, ապա 1966 թվականին այն հասավ 1.290 միլիոնի: Միայն 1950—1966 թվականներին ՍՍՀՄ-ում կառուցվել է ավելի քան 32 միլիոն բնակարան:

◆ ՍՍՀՄ-ում կապիտալ շինարարությունը կրում է ինդուստրիալ. բնույթ, աճում է աշխատանքի մեքենայացումը: Վերջինս 1965 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, աճել է 6,5 անգամ:

◆ Առավել ուժեղ թափով է աճել շինարարական մեքենաների պարկը: Այսպես. 1940 թվականի 2,1 հազար էքսկավատորի փոխարեն 1966 թվականին կար 75,4 հազար, 1,1 հազար սկրեպերի փոխարեն՝ 21,5 հազար, 0,8 հազար բուլդոզերի փոխարեն՝ 74,0 հազար, 1,1 ջարժական վերամբարձ կռունկի փոխարեն՝ 90,0 հազար:

անցկացնել ճոպանուղի։ Այն հնարավորություն կտա հատուկ ցիստեռն-կոնտեյներով պատրաստի արտադրանքը փոխադրել գինու կոմբինատ, երկաթուղային գծին մոտ, իսկ այնտեղից գործարան փոխադրել երկաթուղով ստացվող կոնյակի սպիրտն ու մյուս բեռները։ Թե՛ մեկ, թե՛ մյուս առաջարկություններն իրականացնելու համար կատարվող ներդրումից ստացվող միջոցների մեկ տարվա տնտեսումը բավարար, նույնիսկ ավելի է։ Չի բացառվում նաև երրորդ, գուցե և ավելի լավ մտահղացումը։ Կարևորն այն է, որ բոլոր դեպքերում այդ հարցը լուծվի։

Բացի վերը նշվածից, «Արարատ» վարչությունը յուրաքանչյուր տարի զգալի կորուստներ է կրում տարայի գործառնություններից, որը միայն 1966 թ. հաշվետվությամբ՝ կազմել է 222 հազար ռուբլի (պլանով 476 հազար, փաստացի 689 հազար ռուբլի)։

Մեծ չափերի են հասնում նաև անարտադրողական ծախսերը։ Վագոնների պարապուրդների և պայմանագրային պարտավորությունները խախտելու համար 1966 թ. տույժ և տուգանք է վճարվել 156 հազար ռուբլի։ Իսկ այլ անարտադրողական ծախսերը կազմել են 67 հազար ռուբլի, ընդամենը՝ 223 հազար ռուբլի։

Այդպիսի անարտադրողական ծախսերի կրճատումը մեծ նշանակություն ունի ժողովրդական տնտեսության համար։



◆ Հոկտեմբերից հետո անցած 50 տարում ՍՍՀՄ-ում խոշոր մասշտաբներով զարգացել է նաև տրանսպորտը։ Օրինակ, 1966 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, բեռնատար տրանսպորտը ավելացել է ավելի քան 23 անգամ։

◆ 1964 թվականին համաշխարհային բեռնափոխադրման 47 տոկոսից ավելին և համաշխարհային մասշտաբով շահագործվող երկաթուղու երկարության 10 տոկոսը բաժին էր ընկնում ՍՍՀՄ-ին։

◆ Երկաթուղիների երկարությամբ ՍՍՀՄ-ն աշխարհում բռնում է երկրորդ տեղը (ԱՄՆ-ից հետո), իսկ շահագործվող ներքին ջրային ուղիների երկարությամբ՝ առաջին տեղը։

◆ Մեծ չափով աճել են ՍՍՀՄ բնակչության ռեալ եկամուտները։ 1966 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, արդյունաբերության և շինարարության բանվորների ռեալ եկամուտներն ավելացել են 6,6 անգամ, գյուղացիների ռեալ եկամուտները (մեկ աշխատողի հաշվով)՝ 8,5 անգամ։

◆ 1950—1966 թվականներին երկրի բանվորների ու ծառայողների դրամական միջին աշխատավարձը բարձրացել է ավելի քան 1,5 անգամ.

◆ Սովետական պետությունն իր միջոցներով տարեցտարի բարձրացնում է աշխատավորների սոցիալական և կենսաթոշակային ապահովագրության հատկացումները։ Բավական է ասել, որ Սովետական Միությունում ծերության, հաշմանդամության թոշակ են ստանում 34 միլիոն մարդ։

◆ ՍՍՀՄ նախադպրոցական հիմնարկներում կան ութ միլիոն երեխա։

◆ Սովետական Միությունում բոլոր մասնագիտությունների բժիշկների թիվը կազմում է 578 հազար, կամ ավելի քան 20 անգամ շատ, քան ցարական Ռուսաստանում։

# ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ

Վ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

## ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՍՈՑԻԱԼ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԻՑ ՄԵԿԸ



1898—1904 թվականներին Անդրկովկասի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների շարքերում գործող մի խումբ առաջավոր բանվորների թվում իր տեսական պատրաստությամբ և կազմակերպական ընդունակություններով աչքի էր ընկնում Արևմտյան Հայաստանից Ռուսաստան գաղթած մի հայ բանվոր, որին Հայկ էին կոչում, հաճախ էլ՝ Պողոս, կամ Հայկ Ադամյան, Հայկ Պողոսյան, Պողոս Փիլոսյան, Հայկ Փիլոսյան։ Այս գործչի անունը զանազան վարիանտներով հիշատակվում է Անդրկովկասի հեղափոխական շարժումներին և սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների վաղ շրջանի գործունեությանը նվիրված որոշ աշխատություններում, մեմուարային գրականության մեջ, ժանդարմական գրագրություններում, բայց 1904 թվականից հետո նրա ճակատագրի մասին և առհասարակ նրա կյանքի ու գործունեության մասին շատ քիչ տեղեկություններ կան։

Հայկ Ադամյանը այն բանվոր հեղափոխականներից է, որոնք բանվորական շարժման պատմության մեջ անջնջելի հետք են թողել։ Դառնալով գիտակից սոցիալիստ, նա մեծ եռանդով և անձնվիրությամբ աշխատել է բանվորների մեջ, կազմակերպել ու կրթել նրանց հեղափոխական պայքարի համար։ Նրա գործունեությունը մեծ մասամբ ընթացել է Բաթումում և Թիֆլիսում, իսկ 1904 թվականից հետո՝ Ամերիկայի Միացյալ Նահանգներում, ուր նա հարկադրված վտարանդության մեջ էր։

Հայկ Ադամյանը (իսկական ազգանունը՝ Պողոսյան) ծնվել է 1878 թվականին, Տրապիզոն քաղաքում։ Նրա հայրը՝ Ադամ Պողոսյանը, մակույկ շինող արհեստավոր էր։ Ընդհանուր կրթությունը Հայկը ստանում է Տրապիզոնի հայկական կաթոլիկական դպրոցում։ 1896 թվականին, Թուրքական կառավարության կողմից կազմակերպված հայկական ջարդերի պատճառով նա փախչում է Ռուսաստան՝ Բաթում։ Այստեղ 18-ամյա պատանին աշխատանքի է ընդունվում Ծովյանների գործարանում, որպես բանվոր։ Բաթումում որոշ ժամանակ աշխատելուց հետո Հայկը տեղափոխվում է Թիֆլիս, աշխատանքի մտնում Էնֆիանջյանցի ծխախոտի ֆաբրիկայում։

Գործարանային ծանր աշխատանքից հետո բանվոր Հ. Ադամյանը շատ է զբաղվում ինքնակրթությամբ։ Ունենալով փայլուն ընդունակություններ, նա շատ շուտ տիրապետում է ռուսերենին և վրացերենին։ Հայկ Ադամյանը գիտեր թուրքերեն, ինչպես նաև ֆրանսերեն, որը սովորել էր Տրապիզոնում, տեղի դպրոցում։ Հայերենին տիրապետում էր կատարելապես։ Ունենալով բավականին կրթություն, Հ. Ադամյանը կարողանում է ինքնուրույն կերպով ծանոթանալ ժամանակակից սոցիալիստական գրականությանը, ուսումնասիրել բանվորական հարցը։

Հ. Ադամյանը բացասաբար է արտահայտվում ոչ միայն բունդի, այլև «սոցիալ-դեմոկրատական բանվորական հայ կազմակերպության» մասին, որ ստեղծվել է 1903 թվականի վերջին, Բաքվում և հետևում էր բունդի սկզբունքներին: Հ. Ադամյանը իրավամբ նշում է, որ այդ կազմակերպության հանդես գալը կապված էր ցարական կառավարության կողմից հայկական եկեղեցական կալվածքների գրավման հետ» և որ այն գոյացավ «ազգասերներից, դաշնակցականներից և այլն»:

«Ոչ, սիրելիս,—գրում էր Կողիկյանին Ադամյանը,—ո՛չ, ես միմիայն զուտ պրոլետարական հայացքի վրա եմ հիմնվում այս կետերը առաջ բերելով և համաձայն եմ Կ. Կաուցկու հայացքին, թե կենտրոնացումն անհրաժեշտ է և անշուշտ միապետական կենտրոնացումը չէ»:

Բանվորի չարքաշ աշխատանքի հետ միաժամանակ Հ. Ադամյանը բաց չէր թողնում առիթը գրական աշխատանքով զբաղվելու: Նա գրում էր հոդվածներ հայկական սոցիալիստական թերթերին Սիլվա, Պոնտացի, Սլաքյան, Բանվոր Հայկ և այլ ստորագրություններով, կատարում էր թարգմանություններ ռուսերենից և անգլերենից: Նա ռուսերենից թարգմանել է Մ. Գորկու «Ընկերը» գրվածքը, «Ներկա պատերազմի պատմատնտեսական պատճառները» գրքույկը: 1911 թ. Նյու-Յորքում լույս տեսավ Հ. Ադամյանի երկերի մի պրակը «Մտքի խոհեր» վերնագրով: Պատերազմի տարիներին նա մնաց անհողդողդ ինտերնացիոնալիզմի դիրքերում: Այս տարիներին նա աշխատում էր Դետրոյտում և հրատարակում էր «Գործավոր» խմորատիպ թերթը:

Հ. Ադամյանը բանվորական գործին նվիրված զինվոր էր: Նա չկարողացավ իրագործել իր փափագը՝ կրկին Ռուսաստան վերադառնալու և պայքարելու ցարական ինքնակալության դեմ: Բայց նա հեղափոխականին արժանի գործ կատարեց ԱՄՆ-ում: Նա դարձավ այնտեղ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության ջերմ պաշտպաններից մեկը: «Ես,— ասել է Հ. Ադամյանը,—լիովին ծանոթ եմ ընկեր Լենինին և նրա հեղափոխական տակտիկային: Նա, որ այս րոպեիս գլխավորում է հեղափոխությունը և ղեկավարում այն, առանց զիջողականության, մարքսիստորեն, հեղափոխությունը տանում է դեպի վերջնական հաղթանակ»[1]:

Հ. Ադամյանը մեռավ 1918 թվականին, ապրիլի 16-ին, Դետրոյտ քաղաքում: Նա թունավորվել էր ճաշարանի կերակուրից: Հյուծված օրգանիզմը չէր կարողացել դիմադրել թույնին և մահացել էր հիվանդանոցում, 40 տարեկան հասակում:

Նրա մասին տպված մահախոսականում, որ գրել էր Գր. Ավագյանը, ասված էր. «Ընկեր Ադամյանը միշտ ալ իր համոզումին հետեւն ընթացավ, նա մի օր իսկ ետ չմնաց իր գաղափարի տարածումեն, լուրջ և օրինակելի բնավորության տեր, չափազանց արմատական մտածող և ուրիշի մը արժանիքը ճանչցող մեկն էր»[2]:

ԱՄՆ-ի կոմունիստները Հայկ Ադամյանի հեղափոխական ծառայությունները չեն մոռանում և բարձր են գնահատում: Նա առաջիններից էր, որ ԱՄՆ-ի հայ բանվորներին սոցիալիստական դրոշի տակ կազմակերպեց, հիմք դրեց այնտեղ հայկական բանվորական մամուլին: Հատկանշական է, որ 1936 թվականին, ամերիկահայ կոմունիստական «Բանվոր» թերթի 1000-րդ համարի լույս ընծայման առթիվ թերթում զետեղված էր Հայկ Ադամյանի լուսանկարը մակագրությամբ՝ «Ամերիկահայ բանվորական շարժումը սկսողներեն և փայլուն առաջնորդողներեն մեկը, որ պատկանած է Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության, ենթարկված է ցարական ոստիկանության հալածանքին, եկած է Ամերիկա և շարունակած է իր հեղափոխական գործունեությունը: Ընկեր Հայկ Ադամյանը մահացավ այն տարիներուն, երբ Ռուսաստանի բանվորները Լենինի առաջնորդությամբ տապալեցին ցարիզմը և հիմնեցին առաջին բանվորական կառավարությունը»[3]:

Հ. Ադամյանի կյանքն ու գործունեությունը դեռ կարոտ են մանրամասն ուսումնասիրության: Նա բանվոր էր և իր ամբողջ կյանքում հետևողականորեն և անզիջելի կերպով պաշտպանեց բանվոր դասակարգի շահերը, անձնվիրաբար պայքարեց մարդկության լավագույն երազանքի՝ սոցիալիզմի հաղթանակի համար:

---

[1] Հ. Կարոյան. Կենսագրական ընկ. Հ. Ադամյանի: «Նոր Աշխարհ», Նյու-Յորք, 1929 թ., № 40:

[2] «Երիտասարդ Հայաստան», № 4, 15 մայիսի, 1918 թ.:

[3] «Բանվոր», № 1, 1936 թ.:



## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

ՄԵՅԱ ՔԱՑԱԽՅԱՆ

# ՊԱՏԿԵՐԱՅՆՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՉԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՐԱԲԵՐԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԱՐՎԵՍՏՈՒՄ

ԱՐՎԵՍՏԻ մեջ պատկերայնության ու արտահայտչականության հարաբերակցությունն արդի էսթետիկայի ակտուալ պրոբլեմներից մեկն է: Եվ պատահական չէ, որ հատկապես վերջին ժամանակներս լուրջ ուշադրություն է նվիրվում այդ պրոբլեմին: Բավական է ասել, որ արդեն լույս են տեսել դրան նվիրված մի շարք աշխատություններ ու հոդվածներ, ինչպես նաև հատուկ դիսկուսիա է ծավալվել «Искусство» հանդեսի էջերում:

Արվեստի մեջ պատկերայնության և արտահայտչականության պրոբլեմը ներկայումս առանձնապես մեծ նշանակություն է ստանում այն առումով, որ իդեոլոգիայի բնագավառում ուժեղ պայքար է ընթանում արվեստի պրակտիկայի և թեորիայի միջև:

Այդ պրոբլեմի ճիշտ լուծումը մեզ հնարավորություն կտա ավելի խոր, ավելի գիտականորեն քննադատելու ժամանակակից ֆորմալիստական այնպիսի ուղղություններ, ինչպիսիք են՝ աբստրակցիոնիզմը, տաշիզմը և նման այլ ուղղություններ:

Վերոհիշյալ պրոբլեմի լուծման հետ է կապված նաև նատուրալիստական ճշմարտանմանության քննադատումը արվեստի մեջ և սոցիալիստական ռեալիզմի անսպառ հնարավորությունների բազմազանության հաստատումը:

Բնավ հավակնություն չունենալով լուծել այդ պրոբլեմը, մենք այստեղ փորձ ենք արել կրկին անգամ քննության առնել արվեստի մեջ պատկերայնության ու արտահայտչականության հարցը հատկապես այդ տերմինների որոշման առումով, քանի որ վեճերը հաճախ ծագում են ոչ միայն սկզբունքային տարաձայնություններից, այլև այն պատճառով, որ պատկերավորման ու արտահայտման մասին խոսելիս առանձին արվեստագետներ ու գեղագետներ տարբեր իմաստներ են դնում դրանց մեջ: Մինչդեռ արվեստի մեջ պատկերայնության ու արտահայտչականության հարաբերակցության պրոբլեմը պարզելու համար նախ և առաջ անհրաժեշտ է որոշել և ճիշտ ըմբռնել տերմինները, մանավանդ «պատկերայնություն», «պատկերավորում» տերմինները: Դա անհրաժեշտ է, քանի որ, մեր կարծիքով, հենց պատկերայնության բնույթն է որոշում արվեստի՝ որպես իրականության յուրատեսակ արտացոլման սպեցիֆիկումը: Պատահական չէ, որ հենց պատկերայնության, արվեստի մեջ նրա դերի ու նշանակության, ինչպես նաև նրա ու արտահայտչականության հարաբերակցության մեկնաբանման ժամանակ է դրսևորվում այն արմատական հակադրությունը, որ գոյություն ունի բուրժուական էսթետիկական տեսությունների և մարքս-լենինյան էսթետիկայի միջև:

Տեսնենք, թե ինչպես են բնորոշվում պատկերայնությունն ու արտահայտչականությունը գեղագիտական գրականության մեջ:

Գեղագիտական բազմաթիվ աշխատություններում «պատկերայնություն» և «արտահայտչականություն» տերմիններին միանգամայն տարբեր նշանա-

տարբեր մեկնաբանությունները բացատրվում են նրանով, որ արվեստագիտության մեջ դրանք տարբեր առումներով են գործածվում արվեստի տարբեր տեսակների նկատմամբ։ Այսպես, նկարչության մեջ պատկերայնություն ասելով հաճախ հասկանում են իրականությանը մոտիկ լինելու աստիճանը, արտացոլման մանրամասնականությունը։ Երաժշտության մեջ պատկերայնություն ասելով հասկանում են հնչունանմանողությունը կամ կոլորիստական «գեղանկարումը» հնչյունների միջոցով, որպիսին բնորոշ է իմպրեսիոնիզմին։ Գրականության մեջ նկարագրականությունն է սովորաբար պատկերայնություն համարվում։

Մենք կարող ենք խոսել որևէ ներդաշնակ զուգորդության արտահայտչականության մասին, գեղանկարի առանձին դետալի, գույնի արտահայտչականության մասին, բոլորովին նկատի չունենալով ամբողջ ստեղծագործության արտահայտչականությունը։

Պատկերայնություն, պատկերավորում, արտահայտչականություն, արտահայտություն տերմինների բազմիմաստությունն ունի իր օբյեկտիվ հիմնավորումը և ըստ էության արտացոլում է դրանց ընդհանուր-լայն և մասնակի-սպեցիֆիկ սահմանումներն էսթետիկայում ու արվեստագիտության մեջ։ Սակայն էսթետիկական որոշակի պրոբլեմներ, մասնավորապես, արվեստի մեջ պատկերայնության ու արտահայտչականության հարաբերակցության պրոբլեմը լուծելու համար անհրաժեշտ է այնպես ճշգրտել այդ տերմինները էսթետիկական լայն առումով, որ դրանք կիրառելի լինեն արվեստի բոլոր տեսակների համար։

***

ԱՐՎԵՍՏԻ յուրաքանչյուր գործ, իրականության արտացոլման մի յուրատեսակ ձև հանդիսանալով, ինչ-որ համապատասխանություն ունի իրականության այս կամ այն ոլորտին պատկանող երևույթների հետ։ Այսպես, գեղանկարի գույների ու գծերի հարաբերակցությունն անշուշտ համանմանություն ունի այն ռեալ որոշակի նախակերպարների հետ, որոնց վերարտադրության ժամանակ դրոշմվել ու արտահայտվել են մարդու զգացմունքները, մտքերն ու ապրումները։ Երաժշտական գործի տարրերն այս կամ այն չափով համանման են մարդկային խոսքի ինտոնացիաներին, այս կամ այն պրոցեսի կամ երևույթի ռիթմիկային։

Արվեստի գործերի կոմպոզիցիոն կառուցվածքը որոշակի նմանություն ունի աշխարհի ռեալ պատկերի հետ, քանի որ արվեստի ստեղծագործության կոմպոզիցիայի սկզբունքներն ու օրինաչափությունները յուրովի արտացոլում են իրականության զանազան կողմերի հարաբերակցության այն ռեալ պրոցեսները, որոնք մատչելի են անմիջական ընկալման։ Դրա շնորհիվ էլ արվեստի ստեղծագործությունը կարող է դիտվել որպես ռեալ իրականության այս կամ այն կողմի «պատկերավորում»։

Արվեստի ստեղծագործությունն ի վիճակի է արտահայտել ու իր էսթետիկական բովանդակությունը ընկալող սուբյեկտին հասցնել հենց այն բանի շնորհիվ, որ նա «իրն ինքնին» չէ, այլ պատկերավորում է այն, ինչը որ հագեցված է արդեն արվեստի ոլորտից դուրս ստացված մարդկային, հուզական նշանակությամբ։ Այդ իմաստով արվեստի ոչ մի տեսակ էլ չի կարող գոյություն ունենալ առանց պատկերավորման։ Արվեստի մեջ որևէ բան արտահայտելը (ճշտենք՝ արտահայտել ասելով մենք հասկանում ենք կերպարի գեղարվեստական բովանդակության դրսևորումն արվեստի գործի մեջ) նշանակում է պատկերել այն, ինչը բուն իրականության մեջ առնչված է հուզականության հետ և այդ պատճառով էլ կարող է մարմնավորվել։

Միանգամայն պարզ է, որ պատկերավորման բնույթն ու էությունը բավական տարբեր են ինչպես արվեստի տարբեր տեսակներում, այնպես էլ միևնույն տեսակի շրջանակներում։ Պատկերավորման հենց այդ յուրահատկությունն էլ արվեստի զանազան տեսակներում գեղարվեստական կերպարի սպեցիֆիկումի էական կողմերից մեկն է։ Վերարտադրվող օբյեկտի ձևերը մի դեպքում հաղորդվում են ավելի ճշգրիտ, իսկ այլ դեպքերում՝ մոտավոր կերպով, լոկ ընդհանուր գծերով։ Այսպես, օրինակ, Սիկեյրոսի, Գոյայի, Գուդիաշվիլու բազմաթիվ նկարների ցնցող արտահայտչականությունը ձեռք է բերվում համամասնությունների յուրատեսակ խեղաթյուրման, իրական ձևերից հեռանալու, մռայլ ու հատու գրոտեսկի շնորհիվ, իսկ այնպիսի մեծ վարպետներ, ինչպիսիք են՝ Վելասկեսը, Դյուրերը, Լեոնարդո դա Վինչին, Սուրիկովը, Իվանովը, իրենց ստեղծագործության մեջ ձգտում են ճիշտ վերարտադրել իրականության առարկայական ձևերը։

Գոյություն ունեն պատկերավորման զանազան եղանակներ, ինչպիսիք են, օրինակ, գեղարվեստական օբյեկտի վերարտադրությունը առարկայական պատկերավորման միջոցով (նկարչության և քանդակագործության մեջ) կամ արտահայտիչ հոգեվիճակների «պատկերավորումը» (օրինակ, երաժշտության մեջ, պարարվեստում)։

Այս հոդվածում մենք չենք անդրադառնում պատկերայնության հարցի վրա երաժշտության մեջ։ Այդ առանձին հոդվածի նյութ է։ Պարզենք միայն, թե ինչ ենք մենք հասկանում արտահայտիչ հոգեվիճակ ասելով և թե ինչ կերպ արտահայտիչ հոգեվիճակը դառնում է պատկերավորման առարկա արվեստի մեջ։

Մարդու էմոցիոնալ ապրումները, ինչպես հայտնի է, սովորաբար դրսևորվում են զանազան արտահայտիչ շարժումներով՝ միմիկայով, մնջախաղով, ինչպես նաև ձայնի ելևէջներով ու տեմբրով։

Քանի որ մենք խնդիր չենք դրել ուսումնասիրել էմոցիաներն ու նրանց արտահայտությունները, այս հարցում սահմանափակվենք մի քանի սովետական հոգեբանների հետևություններով։ Այսպես, Ի. Վ. Վիտը շեշտում է, որ «...գոյություն ունի ընդհանուրի կողմից ընդունված, օգտագործելի ու հասկանալի «զգացմունքների լեզու», որն ունի իր կանոնները»[1]։ Նա էմոցիաների արտահայտումն ու ընկալումը համարում է մարդկային հասարակության կոմունիկացիայի յուրահատուկ մի աստիճան։ Ընդսմին այդ դեպքում օգտագործված միջոցները ոչ միայն բնորոշ են առանձին անհատին, այլև համապատասխանում են հաղորդակցման ամբողջ սիստեմին։

Հանդիսանալով մարդկանց հաղորդակցման եղանակներից մեկը, արտահայտչական շարժումներն իրենց սոցիալական, կոմունիկատիվ ֆունկցիաները կատարելու պրոցեսում զարգանում ու կատարելագործվում են, ավելի ու ավելի ճկուն դարձնելով մարդու զգացմունքներն ու տրամադրությունը հաղորդելու լեզուն։

Արտահայտիչ շարժումների ամբողջ բարդ ու նրբին կոմպլեքսը արվեստի մեջ զարգանում է բուն իսկ կյանքում եղած արտահայտիչ շարժումների հիման վրա։ Ըստ սովետական հոգեբան Ռուբինշտեյնի, խոսքի մեծ վարպետների մոտ ոչ կամայական էմոցիոնալ բնույթ ունեցող խոսքի արտահայտչական դրսևորումներից վերամշակվում են ներգործող արտահայտչականության ամենանրբին ոճական միջոցներ։ Նույն ձևով էլ մեծ դերասանը սովորական արտահայտչական շարժումները վերամշակելով դարձնում է այնպիսի մի ժեստ, որով նա կարծես քանդակում է մարդկային բոլոր զգացմունքներով ու կրքերով համակված մի կերպար[2]։

Գեղարվեստագետի խնդիրն էլ այն է, որ կարողանա «դրոշմել» այդ արտահայտիչը կյանքում այնպես, որ ընկալողի համար միանգամայն պարզ լինի գործի բուն էսթետիկական իմաստը։ Այսպիսով, որպեսզի արվեստի գործն արտահայտչական կամ հուզական լինի, անհրաժեշտ է, որ նա հիմնված լինի պատկերավորման վրա, քանի որ վերջինս է միայն կազմում գեղարվեստական որևէ օբյեկտի էսթետիկական արտահայտման հիմքը։

Առանց պատկերավորման չի կարող արտահայտչականություն լինել։ Պատկերավորումից հրաժարվելու դեպքում կխախտվի այն կապը, որ անհրաժեշտորեն գոյություն ունի իրականության ու արվեստի գործի միջև և որը հնարավոր է դարձնում արվեստի գործի «ընթերցումը» կամ ընկալումը։



1 И. В. Витт. Об эмоциях и их выражении («Вопросы психологии», 1964, № 3, стр. 151).

2 Տե՛ս С. Л. Рубинштейн. Основы общий психологии. М., 1946, стр. 487—488.

Երբ արվեստը փորձ է անում հրաժարվել իրականության հետ ունեցած կապից, այսինքն՝ պատկերայնությունից, սկսում է լիովին անկախ լինելու հավակնություն ցուցաբերել, իբր զուտ արտահայտչականության հասնելու համար, ապա նա զրկվում է ամեն մի օբյեկտիվ իմաստից, սուբյեկտիվ քմահաճույքի ու երևակայության առարկա է դառնում ու դադարում է արվեստ լինելուց։

***

ԹԵՊԵՏԵՎ պատկերայնությունը գեղարվեստական արտահայտչականության անհրաժեշտ ու հիմնական նախապայմանն է, բայց և այնպես պատկերայնությունն ինքնին դեռևս անկարող է պայմանավորել արտահայտչականությունը, հետևապես և՝ գեղարվեստական կերպարի ստեղծումը։

Իսկ ի՞նչ բան է արտահայտչականությունը արվեստի մեջ։

Վ. Ռազումնին արտահայտչականությունը սահմանում է որպես այնպիսի մի հատկանիշ, առանց որի ոչ մի իսկական արվեստ չկա, իսկ հիմնական էությունն է՝ «արտահայտել, ի հայտ բերել կերպարի ամբողջ... բարդ կառուցվածքի ներքին բովանդակությունը, նրա «չերտերը»» [1]։

Վ. Վանսլովը արտահայտչականությունը համարում է իրերի օբյեկտիվ էության և դրա նկատմամբ ունեցած գաղափարական-էմոցիոնալ վերաբերմունքի արտացոլում։ Նրա կարծիքով, հենց դա է արվեստի մեջ հաղորդում կենսական երևույթների ու դրանց հարուցած գաղափարների ու ապրումների էությունը [2]։

Արտահայտչականության վերոհիշյալ բոլոր սահմանումներն էլ հանգում են այն բանին, որ արտահայտչականությունը դիտում են որպես նկարագրվող կենսական երևույթների ներքին էության կամ ներքին բովանդակության դրսևորում։ Սակայն դա դեռևս հստակ պատկերացում չի տալիս արտահայտչականության մասին։

Անվիճելի է, իհարկե, որ արտահայտչականությունն անպայման պահանջում է խորապես թափանցել արտացոլվողի էության մեջ, բացահայտել նրա ներքին էությունը։ Արտահայտչականությունը միևնույն ժամանակ նշանակում է խոհականություն, զգացմունքներ, տրամադրություն, արվեստագետի էմոցիոնալ վերաբերմունք ստեղծագործության օբյեկտի նկատմամբ։

Ն. Ի. Ալյոշինան իր դիսերտացիոն աշխատության ավտոռեֆերատում իրավամբ գրում է, որ արտահայտչականությունը արվեստի ստեղծագործության ունակությունն է՝ ընկալման պրոցեսում բացահայտելու իր մեջ մարմնավորված գեղարվեստական օբյեկտի էսթետիկական բովանդակությունը, նրա գաղափարական-էմոցիոնալ իմաստը [3]։

Այսպիսով արտահայտչականությունը բաղկացած է բազմաթիվ զանազան կոմպոնենտներից։ Օրինակ, գեղանկարչության մեջ արտահայտչականությունը պարունակում է ամբողջ գեղարվեստական կառուցվածքը՝ իր բոլոր տարրերով հանդերձ, որոնց մեջ մտնում են կոմպոզիցիան ու սյուժեն, գույնն ու լուսաստվերը, գծային ռիթմն ու կոլորիտը, օդային հեռանկարի, տարածության ու պլաստիկայի լուծումը և այլն։

Արտահայտչականությունը, նրա ուժգնությունն ու բնույթը կախված են նկարչի աշխարհայացքից, գաղափարական-գեղագիտական դիրքից, նրա տաղանդից ու վարպետության աստիճանից, ինչպես նաև այն միջոցներից, որ նա օգտագործում է իր իդեալներն արտահայտելու ու հաստատելու համար։ Նկարի արտահայտչականությունը հենց այն էֆեկտի մեջ է, որն

[1] В. Разумный. Ленинская теория отражения и некоторые теоретические вопросы изобразительного искусства, М., 1963, стр. 65.

[2] Տե՛ս Վ. Վանսլով. Նշվ. աշխ., էջ 91։

[3] См. Н. И. Алешина. О соотношении изобразительности и выразительности в искусстве. (автореферат диссертации, М., 1965, стр. 3).



ստեղծվում է նկարչի օգտագործած բոլոր միջոցների ամբողջական ներգործության ու ընկալման պրոցեսում։

Երբ մենք ասում ենք, որ արվեստի այսինչ գործն արտահայտիչ է, ապա դա նշանակում է, որ նա որոշակի ներգործություն է ունենում մարդու վրա, խոհեր ու զգացմունքներ է հարուցում և հոգեպես հարստացնում է նրան, ծառայում է որպես իսկական գեղագիտական հաճույքի աղբյուր։

Ոչ ոք չի տարակուսում այն բանում, որ արվեստը պետք է արտահայտիչ լինի։ Բայց, անշուշտ, վեճերի տեղիք է տալիս այն կարծիքը, թե արվեստի նպատակն արտահայտչականությունն է։ Ոմանք գտնում են, թե այդ կարծիքի համաձայն արտահայտչականությունը հակադրվում է պատկերայնությանը։ Սակայն արտահայտչականությունն արվեստի նպատակ համարելը դեռևս չի նշանակում, թե այն հակադրվում է պատկերայնությանը։

Ճիշտ է, արդի մոդեռնիզմը ևս արվեստի մեջ գլխավորը արտահայտչականությունն է համարում և գտնում է, թե «մաքուր» արտահայտչականության կարելի է հասնել միայն այն ժամանակ, երբ մերժվի պատկերայնությունը, երբ ոչ մի նմանություն չլինի պատկերվող երևույթի և առհասարակ ռեալ աշխարհի հետ։ Այդ իսկ պատճառով շատ տեսաբաններ երկյուղ են հայտնում, թե արվեստի մեջ գլխավորը արտահայտչականությունը համարելու դեպքում կթերագնահատվի պատկերայնությունը և, հետևապես, կարդարացվի աբստրակցիոնիզմը։

Բայց մի՞թե արտահայտչականության պաշտպանությունը նսեմացնում է պատկերայնության դերը։

Չպետք է մոռանալ, որ երբ մոդեռնիստները պաշտպանում են արտահայտչականությունը, պահանջում են հրաժարվել պատկերայնությունից հանուն արտահայտչականության, ապա բոլորովին այլ իմաստ են դնում արտահայտչականություն հասկացության մեջ։ Մեկնաբանելով արտահայտչականությունը խիստ ինքնաբավ կերպով, նրանք բոլորովին այլ կերպ են ըմբռնում այդ տերմինը, քան մենք։ Նրանց մոտ արտահայտչականությունը չի արտահայտում որևէ կենսական բովանդակություն։ Մոդեռնիստները հենց այն պատճառով են պաշտպանում արտահայտչականությունը, որովհետև վերջինիս մեջ ժխտում են օբյեկտիվ մոմենտը։ Նրանք արտահայտչականությունը չեն համարում իրականության արտացոլում, այն սահմանափակելով սոսկ սուբյեկտիվ-իռացիոնալ շրջանակներով։

Երբ աբստրակցիոնիստներն իրենց ստեղծագործություններում փորձ են անում արտահայտել ինչ-որ «ներքին իմպուլսներ», «մարդկային հոգու գաղտնարաններ», ոչ մի առարկայական բան չպատկերավորելով, ապա այդ ստեղծագործությունները դառնում են ոչինչ չասող ու ոչինչ չարտահայտող։

Աբստրակցիոնիզմը գույների կամ հնչյունների համակցությունները, մակերեսի կամ ծավալի հարաբերակցություններն «օտարում է» առարկաներից, դրանք պատկերացնելով «մաքուր ձևով»։

Աբստրակցիոնիստները ճգնում են արվեստի մեջ «ազատագրվել ամեն տեսակ արտաքին ներգործություններից», արտահայտել միայն «զուտ էմոցիաներ», նոր զուգակցությունները վերցնել ոչ թե ռեալ տեսանելի աշխարհից, այլ ամբողջովին ստեղծել արվեստագետի կողմից։ Դրա հետևանքն այն է լինում, որ արդի աբստրակցիոնիստների ստեղծագործություններն իրենցից ներկայացնում են այնպիսի «ներքին ապրումների» ինչ-որ հանելուկային հիերոգլիֆներ, որոնք ոչինչ չեն արտահայտում, բացի իրենցից [1]։

Ահա թե ինչ ուղիներով են աբստրակցիոնիստները ցանկանում իրագործել այն «նոր արտահայտչականության» պահանջը, որպիսին իբր թե ներկայացնում է XX դարը արվեստին։ Արդի բուրժուական էսթետիկան պնդում է, թե «հնացած ռեալիստական արվեստն» ի վիճակի չէ բավարարելու այդ պահանջը։

Առարկայազուրկ գույնը կամ երկրաչափական առարկայազուրկ ձևը լավագույն դեպքում կարող է միայն գույնի, ձևի կամ ռիթմի զգացմունք ար-

[1] Տե՛ս «Ленин и литература», 1963, стр. 159.

տահայտել, առանձին դեպքերում էլ թերևս շատ աղոտ կերպով նկարչի ֆիզիոլոգիական վիճակը:

Արտահայտչականությունն արվեստի նպատակ համարելը բնավ չի նշանակում ինչ-որ զիջում անել մոդեռնիզմին: Հայտնի է, որ արտահայտչականությունը կարող է լուծվել ինչպես ռեալիստական, այնպես էլ մոդեռնիստական դիրքերից:

Ընդունելով պատկերայնության ու արտահայտչականության միասնականությունը, այնուամենայնիվ պետք է ընդգծել, որ արվեստի գլխավոր նպատակն արտահայտչականությունն է:

Կոնկրետ պատկերներ պատկերելը չի կարող արվեստի ինքնանպատակը լինել: Եթե գեղարվեստական ստեղծագործության ամբողջ իմաստը լոկ իրադարձությունների, մարդկանց կամ առարկաների վերարտադրումը լիներ, ապա արվեստը չէր կարող կատարել աշխարհը ճանաչելու կամ մարդուն դաստիարակելու իր դերը: Վ. Գ. Բելինսկին դեռ ժամանակին նշել է, որ մեռյալ պետք է համարել այն գեղարվեստական գործը, որը սոսկ պատկերավորման համար է պատկերում կյանքը՝ առանց որևէ սուբյեկտիվ դրդման:

Կերպարը միայն այն ժամանակ կարող է արվեստի գործ լինել, երբ այն տոգորված է ստեղծող մարդու մտքով ու զգացմունքով, երբ այն արտահայտիչ է: Գեղարվեստական կերպարը միայն այն ժամանակ է ստեղծվում, երբ գտնվում է պատկերավորման ու արտահայտման օրգանական անբաժան միասնությունը:

Եթե արվեստը զբաղվի միայն պատկերավորմամբ, ոչինչ չարտահայտելով դրա հետ մեկտեղ, ապա այն չի կարող մարդկանց մեջ հոգեկան վեհ ապրումներ կամ գեղեցկի ձգտում հարուցել, չի կարող ներգործել մարդու վրա, այսինքն՝ գաղափարական դաստիարակության հզոր գործիք լինել:

Բանն այն է, որ եթե արտահայտչականությունը այդ տերմինի ճիշտ ըմբռնումով չի կարող ձեռք բերվել առանց պատկերայնության, ապա պատկերայնությունը կարող է լինել առանց արտահայտչականության, այսինքն կարելի է պատկերավորելով չարտահայտել ոչ միայն նշանակալից գաղափարներ և իր ժամանակի տրամադրությունները, այլև սեփական մտահանգումը. այլ կերպ կարելի է ստեղծել իրականության պատկերավորումն առանց արտահայտության: Այդ պատճառով էլ գոյություն ունեն անդեմ, գորշ ստեղծագործություններ: Հետևաբար, հարկավոր է պայքարել ոչ միայն պատկերայնության համար արվեստի մեջ, այլ որ ավելի կարևոր է, պատկերայնության արտահայտչականության համար:

Չէ՛ որ նատուրալիստական անդեմ ու գորշ արվեստը պակաս չարիք չէ, քան աբստրակցիոնիզմը:

Աբստրակցիոնիզմի դեմ պետք է պայքարել ոչ միայն տեսական աշխատություններով, այլև նրան ռեալիստական, հիրավի արտահայտիչ ու գեղեցիկ արվեստ հակադրելով:





# ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՎԵՐՍՏՈՒԳԻՉ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱԿԱՐԴԱԿԸ

Վերջերս Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմում տեղի ունեցավ խորհրդակցություն՝ նվիրված կուսակցական կազմակերպությունների վերստուգիչ հանձնաժողովների աշխատանքին: Խորհրդակցությանը մասնակցում էին հանրապետության քաղաքային և շրջանային կուսակցական կազմակերպությունների վերստուգիչ հանձնաժողովների նախագահները, անդամները, կուսակցական պատասխանատու աշխատողներ:

Վերստուգիչ հանձնաժողովների աշխատողների համամիութենական խորհրդակցության արդյունքների և հանրապետության քաղաքային ու շրջանային կուսկազմակերպությունների վերստուգիչ հանձնաժողովների խնդիրների մասին զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի վերստուգիչ հանձնաժողովի նախագահի տեղակալ Գ. Ա. Փահլևանյանը: Զեկուցման շուրջ ծավալված մտքերի փոխանակությանը, որին մասնակցեցին ՀԿԿ Երևանի 26 Կոմիսարների շրջանային կազմակերպության վերստուգիչ հանձնաժողովի նախագահ Ա. Բաբայանը, «Լենինյան ուղիով» ամսագրի խմբագիր Ա. Ադոյանը, ՀԿԿ Ղափանի շրջանային կազմակերպության վերստուգիչ հանձնաժողովի նախագահ Ա. Բաբայանը, ՀԿԿ Էջմիածնի շրջանային կազմակերպության վերստուգիչ հանձնաժողովի նախագահ Ս. Ալեքյանը և Հայաստանի կոմկուսի վերստուգիչ հանձնաժողովի նախագահ Ա. Շեկոյանը.

Խորհրդակցության մասնակիցները գործարար խոսակցություն ծավալեցին վերստուգիչ հանձնաժողովների դերի ու խնդիրների հարցերի շուրջ: ՍՄԿԿ XXIII համագումարի առաջադրված խնդիրների հաջող իրականացումը հրամայաբար պահանջում է կուսակցական ու պետական ապարատի բոլոր օղակների աշխատանքի ձևերի, մեթոդների կատարելագործում ու մակարդակի բարձրացում: Այստեղ մեծ անելիքներ ունեն քաղաքային, շրջանային կուսակցական կազմակերպությունների վերստուգիչ հանձնաժողովները: Նրանք կոչված են վերահսկելու կուսակցական օրգաններում գործերի արագ ու ճիշտ լուծմանը, կուսակցական դրամարկղի գործունեությունը:

Խորհրդակցությունում նշվեց, որ չնայած այն խոշոր աշխատանքին, որ կատարում են վերստուգիչ հանձնաժողովները, այնուամենայնիվ անդամավճարների գանձման և դրամարկղի վարման գործում դեռևս գոյություն ունեն լուրջ թերություններ:

Վերստուգիչ հանձնաժողովը իր աշխատանքներում պետք է լայնորեն ներգրավի կուսակցական ակտիվին, սերտորեն համագործակցի քաղաքային, շրջանային կոմիտեի ապարատի հետ: Այս դեպքում բացերն ու թերությունները խսպառ կվերացվեն, զգալիորեն կբարձրանա ստուգումների որակը: Մինչդեռ քիչ չեն փաստերը, երբ ստուգումները լինում են մակերեսային, չեն կազմվում ստուգման ակտեր, հանձնաժողովին չի զեկուցվում ստուգման արդյունքների մասին: Վերստուգիչ հանձնաժողովը չպետք է հանդես գա արձանագրողի դերում: Բացի այն պրակտիկ օգնությունից, որ նա ցույց է տալիս ստուգման պրոցեսում, անհրաժեշտ է, որ ըստուգման արդյունքների, ինչպես և ձեռնարկած միջոցառումների մասին իրազեկ դարձնեն կուսակցական կոմիտեին, անհրաժեշտության դեպքում հարցը դրվի բյուրոյի քննարկմանը:

Անդամավճարների գանձման կարգի խստիվ պահպանումը կուսակցական կարգապահության կարևոր պահանջ է: Այդ գործում տեղ գտած թերությունները, ամենից առաջ, ստուգման ու վերահսկողության անբավարար կազմակերպման արդյունք են:

Կուսակցական բյուջեի միջոցները, ինչպես հայտնի է, հատկացվում են կուսակցական պրոպագանդային, կադրերի պատրաստմանն ու վերապատրաստմանը, ապարատի պահպանմանը: Այստեղ էլ լուրջ գործ ունեն կուսակցական վերստուգիչ հանձնաժողովները: Նրանց կողմից կատարված ստուգումները ցույց են տալիս, որ քաղկոմների, շրջկոմների մեծ մասը բյուջեով նախատեսված գումարները ծախսում են նպատակին և խնայողաբար: Սակայն բացահայտվել են և փաստեր, երբ առանձին քաղկոմշրջկոմներ խախտում են բյուջետային ու հաստիքային կարգապահությունը, թույլ են տալիս գերածախսեր:

Վերստուգիչ հանձնաժողովները պարտավոր են բացահայտել միջոցների ոչ միայն գերածախսերը, այլև ցույց տալ դրանց պատճառները: Իսկ այդ ամենը հաջողությամբ կատարելու համար պետք է բարձրացնել ստուգման որակը,

վերստուգիչ հանձնաժողովների անդամների պատասխանատվությունը, ամբողջ հանձնաժողովի աշխատանքի մակարդակը։ Կուսակցական օրգանների վերստուգիչ հանձնաժողովներն իրենց գործունեությունը պետք է ծավալեն ՍՄԿԿ Կենտկոմի հրահանգին համապատասխան։

Վերստուգիչ հանձնաժողովների գործունեության կարևոր բնագավառներից է աշխատավորության նամակների, դիմում-բողոքներին ընթացք տալու գործի ուսումնասիրումը։ ՍՄԿԿ Կենտկոմի ձեռնարկած միջոցառումների շնորհիվ վերջին շրջանում կուսակցական կազմակերպություններում սահմանվել է դիմում-բողոքների ու նամակների հաշվառման, նրանց ընթացք տալու ավելի հստակ ու խստիվ կարգ, որն, անշուշտ, տվել է իր արդյունքը։ Քաղկոմ-շրջկոմներն ավելի ուշադիր և կարճ ժամանակամիջոցում են ընթացք տալիս աշխատավորության կողմից բարձրացված հարցերին, առաջարկություններին, նրանց դիմում-բողոքներին։ Վերստուգիչ հանձնաժողովները մեծ օգնություն պետք է ցույց տան կուսակցական կոմիտեներին՝ բյուրոկրատիզմի, քաշքշուկի առանձին դեպքերի վերացման, աշխատավորության պահանջներին զգայուն և ուշադիր վերաբերմունք ցուցաբերելու գործում։ Վերստուգիչ հանձնաժողովները պետք է հսկեն, թե դիմում-բողոքների լուծմանն ինչպես են մասնակցում կուսակցական ակտիվը, շրջանային-քաղաքային սովետների դեպուտատները, կուսակցական օրգանների անդամները, ինչ կարգ ու պրակտիկա է սահմանված աշխատավորության ընդունելության գործում։

Հայտնի է, որ դիմում-բողոքներն իրենց լուծումը պետք է ստանան մինչև 10—15 օրվա ընթացքում։ Մինչդեռ որոշ կազմակերպություններում այն խախտվում է։ Առանձին քաղկոմներում ու շրջկոմներում այդ գործը վերավըստահում են ոչ իրավասու աշխատողների, լուրջ մոտեցում չեն ցուցաբերում աշխատավորության հետ կուսակցության կապի այդ կարևոր օղակին։ Խորհրդակցությունում օրինակ բերվեց, թե ինչպես ՀԿԿ Ամասիայի շրջկոմում ստացված 112 դիմումից ընթացք է տրվել միայն 66-ին։ Ի դեպ, կան դիմումներ, որոնց ընթացք է տրըվել 6 ամիս անց։

Խորհրդակցության մասնակիցները քննության առնելով վերստուգիչ հանձնաժողովների գործունեության վիճակը, միաժամանակ պատմեցին իրենց փորձի ու մտորումների մասին։ Արվեցին նաև մի շարք առաջարկություններ։ Կասկած չկա, որ խորհրդակցությունը կնպաստի վերստուգիչ հանձնաժողովների աշխատանքների հետագա բարելավմանն ու կատարելագործմանը։

Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

Խմբագրության հասցեն՝ Երևան—16

Հեռախոսներ. գլխավոր խմբագիր՝ 7—16—90, պատասխանատու քարտուղար՝ 7—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 7—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 7—19—80։

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 18/X 1967 թ.։

ՎՖ 04221 Պատվեր 2097 Տիրաժ 9853 Գինը 25 կոպ.։

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51։



# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.—Ապրիլյան թեզիսները։ Եր., «Հայաստան» հրատ., 1967։

Գրքույկն ընդգրկում է Վ. Ի. Լենինի՝ «Պրոլետարիատի խնդիրների մասին տվյալ հեղափոխության մեջ». «Նամակներ տակտիկայի մասին» և «Պրոլետարիատի խնդիրները մեր հեղափոխության մեջ (պրոլետարական կուսակցության պլատֆորմի նախագիծ)» աշխատությունները։

«Լենինը 1917 թվականին»։ Հուշեր։ Մ., Քաղհրատ., 1967։

ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հրատարակած այս ժողովածուում զետեղված են կուսակցության ականավոր գործիչների (Կրուպսկայա, Լունաչարսկի և ուրիշներ), Լենինի զինակիցների հուշերը։

ՈՒՐՈԵՎԱ Ա. Վ.—«Գիրք, որ ապրելու է դարերով»։ Կ. Մարքսի «Կապիտալի» 1-ին հատորի լույսընծայման 100-ամյակի առթիվ։ Մ., Мысль հրատ., 1967։ Այստեղ լուսաբանված են Կ. Մարքսի հետազոտությունների, «Կապիտալի» վրա աշխատելու, տպագրության, թարգմանությունների հետ կապված բազմաթիվ հարցեր, ինչպես և արտացոլված է այդ աշխատության վիթխարի ազդեցությունը հասարակության քաղաքական հայացքների ձևավորման վրա։

«Հավերժ փառք»—Քաղհրատ, Մ., 1967 թ.։

Ժողովածուն նվիրված է այն կոմունիստների հիշատակին, ովքեր Հոկտեմբերի և քաղաքացիական պատերազմի տարիներին իրենց կյանքն են տվել սոցիալիստական հեղափոխության հաղթանակին։ Ակնարկների համարյա բոլոր հերոսները երիտասարդ են մեռել, իրենց ուժերի ծաղկման ժամանակ։

«Հոկտեմբերը և Հայաստանի տնտեսական զարգացումը»։ Եր., «Միտք» հր., 1967։

Սույն գրքում հեղինակային կոլեկտիվը հանրագումարի է բերել սոցիալիստական ծավալուն շինարարության բազմամյա հարուստ փորձը Հայկական ՍՍՀ-ում, որի շնորհիվ այն դարձել է զարգացած արդյունաբերություն ունեցող երկիր։

Գիրքը նվիրված է Հոկտեմբերյան հեղափոխության 50-ամյակին։

«Հեղափոխական մարտերի կրակներում» (Պետրոգրադի շրջանները 1917 թ. երկու հեղափոխությունների միջև)։ Մ., «Мысль» հր. 1967։

Ժողովածուում հավաքված են Պիտերի հին բոլշևիկների հուշերը՝ բոլշևիկյան կուսակցության ստորին կազմակերպությունների մասսայական ծավալուն աշխատանքների, Լենինի մեծագույն ղեկավար դերի մասին, ինչպես և արտացոլված են շրջանային կազմակերպությունների գործադրած ջանքերը հեղափոխության հաղթանակի համար։

ԱԴԻԲԵԿ-ՄԵԼԻՔՅԱՆ, Է. Ա.— «Հեղափոխական իրադրությունը Ռուսաստանում Հոկտեմբերի նախօրյակին»։ Եր., «Հայաստան» հրատ., 1967 (ռուսերեն)։

Արխիվային վավերագրերի, ՍՄԿԿ կուսակցության որոշումների և այլ գրականության օգտագործմամբ, հեղինակն արտացոլել է Ռուսաստանում տեղի ունեցող իրադարձությունները՝ հեղափոխության խաղաղ զարգացման և զինված ապստամբության, հեղափոխության և նրա հաղթանակի ժամանակաշրջանում։

ԿԱԼԹԱՂՋՅԱՆ Ս. Թ.—«Սոցիալիստական ազգերը, նրանց ներկան և ապագան», Մ., «Знание» հրատ., 1967։

Հեղինակը լուսաբանել է բազմազգ սովետական պետության մեջ մտնող ազգերի համերաշխության, տնտեսական, մշակութային առանձնահատկությունների, սոցիալիստական ազգերի առաջացման ու մերձեցման և շատ այլ հարցեր։

ԳԻՆԸ 25 Կ.



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԹԵՐԹ՝ ՍԻՆԹԵՏԻԿԱՅԻՑ

*Ճապոնական «Նիպպոն կոկան սեյսի» ընկերությունը մշակել է սինթետիկ ձյութից, ինչպես և պոլիստիրոլից և պոլիքլորվինիլից լրագրային թուղթ ստանալու տեխնոլոգիան։ Այդպիսի թուղթը պիտանի է նույնիսկ գունավոր տպագրության համար։*

## ԱՌԱՆՑ ՍԱՌՆԱՐԱՆԻ...

*Հնդկական գիտնականները մշակել են ձու պահելու նոր մեթոդ։ Ձուն մի ակընթարթ խորասուզում են նավթային յուղերի մեջ, ավելացնելով սնկերի ու բակտերիաների զարգացումը կանխող նյութ, իսկ այնուհետև չորացնում։ Այդ ձևով, առանց սառնարանի, հնդկական շոգ ու խոնավ կլիմայի պայմաններում մշակված ձվերը կարող են պահվել մոտ մեկ ամիս։ 100 ձվի այդպիսի մշակումը նըստում է ընդամենը երկու պենս։*

## ՏԻՏԱՆԸ ԵՎ ԱՂԸ

*Պարզվել է, որ ամենաամուր և կոռոզիակայուն մետաղներից մեկը՝ տիտանը, հեշտությամբ քայքայվում է աղի ջրում։ Նույնիսկ սենյակային ջերմաստիճանի պայմաններում բավական է մի փոքր քերծվածք, որպեսզի 3 տոկոսանոց կերակրի աղաջրում տիտանը արագ ժանգոտվի։ Նոր տվյալները ցույց են տալիս, որ աղի լուծույթում տիտանը կոռոզիայի է ենթարկվում, նույնիսկ երբ մետաղի վրա ոչ մի քերծվածք չի լինում։ Ըստ երևույթին ինքնաթիռաշինության մեջ լայնորեն կիրառվող այդ մետաղը պիտանի չէ նավաշինության մեջ։*

## ԷԼԵԿՏՐԱԷՆԵՐԳԻԱ՝ ԱԷՐՈԶՈԼԻՑ

*Անգլիացի ինժեներ Է. Մարսը մշակել է նոր սիստեմի գեներատոր, որն անմիջապես ջերմային էներգիան փոխակերպում է էլեկտրականի։ Որպես ջերմության աղբյուր գեներատորում օգտագործվում է գերտաքացված շոգին։ Հատուկ էլեկտրոդների գազի մեջ են մղվում էլեկտրոններ, որի հետևանքով շոգու մի փոքր մասը կոնդենսացիայի է ենթարկվում և առաջացնում լիցքավորված աէրոզոլ։ Այդ աէրոզոլի մասնիկներն իրենց լիցքը հաղորդում են գազի հոսքի մեջ տեղադրված կոլեկտորին։ Այդպիսի գեներատորից կարելի է ստանալ մեծ քանակությամբ էներգիա, եթե նրա մեջ կիրառվի ջերմության միջուկային աղբյուր։*

## ՇԱՔԱՐԸ ԵՎ ԻՆՖԱՐԿՏԸ

*Սուրբ Հեղինե կղզում (Ատլանտյան օվկիանոս) բնակիչների հիմնական սնունդն է՝ շաքարը և մեղրը։ Արևելյան Աֆրիկայում մասաի և սամբուրու ցեղերը համարյա բացառապես կերակրվում են կաթնամթերքներով և ճարպերով։ Քաղցրակեր կղզաբնակների մոտ լայն տարածված են սրտի և արյունատար անոթների հիվանդությունները, հաճախակի է պատահում սրտամկանի ինֆարկտ։ Իսկ մասաիների և սամբուրուների մոտ դրանք համարյա չեն հանդիպում։ Այդ մասին տեղեկություններ հաղորդում է Լոնդոնի համալսարանի սննդի ամբիոնի պրոֆեսոր Ջոն Յուդկինը։*

## ԿԱՂԱՄԲԻ ԾԱՌ

*Հունգարական գյուղատնտեսական ակադեմիայի գիտաշխատող, դոկտոր Լասլո Բերժենի Յանոշիչը սելեկցիայի և խաչաձևման մեթոդով ստացել է կերային կաղամբի բարձր բերքատու սորտ, որը հեկտարից տալիս է ավելի քան 1200 ցենտներ բերք։ Այդ կաղամբը պարունակում է երկու անգամ շատ սպիտակուց, քան սիլոսային եգիպտացորենը։ Բույսը հասնում է երկու մետր բարձրության և ունենում մեծ տերևներ։ Մի բույսի քաշը 4—5 կգ. է։ Բարձր, հաստաբուն կերային կաղամբի նոր սորտը լավ արդյունք է տվել ինչպես փորձադաշտերում, այնպես էլ համայնական դաշտերում։*